ԸՆԹԱՑՔ ՆԱԽԱԿՐԹՈՒԹԵԱՆ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ

ԵՐՐՈՐԴ

# ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ

ՈՒԹԵՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

67 + 36 + 32 Արձակ Նիւթեր.
11 + 6 + 10 Ոտանաւորներ
109 + 43 + 28 Հրահանգներ, Առակներ, Առածներ:

ՅՕՐԻՆԵՑ

ՍՄԲԱՏ ԳԱՒԹԵԱՆ

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԷՆ ՈՒ ՄԷԱՐԻՖԷՆ ՎԱՒԵՐԱՑՈՒԱԾ
ՊԵՏԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐՈՒ ՄԷՋ ԱԼ ԸՆԴՈՒՆՈՒԱԾ.



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՏԷՐ-ՄԻՆԱՍԵԱՆ
Սուլթան Համամ ճատտէսի, Թիւ 14

1908

ՏՊԱՐԱՆ, ՎԻՄԱԳՐԱՏՈՒՆ, ԿԱԶՄԱՏՈՒՆ ԵՒ ԳՐԱՏՈՒՆ

Վ. ՏԷՐ-ՄԻՆԱՍԵԱՆ

Կ. Պոլիս, Սուլթան Համամ, Թիւ 14

معارف عموميه نظارت جليله‌سنك ٣٩٣ نومرولى و ٢٩ نيسان ٣٢٢ تاريخلى
رخصتنامه‌سيله استانبولده ميناسيان مطبعه‌سنده طبع اولنمشدر

ԸՆԹԱՑՔ ՆԱԽԱԿՐԹՈՒԹԵԱՆ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ

## ԵՐՐՈՐԴ

# ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ

ՈՒԹՆԵՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՅՕՐԻՆԵՑ
ՍՄԲԱՏ ԴԱՒԹԵԱՆ




ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԷՆ ՈՒ ՄԷԱՐԻՖԷՆ ՎԱՒԵՐԱՑՈՒԱԾ
ՏԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐՈՒ ՄԷՋ ԱԼ ԸՆԴՈՒՆՈՒԱԾ



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՏԷՐ-ՄԻՆԱՍԵԱՆ
Սուլթան Համամ ճառշըսի, Թիւ 14

1908

# ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐՈՒՆ



Ամենամեծ գոհունակութեամբ կը տեսնեմ որ **ԵՐՐՈՐԴ ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ** անուն այս գիրքը ընդունելութիւն գտած է առհասարակ ամէն Ազգային Վարժարաններու մէջ, ինչպէս կ'ակնկալուէր :

Ազգ. Ուսուցիչները լիովին գնահատեցին առաւելութիւնները այս գիրքին, որ դիւրացուց իրենց աշխատութիւնը, եւ սուղ ժամանակի մէջ իրական նպաստ մ'ըրաւ աշակերտներուն զարգացման : Պարզ ու ցամաք Ընթերցարան մը չէ **Վարժութիւն Մանուկներու** հատորը, հետեւաբար մեքենական ու անգիտակից կերպով պիտի չկարդայ զայն աշակերտը, այլ՝ շնորհիւ մտամարզական, իրագիտական, լեզուի ու մտածութեան հրահանգներուն, որոնք կը գտնուին էջերուն տակ՝ պիտի ստանայ միտքի բազմակողմանի մշակութիւն ու ընդարձակ հմտութիւն՝ շատ կարեւոր նիւթերու վրայ : Ուստի թող ներե՛ն Ուսուցիչները՝ որ շեշտեմ կարեւորութիւնը մասնաւոր հոգ տանելու որ լաւ բացատրուին էջերուն ներքեւ գտնուող **Հրահանգները, Հարցումները եւ Մեկնելի Բառերը**: Միայն այդ կերպով պիտի կրնայ, ապահովապէս, մանուկներու դաստիարակութեան նպաստաւոր գործիք մը ու արդիւնաւոր ատար մ'ըլլալ այս գրքոյկը :

Մասնաւորապէս Տաճկախօս Գաւառներու համար, հարկ է որ ըսեմ թէ այս Գ. Մասն այլ եւս պէտք չկայ Տաճկերէնի թարգմանել տալ. աշակերտը բաւական զարգացած է ու Հայերէն գրուած մը հասկնալու չափ պաշար եւ հմտութիւն ունի, հետեւաբար նախամեծար է բացատրութիւնները տալ Հայերէն :

Հրատարակուած է նաեւ **Գ. Վարժութեան ՈՒՂԵՑՈՅՑը**՝ որ կը պարունակէ Հրահանգներուն պատասխանները :

**Ս. ԳԱՒԹԵԱՆ**

*Տնօրէն Դպրեան Գործակալութեան*



# ԵՐՐՈՐԴ ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

# ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ

## ԳԼՈՒԽ Ա.

### I. ԽՐԱՏՆԵՐ

Սորվեցէ՛ք, մա՛նուկներ, ձեր հոգին մաքրել, ձեր մարմինը առողջ պահել։

Ձեր վարմունքը խոնարհ, ձեր ձայնը չափաւոր, ձեր խօսքերն ամբողջ ու հաստուն ըլլան։

Ա՛յնչափ կերէք ու խմեցէք՝ ո՛րչափ պէտք է սնանելու համար։

Ծերերու առջեւ լո՛ւռ կեցէք, իմաստուններու առջեւ՝ ունկնդիր։

Վերակացուներու հետ հնազանդ՝ հասակակից ընկերներու հետ սիրով՝ փոքրերու հետ անկե՛ղծ վարուեցէք։

Քի՛չ խօսեցէք ու շա՛տ լսեցէք։ Շատախօս՝ մանաւանդ ծաղրախօս մի՛ ըլլաք։

Պարկեշտութիւնը ձեր մատաղ հասակին զարդն է։

Հակառակասէր, ինքնահաւան ու պարծենկոտ մի՛ ըլլաք։

---

ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Չափաւոր, սնանիլ, ունկնդիր, վերակացու, հնազանդ, հասակակից, անկեղծ, շատախօս, ծաղրախօս, պարկեշտութիւն, մատաղ, զարդ, հակառակասէր, ինքնահաւան, պարծենկոտ։

## 2. ԳՈՐԾԻՔՆԵՐ

*Արհեստաւոր մը, աշխատելու համար, կը գործածէ այլ եւ այլ նիւթեր, ատաղձներ ու գործիքներ, ինչպէս մուրճ, սղոց, կտրոց, մկրատ, գայլիկոն (պուրղու), խզար, ցեխատաշտ, ուրագ, ձեւոց, քչոց, դուր, քանոն, կապարալար, կանգուն, մեղր, կաղապար, դանակ, աքցան, սեպ, գամ, ասեղ, մամուլ, վրձին, յեսան, բեւեռ, խարտոց, աղեղ, թակ, խարազան, թել, բահ, արօր, երկժանի, տրմուխ, մանգաղ, սղոց, ունելի, ակիշ, հերիուն, բրդի թակ, սայլ, սայլիկ, մաղ, շարմաղ, փքոց, շաղափ (մաքգապ), գչիր (պուրղու)։*

**ՎԱՐԺ. — 1. Աշակերտը թող գրէ ուրիշ գործիքներու անուն : 2. Աշակերտը թող գծագրէ այս գործիքները : 3. Աշակերտը թող ըսէ թէ ո՛ր արհեստաւորներ կը գործածեն վերոյիշեալ գործիքները : 4. Ըսէ՛ք ի՞նչ կ'ընեն նոյն գործիքներով:**

---

### 1. ՀՐԱՀԱՆԳ

*Բերնուց ու գրով ըսէ՛ք թէ՝*

1. *Ի՞նչ ամաններ կը ճանչնաս։* 2. *Ի՞նչ կենդանիներ կը ճանչնաս։* 3. *Ո՞ր կենդանիներուն միսը կ'ուտուի։* 4. *Տո՛ւր հինգ թռչունի անուն։* 5. *Ի՞նչ ազգականներ ունիս։* 6. *Ի՞նչ ծառեր կը ճանչնաս։* 7. *Ի՞նչ կ'ըսեն այն մարդուն որ չի տեսներ։* 8. *Ի՞նչ կ'ըսեն այն մարդուն որ չի լսեր։* 9. *Ի՞նչ կ'ըսեն այն մարդուն որ չի կրնար խօսիլ։* 10. *Ի՞նչ կ'ըսեն այն մարդուն որուն մէկ ոտքը կտրած է։* 11. *Որո՞նք են մարդուս հինգ զգայարանքները։*

Ծան. — *Վարժապետը նախ բերանացի եւ ապա գրաւոր թող պահանջէ այս հարցումներուն պատասխանը* (Ուղեցոյց Գ. Վարժութեան, էջ 5)։

## 3. ՄԱՆՈՒԿՆ ՈՒ ԴՈՅԼԸ

Մայր մը պատուիրեց իր տղուն՝ երթալ աղբիւրէն ջուր բերել։ Տղան սկսաւ լալ. «Երբ դոյլը ջուրով լեցուի, շատ պիտի ծանրանայ ու չպիտի կրնամ բերել»։

— Բայց, տղա՛ս, այսօր դոյլը ամբողջ չպիտի լեցնես, այլ մինչեւ կէ՛սը միայն։

— Իսկ վա՞ղը...։

— Վաղը քիչ մ՚աւելի կը լեցնես։

— Մի՞ւս օրը։

— Միւս օրը՝ ամբողջ պիտի կրնաս լեցնել։

— Ո՛հ, երբեք պիտի չկրնամ, կրկնեց տղան։

Մայրը ծունկերուն վրայ առաւ տղան ու ըսաւ։

— Մարդ մը կար որ ե՛զ մը կը վերցնէր։

— Ե՞զ մը, մա՛յրիկ, մեծ ե՞զ մը։ Կարելի՞ բան է, ի՞նչպէս կրնայ վերցնել։

— Տե՛ս, ի՞նչպէս յաջողեր է վերցնել։ Այդ եզը ծնածատեն փոքրիկ հորթ մըն էր որ հազիւ մեր շունին չափ ծանրութիւն ունէր։ Մարդը դիւրաւ ուսին վրայ առաւ զայն։ Միւս օրն ու հետզհետէ ամէն օր դիւրաւ

---

### Զ. ՀՐԱՀԱՆԳ

Սահմանումներուն համապատասխանող բառը գտէք (Ուղեցոյց Գ. Վարժութեան, էջ 5)։

1. Ցամաք մը որուն շուրջը ջուրով պատած է։ 2. Մարդ մը որ իրեն եղած երախտիքը չի ճանչնար։ 3. Տեղ մը ուրկէ ջուր կը բղխի։ 4. Շէնք մը ուր կ՚երթան լոգնալ։ 5. Այն հեռաւոր գիծը ուր կը թուի թէ երկիրը երկինքին կը դպչի։ 6. Մարդ մը որ լաւ կը խօսի։ 7. Մարդ մը որ աղեղով ու թակիկով բուրդ կամ բամպակ կը գզէ։ 8. Ամանը որուն մէջ գինի ու նշխար կը դնէ քահանան՝ պատարագի ատեն։

*կը վերցնէր, առանց նշմարելու թէ կենդանին կը ծանրանար ։*

*— Հասկցա՛յ, մայրի՛կ, հասկցա՛յ, ըսաւ տղան ։ Ահա կ'երթամ աղբիւրը, եւ երեք օրէն՝ լեցուն դոյլը պիտի բերեմ ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Մայր մը ի՞նչ պատուիրեց տղուն : — Տղան ի՞նչ պատասխանեց : — Ուրիշ ի՞նչ ըսաւ մայրը : — Ի՞նչ օրինակ բերաւ : — Այդ օրինակէն ի՞նչ հետեւութիւն կրնանք հանել :

## 4. ԿԱՐԵՒՈՐՆ ՈՒ ԱՆԿԱՐԵՒՈՐԸ

*Եթէ օդ չշնչեմ՝ կը խեղդուիմ ։ Եթէ սնունդ չառնեմ՝ անօթի կը մեռնիմ ։ Եթէ սաստիկ ձմրան մէջ հագուստ ու կրակէ զուրկ մնամ, ցուրտէն կը սառիմ ։ Եթէ գիշերը չհանգչիմ, առտուն ա՛լ չեմ կրնար իմ անձիս ու նմաններուս օգտակար ըլլալ ։ Եթէ անպարկեշտ վարք ունենամ, դժբախտ կ'ըլլամ ։*

*Ասկէ կը հետեւի թէ՝ օդ, հաց, ջուր, պատսպարան, աշխատանք, կրթութիւն ու պարկեշտութիւն կարեւոր բաներ են ։*

*Բայց միթէ կարեւո՞ր է, անհրաժե՞շտ է որ սեղանս*

---

### 3. ՀՐԱՀԱՆԳ

*Գիր մը փոխելով բառը փոխէ* (Ուղեցոյց, էջ 6) :

*Գրկել, լիզել, մաշել, կարել, շորթել, նորել, մայել, ճաշել, ճարել, լծել, տիրել, ողել, կաղալ, զննել, ճառել, քաշել, գամել, միզել, դնել, ծամել, պատնել, կարել, շաչել, վանել, խզել, ծեփել, կրել, հատնիլ, սողալ, կայթել, բառնալ, քրել, սպասել, ծախել, ծաւալել, շողալ, հեծել, քալել, ծխել, հատնիլ, հագցնել, վախցնել, խոցել, պարարիլ, վարել, ընել ։*

ձուաձեւ ըլլայ, հագուստս ընտիր կերպասէ ըլլայ, շքեղ ու փափուկ անկողին ունենամ, տունս բազմայարկ ու հոյակապ շէնք մը ըլլայ։ — Ո՛չ, ասոնք երկրորդական բաներ ու այնպիսի յատկութիւններ են որ առանց անոնց ալ առարկայ մը կրնայ օգտակար ըլլալ։

Ուրեմն, ամէն բանէ առաջ, կարեւորն ունենալ աշխատինք, բա՛րեկամներ։

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ կ'ըլլամ երբ օդ չընչեմ: — Երբ գիշերը չհանգչի՞մ: — Ե՞րբ կրնամ ընկերներուս օգտակար ըլլալ: — Ի՞նչ բաներ կարեւոր են մեզի: — Ի՞նչ բանի ցանկալու ենք:

## 5. ԱՍՏՈՒԱԾ ԱՄԷՆ ՏԵՂ Է

Ամէն տեղ ներկայ ես դուն, Աստո՛ւած իմ. ամէն տեղ կը գտնուիս՝ լոյսի, խաւարի, հիւլէի ու աշխարհի մէջ։ Միեւնոյն ժամանակ որ իմ խոնարհ աղօթքս կը լսես, կը լսես նաեւ սերովբէներուն ու քերովբէներուն անուշ երգերը։ Դո՛ւն, ուրեմն, որ Աստուած ես, մեր ձայնը կը լսես, ինչպէս նա դեղձանիկին անուշ երգն ու

---

### 4. ՀՐԱՀԱՆԳ

Պատասխանեցէք գրաւոր եւ բերանացի (Ուղեցոյց, էջ 6):

1. Ի՞նչ կը կոչուի մարդու մը առաջին զաւակը։ 2. Վերջին զաւա՞կը։ 3. Կարմիր հեղուկ մը որ խաղողէն կը քամուի։ 4. Գործիք մը որ ժամերը կը նշանակէ։ 5. Գործիք մը որ հովէն շարժելով՝ ալիւր կ'աղայ։ 6. Գործիք մը որ ջուրէն շարժելով՝ ալիւր կ'աղայ։ 7. Թուղթ մը որուն վրայ գծուած են աշխարհի մասերը։ 8. Այն տեղն ուր կ'ապրին թռչունները։ 9. Մարդ մը որ մրգեղէն կը վաճառէ։ 10. Զգեստին այն մասն որ վիզը կը պատէ։ 11. Գործիք մը որով ջուր սրսկելով՝ հրդեհը կը մարեն։

*սա ծաղիկին վրայ թռչտող մեղուին բզզանքը, ընդունէ՛ նաեւ իմ աղօթքս ու պաղատանքս, շնորհէ՛ տուր ինծի որ երբեք չմոռնամ թէ ամենատես աչքդ վրաս կը նայի միշտ, եւ ամէն ժամանակ առջեւդ եղածի պէս շարժիմ, խորհիմ ու գործեմ։*

**ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ.** — խաւար, հիւլէ, խոնարհ, սերովբէ ու քերովբէ, դեղձանիկ, բզզանք, պաղատանք, սարժիլ։

---

## 6. ՆՊԱՏԱԿ ՈՒ ՄԻՋՈՑ

*Ծառ մը կը տնկէք, կը խնամէք, կ՚ոռոգէք, որպէս զի անոր պտուղը քաղէք — ա՛ս էր ձեր նպատակը։*

*Ձեր ուսուցիչին խօսքերուն ուշադիր կ՚ըլլաք, դասերնիդ եւ պարտականութիւննիդ կը պատրաստէք. — ի՞նչ նպատակով։*

*Քիչ մը հիւանդ էիք. — ի՞նչ նպատակով բժիշկը ձեզի դեղ տուաւ։*

*Ի՞նչ է դասատուին նպատակը, երբ կը պատժէ կամ կը վարձատրէ։*

*Նպատակի մը հասնելու համար գործածուած բանը կը կոչուի* միջոց*։ Ծառէն կախուած խնձորը վար ձգել կ՚ուզէք. ծառը կը թոթուէք, վրան ելլել կը ջանաք*

---

### 5. ՀՐԱՀԱՆԳ

Պատասխանէ՛ գրաւոր եւ բերանացի (Ուղեցոյց, էջ 6)։

1. *Տո՛ւր տասը չորքոտանիի անուն։* 2. *Ըսէ՛ մարդերու բնակութեան տեղերուն անունը։* 3. *Մարդիկ ինչո՞վ կը ճամբորդեն։* 4. *Ի՞նչ արհեստաւորներ կը ճանչնաս։* 5. *Ի՞նչ խաղալիկներ կը ճանչնաս։* 6. *Քանի՞ տեսակ ճրագ գիտես։* 7. *Որո՞նք են տան մը մասերը։* 8. *Ի՞նչ դրամներ կը ճանչնաս։*

*կամ ձող մը կը դնէք, անով կը ձաղկէք ծառին ճիւղը, և խնձորը վար կը ձգէք։ Այսպէսով ձեր նպատակին հասաք. բայց ի՞նչ միջոցով։*

*Ի՞նչ նպատակով փողոցները կը սալարկեն, դեղ կը գործածեն, դաշտը կը ցանեն, հագուստ կը հագնին, ձմեռ ատեն անձրեւնոց կը կրեն։*

*Դարձեալ ի՞նչ նպատակով տղաք դպրոց կ'երթան, մարդիկ շուկայ կ'երթան, ոչխարները արօտավայր կ'երթան։*

*Ի՞նչ նպատակով շոգենաւ հնարուած է, գիրք հրատարակուած է, ձգախէժ պատրաստուած է։*

*Ինչո՞ւ դիտակ ու ակնոց կը գործածենք, ինչո՞ւ ձիերը կը լուծենք, ինչո՞ւ մեր սենեակները պատուհան կ'ունենան։*

**ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Ոռոգել, նպատակ, ուշագիր, պարտականութիւն, դեղ, պատժել, վարձատրել, միջոց, ձող, ձաղկել, սալարկել, անձրեւանոց, արօտավայր, հրատարակուած, ձգախէժ, դիտակ, լուծել:**

---

## 6. ՀՐԱՀԱՆԳ

**Զանազանէ՛ անձ, անասուն, առարկայ (Ուղեցոյց, էջ 7):**

***Պատկերահան, կուղբ, սոխակ, մատիտ, այծ, տախտակ, կառք, գորտ, հօրաքոյր, բանտարկեալ, աթոռ, գող, քար, զինուոր, տուն, փղոսկր, դասատու, ծառ, դագաղ, չանոքրամ, կով, աղբ, ոչխար, հովիւ, հաւ, բուրդ, աքաղաղ, ախոռապան, ձի, կառավար, լուցկի, հարս, հեղինակ, մատեան, տապան, դաշնակ, նուագածու, ռնգեղջիւր, եկեղեցի, խորան, քահանայ, պատկեր, լու, ապակի, կրակ, ոջիլ, խոհարար, խաչ, պտուղ, լեմոն, գրագիր, թրթուր, նարինջ, ձկեռ, սերկեւիլ, ստեպղին։***

**ՕՐԻՆԱԿ. — Պատկերահանը մարդ է: Կուղբը անասուն է:**

ՏՊԱՐԱՆ, ՎԻՄԱԳՐԱՏՈՒՆ, ԿԱԶՄԱՏՈՒՆ ԵՒ ԳՐԱՏՈՒՆ

Վ. ՏԷՐ-ՄԻՆԱՍԵԱՆ

Կ. Պոլիս, Սուլթան Համամ, Թիւ 14

---

معارف عمومیه نظارت جلیله‌سنك ۳۹۳ نومرولی و ۲۹ نیسان ۳۲۲ تاریخلی
رخصتنامه‌سیله استانبولده میناسیان مطبعه‌سنده طبع اولنمشدر

ԸՆԹԱՑՔ ՆԱԽԱԿՐԹՈՒԹԵԱՆ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ

# ԵՐՐՈՐԴ
# ՎԱՐԺՈՒԹԻՒՆ
# ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ

ՈՒԹՆԵՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՅՕՐԻՆԵՑ
ՍՄԲԱՏ ԴԱՒԹԵԱՆ



ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԷՆ ՈՒ ՄԷԱՐԻՖԷՆ ՎԱՒԵՐԱՑՈՒԱԾ
ՊԵՏԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐՈՒ ՄԷՋ ԱԼ ԸՆԴՈՒՆՈՒԱԾ



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՏԷՐ-ՄԻՆԱՍԵԱՆ
Սուլթան Համամ ճատտէսի, Թիւ 14

1908

# ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐՈՒՆ



Ամենամեծ գոհունակութեամբ կը տեսնեմ որ ԵՐՐՈՐԴ ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ անուն այս գիրքը ընդունելութիւն գտած է առհասարակ ամէն Ազգային Վարժարաններու մէջ, ինչպէս կ'ակնկալուէր :

Ազգ. Ուսուցիչները լիովին գնահատեցին առաւելութիւնները այս գիրքին, որ դիւրացուց իրենց աշխատութիւնը, եւ սուղ ժամանակի մէջ իրական նպաստ մ'ըրաւ աշակերտներուն զարգացման : Պարզ ու ցամաք ընթերցարան մը չէ **Վարժութիւն Մանուկներու** հատորը, հետեւաբար մեքենական ու անգիտակից կերպով պիտի չկարդայ զայն աշակերտը, այլ՝ շնորհիւ մտամարզական, իմացական, լեզուի ու մտածութեան հրահանգներուն, որոնք կը գտնուին էջերուն տակ՝ պիտի ստանայ միտքի բազմակողմանի մշակութիւն ու ընդարձակ հմտութիւն՝ շատ կարեւոր նիւթերու վրայ : Ուստի թող ներե՛ն Ուսուցիչները՝ որ շեշտեմ կարեւորութիւնը մասնաւոր հոգ տանելու որ լաւ բացատրուին էջերուն ներքեւ գտնուող **Հրահանգները, Հարցումները** եւ **Մեկնելի Բառերը** : Միայն այդ կերպով պիտի կրնայ, ապահովապէս, մանուկներու դաստիարակութեան նպաստաւոր գործիք մը ու արդիւնաւոր դասատու մ'ըլլալ այս գրքոյկը :

Մասնաւորապէս Տաճկախօս Գաւառներու համար, հարկ է որ ըսեմ թէ այս Գ. Մասն այլ եւս պէտք չկայ Տաճկերէնի թարգմանել տալ. աշակերտը բաւական զարգացած է ու Հայերէն գրուած մը հասկնալու չափ պաշար եւ հմտութիւն ունի, հետեւաբար նախամեծար է բացատրութիւնները տալ Հայերէն :

Հրատարակուած է նաեւ Գ. **Վարժութեան** ՈՒՂԵՑՈՅՑը՝ որ կը պարունակէ Հրահանգներուն պատասխանները :

**Ս. ԴԱՒԹԵԱՆ**

*Տնօրէն Դաւթեան Գործակալութեան*



# ԵՐՐՈՐԴ ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

# ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ

## ԳԼՈՒԽ Ա.

### I. ԽՐԱՏՆԵՐ

*Սորվեցէ՛ք, մա՛նուկներ, ձեր հոգին մաքրել, ձեր մարմինը առողջ պահել։*

*Ձեր վարմունքը խոնարհ, ձեր ձայնը չափաւոր, ձեր խօսքերն ամբողջ ու հասուն ըլլան։*

*Ա՛յնչափ կերէք ու խմեցէք՝ ո՛րչափ պէտք է սնանելու համար։*

*Ծերերու առջեւ լո՛ւռ կեցէք, իմաստուններու առջեւ՝ ունկնդիր։*

*Վերակացուներու հետ հնազանդ՝ հասակակից ընկերներու հետ սիրով՝ փոքրերու հետ անկե՛ղծ վարուեցէք։*

*Քի՛չ խօսեցէք ու շա՛տ լսեցէք։ Շատախօս՝ մանաւանդ ծաղրախօս մի՛ ըլլաք։*

*Պարկեշտութիւնը ձեր մատաղ հասակին զարդն է։*

*Հակառակասէր, ինքնահաւան ու պարծենկոտ մի՛ ըլլաք։*

---

ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Չափաւոր, սնանիլ, ունկնդիր, վերակացու, հնազանդ, հասակակից, անկեղծ, շատախօս, ծաղրախօս, պարկեշտութիւն, մատաղ, զարդ, հակառակասէր, ինքնահաւան, պարծենկոտ։

## 2. ԳՈՐԾԻՔՆԵՐ

*Արհեստաւոր մը, աշխատելու համար, կը գործածէ այլ եւ այլ նիւթեր, ատաղձներ ու գործիքներ, ինչպէս մուրճ, սղոց, կտրոց, մկրատ, դայլիկոն* (պուրկու), *խղար, ցեխատաշտ, ուրագ, ձեւոց, քշտոց, դուր, քանոն, կապարալար, կանգուն, մեդր, կաղապար, դանակ, աքծան, սեպ, դամ, ասեղ, մամուլ, վրձին, յեսան, բեւեռ, խարտոց, աղեղ, թակ, խարազան, թի, բահ, արօր, երկժանի, տրմուխ, մանգաղ, սղոց, ունելի, ակիշ, հերիւն, բրդի թակ, սայլ, սայլիկ, մաղ, շարմաղ, փքոց, շաղափ* (մաթգապ), *գչիր* (պուրկու)։

**ՎԱՐԺ. — 1. Աշակերտը թող գրէ ուրիշ գործիքներու անունն։ 2. Աշակերտը թող գծագրէ այս գործիքները։ 3. Աշակերտը թող ըսէ թէ ո՛ր արհեստաւորներ կը գործածեն վերոյիշեալ գործիքները։ 4. Ըսէ՛ք ի՞նչ կ'ընեն նոյն գործիքներով։**

---

### 1. ՀՐԱՀԱՆԳ

*Բերնուց ու գրով ըսէ՛ք թէ՝*

*1. Ի՞նչ ամաններ կը ճանչնաս։ 2. Ի՞նչ կենդանիներ կը ճանչնաս։ 3. Ո՞ր կենդանիներուն միսը կ'ուտուի։ 4. Տո՛ւր հինգ թռչունի անունն։ 5. Ի՞նչ ազգականներ ունիս։ 6. Ի՞նչ ծառեր կը ճանչնաս։ 7. Ի՞նչ կ'ըսեն այն մարդուն որ չի տեսներ։ 8. Ի՞նչ կ'ըսեն այն մարդուն որ չի լսեր։ 9. Ի՞նչ կ'ըսեն այն մարդուն որ չի կրնար խօսիլ։ 10. Ի՞նչ կ'ըսեն այն մարդուն որուն մէկ ոտքը կտրած է։ 11. Որո՞նք են մարդուս հինգ զգայարանքները։*

Ծան. — *Վարժապետը նախ բերանացի եւ ապա գրաւոր թող պահանջէ այս հարցումներուն պատասխանը* (Ուղեցոյց Գ. Վարժութեան, էջ 5)։

## 3. ՄԱՆՈՒԿՆ ՈՒ ԴՈՅԼԸ

*Մայր մը պատուիրեց իր տղուն՝ երթալ աղբիւրէն ջուր բերել։ Տղան սկսաւ լալ. «Երբ դոյլը ջուրով լեցուի, շատ պիտի ծանրանայ ու չպիտի կրնամ բերել»։*

*— Բայց, տղա՛ս, այսօր դոյլը ամբողջ չպիտի լեցնես, այլ մինչեւ կէ՛սը միայն։*

*— Իսկ վա՞ղը . . . ։*

*— Վաղը քիչ մ՚աւելի կը լեցնես։*

*— Մի՞ւս օրը։*

*— Միւս օրը՝ ամբողջ պիտի կրնաս լեցնել։*

*— Ո՛հ, երբեք պիտի չկրնամ, կրկնեց տղան։*

*Մայրը ծունկերուն վրայ առաւ տղան ու ըսաւ։*

*— Մարդ մը կար որ ե՛զ մը կը վերցնէր։*

*— Ե՞զ մը, մա՛յրիկ, մեծ ե՞զ մը։ Կարելի՞ բան է, ի՞նչպէս կրնայ վերցնել։*

*— Տե՛ս, ի՞նչպէս յաջողեր է վերցնել։ Այդ եզը ծնած ատեն փոքրիկ հորթ մըն էր որ հազիւ մեր չունին չափ ծանրութիւն ունէր։ Մարդը դիւրաւ ուսին վրայ առաւ զայն։ Միւս օրն ու հետզհետէ ամէն օր դիւրաւ*

---

### Զ. ՀՐԱՀԱՆԳ

Սահմանումներուն համապատասխանող բառը գտի՛ր (Ուղեցոյց Գ. Վարժութեան, էջ 5)։

1. *Ցամաք մը որուն չուրջը ջուրով պատած է։* 2. *Մարդ մը որ իրեն եղած երախտիքը չի ճանչնար։* 3. *Տեղ մը ուրկէ ջուր կը բղխի։* 4. *Շէնք մը ուր կ'երթան լոգնալ։* 5. *Այն հեռաւոր գիծը ուր կը թուի թէ երկիրը երկինքին կը դպչի։* 6. *Մարդ մը որ լաւ կը խօսի։* 7. *Մարդ մը որ աղեղով ու թակիկով բուրդ կամ բամպակ կը գզէ։* 8. *Ամանը որուն մէջ գինի ու նշխար կը դնէ քահանան՝ պատարագի ատեն։*

*կը վերցնէր, առանց նշմարելու թէ կենդանին կը ծանրանար։*

*— Հանգչա՛յ, մայրի՛կ, հանգչա՛յ, ըսաւ տղան։ Ահա կ'երթամ աղբիւրը, եւ երեք օրէն՝ լեցուն դոյլը պիտի բերեմ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Մայր մը ի՞նչ պատուիրեց տղուն: — Տղան ի՞նչ պատասխանեց: — Ուրիշ ի՞նչ ըսաւ մայրը: — Ի՞նչ օրինակ բերաւ: — Այդ օրինակեն ի՞նչ հետեւութիւն կրնանք հանել:

---

## 4. ԿԱՐԵՒՈՐՆ ՈՒ ԱՆԿԱՐԵՒՈՐԸ

*Եթէ օդ չշնչեմ՝ կը խեղդուիմ։ Եթէ սնունդ չառնեմ՝ անօթի կը մեռնիմ։ Եթէ սաստիկ ձմրան մէջ հագուստ ու կրակէ զուրկ մնամ, ցուրտէն կը սառիմ։ Եթէ գիշերը չհանգչիմ, առտուն ա՛լ չեմ կրնար իմ անձիս ու նմաններուս օգտակար ըլլալ։ Եթէ անպարկեշտ վարք ունենամ, դժբախտ կ'ըլլամ։*

*Անկէ կը հետեւի թէ՝ օդ, հաց, ջուր, պատսպարան, աշխատանք, կրթութիւն ու պարկեշտութիւն կարեւոր բաներ են։*

*Բայց միթէ կարեւո՞ր է, անհրաժե՞շտ է որ սեղանս*

---

### 3. ՀՐԱՀԱՆԳ

*Գիր մը փոխելով՝ բառը փոխէ* (Ուղեցոյց, էջ 6)։

*Գրկել, լիզել, մաշել, կտրել, չորթել, նորել, մայել, ճաշել, ճարել, լծել, տիրել, սղել, կաղալ, զննել, ճառել, քաշել, զամել, միզել, դնել, ծամել, պատնել, կարել, շաչել, վանել, խզել, ծեփել, կրել, հասնիլ, սողալ, կայթել, բառնալ, գրել, սպասել, ծախել, ծաւալել, շողալ, հեծել, քալել, ծխել, հատնիլ, հագցնել, վախցնել, խոցել, պարարիլ, վարել, ըսել։*

*ձուաձև ըլլայ, հագուստս ընտիր կերպասէ ըլլայ, չքեղ ու փափուկ անկողին ունենամ, տունս բազմայարկ ու հոյակապ շէնք մը ըլլայ։ — Ո՛չ, ատոնք երկրորդական բաներ ու այնպիսի յատկութիւններ են որ առանց անոնց ալ առարկայ մը կրնայ օգտակար ըլլալ։*

*Ուրեմն, ամէն բանէ առաջ, կարեւորն ունենալ աշխատինք, բա՛րեկամներ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ կ'ըլլամ երբ օդ չշնչեմ: — Երբ գիշերը չհանգչի՞մ: — Ե՞րբ կրնամ նմաններուս օգտակար ըլլալ: — Ի՞նչ բաներ կարեւոր են մեզի: — Ի՞նչ բանի ցանկալու ենք:

---

## 5. ԱՍՏՈՒԱԾ ԱՄԷՆ ՏԵՂ Է

*Ամէն տեղ ներկայ ես դուն, Աստո՛ւած իմ. ամէն տեղ կը գտնուիս՝ լոյսի, խաւարի, հիւլէի ու աշխարհի մէջ։ Միեւնոյն ժամանակ որ իմ խոնարհ աղօթքս կը լսես, կը լսես նաեւ սերովբէներուն ու քերովբէներուն անուշ երգերը։ Դո՛ւն, ուրեմն, որ Աստուած ես, մեր ձայնը կը լսես, ինչպէս նա դեղձանիկին անուշ երգն ու*

---

**4. ՀՐԱՀԱՆԳ**

*Պատասխանեցէք գրաւոր եւ բերանացի* (Ուղեցոյց, էջ 6):

1. *Ի՞նչ կը կոչուի մարդու մը առաջին զաւակը։* 2. *Վերջին զաւա՞կը։* 3. *Կարմիր հեղուկ մը որ խաղողէն կը քամուի։* 4. *Գործիք մը որ ժամերը կը նշանակէ։* 5. *Գործիք մը որ հովէն շարժելով՝ ալիւր կ'աղայ։* 6. *Գործիք մը որ ջուրէն շարժելով՝ ալիւր կ'աղայ։* 7. *Թուղթ մը որուն վրայ գծուած են աշխարհի մասերը։* 8. *Այն տեղն ուր կ'ապրին թռչունները։* 9. *Մարդ մը որ մրգեղէն կը վաճառէ։* 10. *Զգեստին այն մասն որ վիզը կը պատէ։* 11. *Գործիք մը որով ջուր սրսկելով՝ հրդեհը կը մարեն։*

*սա ծաղիկին վրայ թռչտող մեղուին բզզանքը, ընդունէ՛ նաեւ իմ աղօթքս ու պաղատանքս, շնորհք տուր ինծի որ երբեք չմոռնամ թէ ամենատես աչքդ վրաս կը նայի միշտ, եւ ամէն ժամանակ առջեւդ եղածի պէս շարժիմ, խորհիմ ու գործեմ։*

**ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — խաւար, հիւլէ, խոնարհ, սերովբէ ու քերովբէ, դեղձանիկ, բզզանք, պաղատանք, շարժիլ :**

---

## 6. ՆՊԱՏԱԿ ՈՒ ՄԻՋՈՑ

*Ծառ մը կը տնկէք, կը խնամէք, կ՚ոռոգէք, որպէս զի անոր պտուղը քաղէք — ա՛ս էր ձեր* Նպատակը*։*

*Ձեր ուսուցիչին խօսքերուն ուշադիր կ՚ըլլաք, դասերնիդ եւ պարտականութիւննիդ կը պատրաստէք. — ի՞նչ նպատակով։*

*Քիչ մը հիւանդ էիք. — ի՞նչ նպատակով բժիշկը ձեզի դեղ տուաւ։*

*Ի՞նչ է դատաւորին նպատակը, երբ կը պատժէ կամ կը վարձատրէ։*

*Նպատակի մը հասնելու համար գործադրուած բանը կը կոչուի* միջոց*։ Ծառէն կախուած խնձորը վար ձգել կ՚ուզէք. ծառը կը թոթուէք, վրան ելլել կը ջանաք*

---

### 5. ՀՐԱՀԱՆԳ

*Պատասխանէ՛ գրաւոր եւ բերանացի* (Ուղեցոյց, էջ 6) :

1. *Տո՛ւր տասը չորքոտանիի անուն։* 2. *Ըսէ՛ մարդերու բնակութեան տեղերուն անունը։* 3. *Մարդիկ ինչո՞վ կը ճամբորդեն։* 4. *Ի՞նչ արհեստաւորներ կը ճանչնաս։* 5. *Ի՞նչ խաղալիկներ կը ճանչնաս։* 6. *Քանի՞ տեսակ ճրագ գիտես։* 7. *Որո՞նք են տան մը մասերը։* 8. *Ի՞նչ դրամներ կը ճանչնաս։*

*կամ ձող մը կը գտնէք, անով կը ձաղկէք ծառին ճիւղը, եւ խնձորը վար կը ձգէք։ Այսպէսով ձեր նպատակին հասաք. բայց ի՛նչ միջոցով։*

*Ի՛նչ նպատակով փողոցները կը սալարկեն, դեղ կը գործածեն, դաշտը կը ցանեն, հագուստ կը հագնին, ձմեռ ատեն անձրեւանոց կը կրեն։*

*Դարձեալ ի՛նչ նպատակով տղաք դպրոց կ՚երթան, մարդիկ շուկայ կ՚երթան, ոչխարները արօտավայր կ՚երթան։*

*Ի՛նչ նպատակով շոգենաւ հնարուած է, գիրք հրատարակուած է, ձգախէժ պատրաստուած է։*

*Ինչո՞ւ դիտակ ու ակնոց կը գործածենք, ինչո՞ւ ձիերը կը լուանենք, ինչո՞ւ մեր սենեակները պատուհան կ՚ունենան։*

**ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Ուղղել, Նպատակ, ուշադիր, պարտականութիւն, դեղ, պատժել, վարձատրել, միջոց, ձող, ձաղկել, սալարկել, անձրեւանոց, արօտավայր, հրատարակուած, ձգախէժ, դիտակ, լուանել:**

---

## Զ. ՀՐԱՀԱՆԳ

**Զանազանէ՛ անձ, անասուն, առարկայ (Ուղեցոյց, էջ 7):**

***Պատկերահան, կուղբ, սոխակ, մատիտ, այծ, տախտակ, կառք, գորտ, հօրաքոյր, բանտարկեալ, աթոռ, գող, քար, զինուոր, տուն, փղոսկր, դաստառ, ծառ, դագաղ, շահոքրամ, կով, աղբ, ոչխար, հովիւ, հաւ, բուրդ, աքաղաղ, ախոռապան, ձի, կառավար, լուցկի, հարս, հեղինակ, մատեան, տապան, դաշնակ, նուագածու, ունգեղջիւր, եկեղեցի, խորան, քահանայ, պատկեր, լու, ապակի, կրակ, ոջիլ, խոհարար, խաչ, պտուղ, լեմոն, գրագիր, թրթուր, նարինջ, ղկեռ, սերկեւիլ, ատեպղին։***

**ՕՐԻՆԱԿ. — *Պատկերահանը մարդ է: Կուղբը անասուն է:***

## 7. ՇՈՒՆ

Իմ աղուո՛ր շընիկ, իմ շընի՛կ սիրուն,
Կայտառ ու աշխոյժ կենդանի մ'ես դուն։
Գիշեր թէ ցորեկ, առտու թէ իրկուն,
Կը հըսկես հօտին, կը պահես մեր տուն։

Վա՜յ, եթէ օտար կենդանի կամ մարդ
Մօտենայ մեզի՝ չար նըպատակով.
Իսկոյն կը վազես՝ ի մի ակնթարթ,
«Հաւէ՞ք» կը գոչես, հաւ հաւ հաչելով։

Կամ եթէ աղուէսն ուզէ՝ խորամանկ
Գողնալու համար հաւ, բադ կամ վառեկ,
Անցնիլ գիշերանց մեր պարտէզին ցանկ,
Կը հանես ու զայն կ'ընես ահաբեկ։

Իմ աղուորի՛կ շուն, իմ գեղեցի՛կ շուն,
Ունիս թաւ մազեր, աչքեր վառվըռուն,
Վնաս չես ի տար քեզ սիրողներուն՝
Մեր հաւատարիմ պահապանն ես դուն։

Պզտիկ մանուկներ քեզ շա՜տ կը սիրեն,
Իրենց ձեռքովը քեզի կուտան կեր։
Կը շոյեն ըստեւդ ու կը փայփայեն.
Արթո՛ւն պահապան, խորոտի՛կ ընկեր։

---

### Յ. ՀՐԱՀԱՆԳ

Պատասխանեցէք սա հարցումներուն (Ուղեցոյց, էջ 7)։

1. Ի՞նչ կը կարէ դերձակը։ 2. Ի՞նչ կը կարէ դերձակուհին։ 3. Ամառը ո՞ր կենդանիներ անհանգիստ կ'ընեն զմեզ։ 4. Ո՞ւր կ'ապրին ձուկերը։ 5. Ի՞նչ կը կոչուին սողալով քալող կենդանիներ։ 6. Քանի՞ սողուն կը ճանչնաս։ 7. Ի՞նչ կ'ընէ սարդը։ 8. Ի՞նչ կ'ընէ շերամը։ 9. Ի՞նչ բանի կը գործածուի մետաքսը։ 10. Ո՞րն է ամէնէն աշխատասէր միջատը։ 11. Ո՞րն է ամէնէն հաւատարիմ կենդանին։

## 8. ՈՒՂՏԸ

Արաբիայի մէջ անհուն տարածութեամբ աւազուտ դաշտեր կան որոնք անապատ կը կոչուին։ Ամէն տեղ աւազ է, ո՛չ կանաչութիւն կայ, ո՛չ ծառ, ո՛չ աղբիւր զովարար։ Այս աւազուտ դաշտերուն մօտերը կը բնակին Արաբացիներ ու կը ճամբորդեն ուղտով։ Այս կենդանին ա՛յնքան լաւ եւ ա՛յնքան արագ կը վազէ այդ աւազուտ ովկիանոսին մէջ՝ որ անապատի նաւ անունը կուտան անոր։

Ուղտը ձիէն աւելի մեծ է, երկայն ու վտիտ սրունքներ ունի եւ իր ոտուըները ա՛յնպէս շինուած են որ աւազին մէջ չեն մխուիր. գլուխը փոքր է եւ վիզն երկայն ու կոր։

Երկու տեսակ ուղտ կայ. մէկ տեսակը երկու կուտկէն ունի, իսկ միւս տեսակը՝ մէկ կուտկէն։

Ուղտը ուժեղ է եւ կրնայ տաք աւազին վրայ քանի մը օր շարունակ ծանր բեռ մը տանիլ։ Ութը տասը օր կրնայ անսնունդ քալել։

Ուղտը կը ճանչնայ իր տիրոջ ձայնը, և մէկ բառով մը կը ծնրադրէ՝ բեռը վրան առնելու կամ վար իջեցնելու համար։

---

### 8. ՀՐԱՀԱՆԳ

*Զանազանէ՛ ծառ, թուփ ու բանջարեղէն* (Ուղեցոյց, էջ 8):

Կաղնի, վարդենի, շողգամ, կեռասենի, առուոյտ, շագանակենի, դդում, լուբիա, նռնենի, դդմենի, մորենի, դափնի, հազար. ծիրանի. բաղեղ, ճակնդեղ, դեղձի, ցորեն, վարունգ, թթենի, ազատքեղ, նոճի, ուռի, ոսկեխնձոր, ընկուզենի, գարի, մեխակ, տանձենի, չեփորուկ, պղպեղի, սերկեւլի, զկեռի, հաղարջենի։

ՕՐԻՆԱԿ. — *Կաղնին ծառ է: — Վարդենին թուփ է:*

*Գիտէ թէ ո՛րքան բեռ կրնայ տանիլ, և եթէ կարողութենէն վեր բեռ մը տան՝ ոտք չ'ելլեր, գլխով կը զարնէ մօտը գտնուողին ու ողբագին աւաչներ կ'արձակէ ։*

*Զարմանալի չէ որ Արաբացիները այնքան կը սիրեն իրենց ուղտը, անոր վրայ գովասանքի երգեր կ'երգեն, երկնաձիր պարգեւ մը, օրհնեալ կենդանի մը կը նկատեն ։ Իրաւ է որ ձին իր տէրը վրան կը կրէ, կովը կաթ կուտայ, ոչխարը բուրդ. բայց ուղտը այս ամէն բարիքը միանգամայն կ'ընծայէ Արաբացիին ։ Անապատին բնակիչներուն կաթ կուտայ, իր միսը անոնց համար ընտիր սնունդ մ'է, եւ իր երկար ու փափուկ մազով հագուստ կը շինեն ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ բաներ անապատ կը կոչուին : — Ի՞նչպէս կ'ըլլայ անապատ մը : — Ո՞ւր կը բնակին Արաբացիները եւ ինչո՞վ կը համբորդեն : — Ինչո՞ւ *անապատի նաւ* կը կոչուի ուղտը: — Ի՞նչպէս կ'ըլլայ ուղտը ու քանի՞ տեսակ: — Ի՞նչ յատկութիւններ ունի ուղտը եւ ի՞նչ օգուտներ :

---

## 9. ՆԱՊԱՍՏԱԿՆ ՈՒ ԿՐԻԱՆ

*Օր մը Նապաստակն ըսաւ Կրիային. «Ծոյլին մէկն ես դուն. ա՛յնքան դանդաղ կը քալես որ կը կարծուի թէ տեղէդ չես շարժիր» ։*

---

### Թ. ՀՐԱՀԱՆԳ

*Տառ մը փոխելով՝ բառը փոխէ՛* (Ուղեցոյց, էջ 8) :

*Կախ, գառն, ձաւար, աւար, գանձ, դկուղ, տապան, անապակ, եղ, քիչ, ձախ, անարատ, դունչ, կապ, երագ, ճերմակ, դերձան, հաւաստի, կուտ, կտակ, բարունակ, կարթ, բանակ, հող, հոր, ապիկի, կալ, պայծառ, գագաթ, արձան, երկար, աշտարակ, ուռի, պահապան, չէնք, գին, սաթ, վէպ, մամուկ, ճանճ, յամր, մեղկ, պսակ, հագիւ, բարկ, հարուստ, գաւակ, տաղտուկ, որոշում, ցանկութիւն ։*

— *Բա՛րեկամս, պատասխանեց Կրիան, ես կրցածիս չափ շուտ կ'երթամ, եւ շատերէն աւելի շուտ կը քալեմ. օրինակի համար քեզմէ աւելի շուտ։*

— *Գրա՛ւ դնենք, տեսնե՛նք ո՞ր առաջ պիտի հասնի սա դիմացի լեռը։*

*Նապաստակը կը յօժարի եւ երկուքը մէկէն ճամբայ կ'ելլեն։*

*Մեր Նապաստակը բնաւ չ'աճապարեր։ Կը զբօսնէ, խոտ կուտէ, արեւուն դէմ կը պառկի, ճանճերուն հետ կը խաղայ. «Ժամանակ շատ ունիմ» կ'ըսէ։ Վստահ է թէ խեղճուկ, դանդաղ՝ ու տունը կռնակին վրայ կրող Կրիայէն աւելի առաջ պիտի հասնի։*

*Կրիան միշտ եւ անընդհատ կը քալէր, Նպատակին կը մօտենար։ Յանկարծ, Նապաստակը կը նշմարէ զայն, կը ցատքէ, կը վազէ հեւալով։ Վերջապէս կը հասնի։*

*Բայց Կրիան արդէն հասած էր բլուրին գագաթը։*

*Տղա՛ք, աս պատմութիւնը ձեզի համար է։ Ձեր մէջ կան այնպիսիններ որ սորվելու համար ջանք չեն ըներ։*

---

## 10. ՀՐԱՀԱՆԳ

*Աշակերտը երեք սիւնակի թող բաժնէ հետեւեալ անունները, առաջինին մէջ դնելով* հանդերձեղէններ, *երկրորդին մէջ* կահեր, *երրորդին մէջ* ուտելիքներ (Ուղեցոյց, էջ 9) :

*Միս, թիկնաթոռ, կրծկալ, մուճակ, գետնախնձոր, պարեգօտ, լօդիկ, հաւկիթ, սեղան, վարունգ, տափատ, բաճկոն, ցփսի, թելահայս, գիշերնոց, կիսակօշիկ, ՞շրջանակ, հրուշակ, փողկապ, դաշնակ, շոմին, գլխարկ, վերարկու, հողաթափ, խորոված, օրօրոց, խաւիծ, շրջազգեստ, բողկ, ձեռնոց, վառարան, մահճակալ, բաղարջ, եղինձ, շուրջառ, զենջակ, բարձ,*

*Կան ուրիշներ ալ որ անդուլ ու յարատեւ կ'աշխատին եւ, երբ տարին լրանայ, իրենց ընկերներէն աւելի յաջողակ ու զարգացած կ'ըլլան։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Նապաստակն ի՞նչ ըրաւ Կրիային: — Կրիան ի՞նչ պատասխանեց: — Ի՞նչ ըսել է *գրաւ*: — Ի՞նչ էր գրաւին նպատակը: — Ի՞նչ ըրաւ Նապաստակը: — Իսկ Կրիա՞ն: — Ո՞վ առաջ հասաւ: — Այս պատմութիւնէն ի՞նչ սորվելու ենք տղաք:

---

## 10. ԽԱՀՈՒԷ

*Խահուէն կոփեանի կոչուած տունկ մըն է, խնձորենիին պէս։ Ջուաձեւ, փայլուն տերեւներ ունի, ծաղիկները յասմիկի նման են եւ անուշ հոտ մը ունին։ Պտուղները նախ կարմիր են, ապա կը սեւնան. այս պտուղները երկու կուտ ունին, մէկ կողմը տափակ, միւս կողմը կլոր ու իրարու կպած։ Այս կուտերն են ահա խահուէի հատիկները որոնց գոյնը մոխրագոյն կանաչ է։*

*Խահուէն սապէս կը պատրաստեն խմելու համար.*

---

### 11. ՀՐԱՀԱՆԳ

*Պատասխանեցէ՛ք հարցումներուն* (Ուղեցոյց, էջ 9):

1. *Ինչո՞վ կը ճամբորդեն ծովու վրայ։* 2. *Ինչո՞վ կը ճամբորդեն ցամաքի վրայ։* 3. *Քանի՞ քաղաք կը ճանչնաս. Գրէ՛ անոնց անունները։* 4. *Քանի՞ գեղ կը ճանչնաս. Գրէ՛ անոնց անունները։* 5. *Ի՞նչ կը պատահի ձմեռը։* 6. *Ի՞նչ համ ունի շաքարը։* 7. *Մե՞ղրը։* 8. *Ի՞նչ համ ունի քացախը, կիտրոնը, աղոխը։* 9. *Ո՞ր կենդանիներ կ'ապրին ախոռը։* 10 *Ո՞ր կենդանիներ կ'ապրին գոմը։* 11. *Ի՞նչ ըսել է չորքոտանի։* 12. *Ի՞նչ գործիք ունի հիւսնը։* 13. *Ի՞նչ գործիք ունի կօշկակարը։* 14. *Ի՞նչ գործիք ունի երկաթագործը։*

հատիկները տապակի մը կամ կլոր խողովակի ձեւով ամանի մը մէջ դնելով՝ կը խարկեն, այնպէս որ անոր-ժեկի հոտ մը ու շագանակի գոյն կը ստանայ ։ Եթէ շատ խարկուի, կը սեւնայ ու համը կը փախչի ։ Վերջը տաք տաք կը ծեծեն սանդի մէջ կամ կը մանրեն աղօրիքով, մինչեւ որ բարակ փոշի դառնայ ։ Այս սրճեփի մէջ ջուր կ'եռացընեն ու այդ փոշին ալ անոր մէջ կը դնեն, քիչ մը շաքար կը խառնեն, կ'եփեն՝ մինչեւ որ գորշ փրփուրը երեւայ, եւ սկահակներու մէջ կը լեցնեն ու կը խմեն ։ Միայն թէ խահուէն շատ եփելու չէ որ համը չփախչի ։

Խահուէն զօրացուցիչ ըմպելի մըն է, մարսողութեան կ'օգնէ, եւ տկար կազմ ունեցող մարդոց վրայ կ'ազդէ ։ Սակայն, տղաք լաւ կ'ընեն որ կա՛մ բնաւ չխմեն խահուէ եւ կա՛մ շատ քիչ խմեն ։

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ: — Ինչի՞ կը նմանի կոփենին : — Ի՞նչ է կոփենին : — Տերեւներն ի՞նչպէս են : — Ծաղիկնե՞րը : — Պտուղնե՞րը: — Քանի՞ կուտ ունի : — Խահուէն ի՞նչպէս կ'եփեն (պատմեցէք մանրամասնօրէն) : — Ի՞նչ է խահուէն եւ ի՞նչ օգուտ ունի : — Տղա՛ք խմելո՞ւ են :

---

### 12. ՀՐԱՀԱՆԳ

*Պատասխանեցէ՛ք այս հարցումներուն :*

*Օրինակ. — Մանգաղը գործիք է, մահճակալը կարասի է, գաւաթը աման է* (Ուղեցոյց, էջ 10) :

*Ի՞նչ է հացը, սուրճը, սղոցը, գրիչը, գնտակը, սեղանը, գինին, կաթսան, շանը, կաթը, բահը, մազը, պանիրը, կանթեղը, կարկանդակը, սափորը, հայլին, հիւանը, մուրճը, ժամացոյցը, բանալին, խորովածը, չիչը, հողը, աթոռը, տապակը, տաբատը, ոսկին, ջուրը, հրացանը, կապարը, տապարը, գոմէշը, սակուրը, թակոյկը ։*

## 11. ՊԱՅՏ

Գեղացի մը իր Թովմաս տղուն հետ դաշտին մէջէն կ՚անցնէր։ «Տե՛ս, ըսաւ անոր, ահաւասիկ գետինը պայտ մը կայ, ա՛ռ։

— Ո՜հ, պատասխանեց Թովմաս, ատանկ պզտիկ բանի մը համար ծռիլը կ՚արժէ՞։»

Հայրը բան մը չըսաւ, պայտը առաւ ու գրպանը դրաւ։ Մօտի գեղը հասած ատենը, քանի մը փարայի ծախեց զայն պայտառին, և այն ստակով կեռաս գնեց։ Յետոյ իրենց ճամբան շարունակեցին։ Արեւը շատ տաք էր եւ հեռուէն ո՛չ տուն, ո՛չ անտառ, ո՛չ աղբիւր կ՚երեւար։ Թովմաս՝ ծարաւէն կը մեռնէր ու դժուարաւ կը քալէր։ Հայրը, որ առջեւէն կ՚երթար, գաղտուկ մը գետինը կեռաս մը ձգեց։ Թովմաս վազեց առաւ զայն և ախորժով կերաւ։ Քանի մը քայլ անդին, երկրորդ կեռաս մը հօրը ձեռքէն ինկաւ։

Այսպէս շարունակեց մինչեւ որ բոլոր կեռասները հատան։

Երբ տղան վերջին կեռասը բերանը դրաւ, հայրը դարձաւ ըսաւ.

— Տե՛ս, տղաս. դուն անգամ մը ծռիլ չուզեցիր,

---

## 13. ՀՐԱՀԱՆԳ

Պատասխանեցէ՛ք բերանացի ու գրաւոր (Ուղեցոյց, էջ 10) :

1. Ո՛ր քաղաք (կամ գեղ) կը բնակիս, ո՞ր գաւառի մէջ։ 2. Ի՞նչ է ծնողքիդ անունն ու մականունը, քու անո՞ւնդ։ 3. Ո՞վ է կնքահայրդ, իսկ տանտէրէ՞ցդ։ 4. Ո՞ր թուականին ծնած ես, քանի՞ տարեկան ես։ 5. Ո՞ր դպրոցը կ՚երթաս եւ ի՞նչ դասեր կ՚առնես։ 6. Ստորագրէ ու թուական դիր։

պայտը առնելու, և քանի անգամէն աւելի ծռեցար՝ կեռասները վերցնելու, որոնք պայտին գինովը ծախու առնուեցան։ Գիտցի՛ր թէ ամենափոքր բաներ իրենց արժէքն ունին, եւ պէտք չէ որ անարգուին։

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է պայտը: — Գեղացին ի՞նչ կ'ընէր իր տղուն հետ: — Ի՞նչ ըսաւ անոր: — Ի՞նչ պատասխանեց Թովմաս: — Ի՞նչ ըրաւ հայրը: — Յետոյ ի՞նչ ըրին: — Ի՞նչ կ'ընէր Թովմաս, երբ հայրը կեռաս կը ձգէր գետինը: — Վերջը ի՞նչ ըսաւ հայրը: — Ի՞նչ կը հասկնաս այս խրատէն:

## 12. ՇԱՔԱՐ

*Շաքարը, զոր դուք այնքա՛ն կը սիրէք, կը հանուի մեծ տունկէ մը՝ շաքարեղէգէն՝ որ Արեւելեան Հնդկաստանի, Հարաւային Ամերիկայի ու Եգիպտոսի մէջ կ'աճի։ Այս տունկը իրօք եղէգ մ'է, թէպէտ բնաւ չի նմանիր սովորական կնիւնին կամ սէզին։*

*Երբ եղէգը հասուննայ, արմատէն կը կտրեն, երկու ուժեղ գլաններով կը ճմլեն, մինչեւ որ հիւթը*

---

## 14. ՀՐԱՀԱՆԳ

*Հարցումներուն պատասխանեցէք:*

*Օրինակ.* — Ձին ընտանի կենդանի է (Ուղեցոյց, եջ 11):

*Ի՞նչ է ձին, օձը, մողէսը, մեղուն, նապաստակը, ճնճղուկը, մորեխը, ոզնին, չղջիկը, կովը, էշը, թիթեռնիկը, արտոյտը, մրջիւնը, կրիան, սոխակը։*

*Ի՞նչ է տունը, սոխը, տետրակը, գոմը, տատրակը, թէյը, եղինձը, գրիչը, կացինը, մուրճը, ջաղացքը, գրատախտակը, կատուն, սանը, կաղնին, բանջարը, չերեփը, գոմէշը, ձուկը, եկեղեցին, վարդենին, կրտուիծ, արծիւը, գրադարանը, սխտորը, դուրը, գարին, գրակալը, պտուկը, չամիչը, հացը։*

*դուրս տայ։ Այս հիւթը մեծ ամաններու մէջ հաւաքելով՝ կեռացընեն մինչև որ թանձր օշարակ մ՚ըլլայ։ Ապա մեծ կարասներու մէջ կը լեցընեն ու կը քամեն, կարասին մէջ կը դիզուի հում կամ անզուտ շաքարը։*

*Ձեր կերած այն փայլուն ու կարծր շաքարը ուրիշ բան չէ, բայց եթէ այդ հում ու անզուտ հիւթը զոր մաքրեր, զտեր ու բիւրեղացուցեր են։*

**ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. —** Տունկ, շաքարեղէգ, Հնդկաստան. Հաւայ, Ամերիկա, Եգիպտոս, անիլ, կնիւն, ուժեղ, գլան, ճմլել, հիւթ, եռացընել, օշարակ, հում, զտել, բիւրեղացընել:

---

## 13. ՀԻՒԱՆԴԿԱԽ ԱՂՋԻԿԸ

(Մի՛ ծաղրէք հիւանդոտները)

*Մաքրուհի անուն փոքրիկ աղջիկ մը, օր մը, իր դայեակին գիրկէն ինկաւ ու ոտքը կոտրեցաւ։ Խեղճ աղջիկը կաղ մնաց։ Դպրոց գացած օրը, բոլոր ընկերուհիները իրեն կը նայէին։ Անիրաւ բան էր ըրածնին, որովհետեւ խեղճին սիրտը երկիւղով ու վիշտով կը լեցը-*

---

**15. ՀՐԱՀԱՆԳ**

*Ինչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 11):

1. *Մարմինին այն մասը որ գլուխը բունին կը միացնէ։* 2. *Եկեղեցիին մէջ պատարագ մատուցուած տեղը։* 3. *Այն տեղն ուր մարդ կը թաղեն։* 4. *Շէնք մը՝ ուր ճամբորդներ կ'իջեւանին։* 5. *Տղայ մը որ հայր ու մայր չունի։* 6. *Կին մը՝ որուն ամուսինը մեռած է։* 7. *Սենեակը՝ ուր կը ճաշեն։* 8. *Այն տեղն ուր մարդիկ առուտուր կ'ընեն։* 9. *Հայրենիքէն հեռու ապրող մարդը։* 10. *Այն անօթը՝ որուն մէջ կերակուր կ'եփուի։* 11. *Շատ ծեր կին մը։* 12. *Թագաւորին բնակած շէնքը։*

*նէին։ Զեմ համարձակիր ըսել այդ օրուան գրօսանքի միջոցին պատահածները։ Աշակերտուհի մը կաղալով քալեց Մաքրուհիին առջեւ։ Ասով անոր կաղութիւնը կը ծաղրէր . . . ։ Ո՜հ, որչա՜փ գէշ բան է մարդ ծաղրելը։ Մաքրուհի անկիւն մը գնաց ու սկսաւ լալ։ Վարժուհին նշմարեց, անոր քով գնաց, ու կամացուկ մը հարցուց թէ ի՞նչ էր լալուն պատճառը։ Մաքրուհի պատմեց պատահածը։ Վարժուհին այն միւս չարասիրտ աղջիկը բերել տուաւ, անոր անարժան վարմունքը յանդիմանեց ու խստիւ պատժեց զայն։ Այն օրէն ի վեր, ազնուութեամբ վարուիլ սկսան փոքրիկ հիւանդկախ աղջիկին հետ։ Ամէնքն ալ անոր հաճոյք պատճառել կ'ուզէին։ Մէկը ուտելիքները կը բերէր անոր, ուրիշ մը թեւը կուտար՝ իրենց տունը տանելու համար։ Մէկ խօսքով դըպրոցին սիրական աղջիկը կը սեպուէր Մաքրուհի։*

*Շատ վատթար սիրտ մը կրելու է՝ խեղանդամները ծաղրելու համար։ Խեղճերը ի՞նչ յանցանք ունին, բաւական արգահատելի չե՞ն արդէն։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ ըսել է հիւանդկախ : — Ի՞նչ պատահեցաւ փոքրիկ Մաքրուհիին : — Դպրոց գացած օրը ի՞նչ ըրին ընկերուհիները: — Ի՞նչ ըսել է ծաղրել: — Ի՞նչ ըրաւ վարժուհին : — Անկէ վերջը ի՞նչ եղաւ :

---

## 16. ՀՐԱՀԱՆԳ

*Պատասխանեցէք հարցումներուն :*

*Օրինակ. — Կարկանդակն ու թխահայը ուտելիքներ են. — Գոգնոցը զգեստ է. — Ծիրանը պտուղ է* (Ուղեցոյց, էջ 12)։

*Ի՞նչ է կարկանդակը, թխահայը, գոգնոցը, ծիրանը, ստեպղինը, սանդը, թամբը, փարչը, փիղը, մամուկը, մամուլը, եկքանիկը, ծածանը, կարմրախայտը, գորտը, ճընճղուկը, չրջազգեստը, գաւաթը, հայլին, քարտէզը, գրադարանը, օձը, թթենին, արջը, կէտը, կրիան, սոցը, օձաձուկը, չահօքլամը, գայլիկոնը, որդը, պայուսակը, փքոցը։*

## 14. ՊԻՏԻՏԻԿԸ

*Պիճիլիկ մը, հազիւ ինձ չափ,*
*Եկած էր մեզ Գարթալէն,*
*Սիրուն էր շատ չարաճճին,*
*Բայց կը նեղուէր կարդալէն։*

*«Մամա՛, կ'ըսէր սրտին խորէն,*
*Լալով արցունք անդադար,*
*Ա՜խ, շո՜ւտ եկուր. շա՜տ եղաւ ա՛լ*
*Կը մեռնիմ ես, ա՛ռ զիս տա՛ր։*

*«Խաղողներուդ անուշահամ*
*Հոգի՛ կուտամ՝ անկասկած.*
*Ա՜խ, ե՞րբ զանոնք պիտի ծծեմ՝*
*Քու քովիկըդ ես պառկած։*

*«Մայրի՜կ, ինչո՞ւ աս գառնուկըդ*
*Ցանձնեցիր դուն օտարին,*
*Ա՛լ հերիք է, գամ գրկեմ քեզ,*
*Լեցուեցաւ ճիշդ մէկ տարին։*

---

### 17. ՀՐԱՀԱՆԳ

**Տառ մը փոխելով բառը փոխեցէք:**

**Օրինակ. — Աւազակ, կոճակ, սուրբ, կակաչ, հոգի (Ուղեցոյց, էջ 12)։**

**Աւազան, կոհակ, նուրբ, կանաչ, շոգի, քարտէզ, սա-կառ, ուս, ատելի, սիւն, սուրճ, ժանեակ, եմակ, դիակ, բոյթ, Թութակ, փուր, ճահիճ, նման, չոթ, սռնապան, հայրենի, լերկ, բիբ, չուառ, լեռ, լինդ, կռունկ, ծղօտ, կոպ, ափել, ճիտ, լման, արմաւ, ողբ, որբ, չար, կապիկ, նկար, մարագ։**

«Մայրի՛կ, ո՞ւր ես, մոռցա՞ր մի զիս,
Ե՛կ, համբուրէ՛ այտերէս,
Նուաղեցայ քու կարօտով
Եւ մընացի անտէր՝ ես։

«Ա՜խ, կարօտըդ մաշեցուց զիս,
Համբոյրներս յիշէ՛ դուն,
Բաւական չէ՞ հոս մընալըս,
Ե՞րբ պիտի գաս տանիս տուն։»

## 15. ԹՌՉՈՒՆՆԵՐ

Եկէ՛ք, տղա՛ք, պահիկ մը հանգչինք սա շոճիին տակ ու շնչենք անոր արտաբուրած անուշակ օդը։ Ակա՛նջ տուէք այս բիւրաւոր ձայներուն, որ կ'ելլեն ծառերուն ոստերուն վրայ շինուած բոյներէն։

Բարձր շէնքերու կատարները կամ պատուհաններու անկիւնը բոյն կը դնեն ծիծառները, ձմեռը մեր կլի-

---

**18. ՀՐԱՀԱՆԳ**

Ի՞նչ կը կոչուի (Ուղեցոյց, էջ 13)։

1. Գործիք մը՝ որով նաւը կը կառավարեն։ 2. Գործիք մը՝ որով կը ծեծեն սալին վրայ։ 3. Աման մը՝ որուն մէջ սոխ, սխտոր, եւ այլն կը ծեծեն։ 4. Կարասի մը՝ որուն մէջ գիրք կը շարուի։ 5. Կենդանի մը՝ որ կռնակին վրայ կուա-կէն ունի։ 6. Ընդարձակ տարածութեամբ ջուր մը։ 7. Լեռ մը որ կ'այրի։ 8. Երկնքէն տեղացող ջուրը։ 9. Գունաւոր կամարը՝ որ անձրեւի ատեն կ'երեւայ։ 10. Տունկը՝ որուն վրայ խաղող կը բուսնի։ 11. Մարգարէն որ Աստուածահայր կոչուեցաւ եւ սաղմոսներ շինեց։ 12. Քեզմէ առնելիք ունեցող մարդը։ 13. Մարդ մը որ մեռելները կը թաղէ։ 14. Շէնքը ուր մարդիկ կը յաճախեն աղօթելու։

*մաներէն կը հեռանան, ետքը նորէն կուգան գարունն աւետել մեզի։ Իրենց բոյները զարմանալի կարգաւորութեամբ մը յօրինելով՝ կարծես օդային քաղաք մը կը կազմեն զոր կը պաշտպանեն երբ թշնամի մը գայ աւրել։*

*Ոչ նուազ զարմանալի են թռչուններուն սովորութիւնները. ոմանք ծառի ճիւղերով ու յարդի շիւղերով կը շինեն իրենց բոյնը, ոմանք ծղօտներով, խոտերով ու սարդի ոստայնով։ Խնամոտ հոգածութեամբ կը սնուցանեն իրենց ձագերն եւ անոնց կը սորվեցընեն ճախրել օդին մէջ եւ գեղգեղել քաղցրաձայն։ Այս փոքրիկ արարածներ իրենց անուշ երգերով մեզ զուարթացընելէ զատ, նշանաւոր ծառայութիւններ ալ կ'ընծայեն երկրագործութեան, վասն զի հազարաւոր վնասակար որդեր, թրթուրներ ու միջատներ կը սպաննեն։*

*Իսկ ասոնց շատին միսը համադամներ կ'ըլլայ մեր սեղաններուն վրայ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ կ'արտաքուրե ըսնին: — Ծիծառներն ո՞ւր բոյն կը դնեն: — Ո՞ւր կ'երթան ձմեռը: — Ի՞նչպէս են անոնց բոյները: — Թռչուններն ի՞նչպէս կը շինեն իրենց բոյնը: — Ի՞նչպէս կը սնուցանեն իրենց ձագերը: — Ի՞նչ օգուտներ կ'ընծայեն:

---

## 19. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 13)։

1. *Այն որ ալիւր կ'աղայ։* 2. *Ալիւր աղացուած տեղը։* 3. *Այն խոտը զոր թղթի մէջ փաթթելով կը ծխեն։* 4. *Այն հեղուկը որով կը գրեն։* 5. *Այն մարդը որ կը դատէ։* 6. *Լաւ խօսող մարդը։* 7. *Մարդուն ամէնէն աւելի նմանող կենդանին։* 8. *Կակուղ բան մը որ հեղուկները կը ծծէ։* 9. *Քրիստոնէութեան հիմնադիրը։* 10. *Հայ ազգը քրիստոնէութեան բերողը։* 11. *Մատիններ, քայլեր եւ այլ զարդեր շինող արհեստաւորը։* 12. *Քրիստոսը դատող դատաւորը։* 13. *Մաղքոսին ականջը կտրող առաքեալը։*

## 16. ԳՆՏԱՍԵՂԸ

*Երիտասարդ մը հարուստ վաճառականի մը խանութը ներկայանալով՝ աղաչեց որ վաճառատան մէջ պաշտօն մը տայ իրեն։*

*Շատ խեղճուկ հագուած էր, եւ երկչոտ՝ վարանոտ կերպարանք մ'ունէր։*

*Վաճառականը խստութեամբ պատասխանելով ըսաւ «Պարապ պաշտօն չկայ» ու ճամբեց։*

*Երիտասարդը տրտում տրտում ետ դարձաւ, եւ բակէն անցած միջոցին, գետինը գնտասեղ մը տեսաւ։ Իսկոյն ծռեցաւ ու վեր առաւ զայն։*

*Այս գնտասեղը իր յաջողութեանը պատճառ եղաւ։*

*Վասն զի վաճառականը տեսած էր, եւ խորհելով թէ այսքան հոգածու և խնայող երիտասարդ մը վաճառականութեան յարմար էր, կանչեց զայն ու գանձապետ կարգեց իր վաճառատան։*

---

### ԺԹ. ՀՐԱՀԱՆԳ

*Ինչ կը կոչուի* (Ուղեցոյց, եջ 13) *:*

1. *Այն աշխոյժ չորքոտանին որուն վրայ կը հեծնեն կամ զոր կառքի կը լծեն։* 2. *Անկէ աւելի փոքր կենդանի մը որ երկայն ականջներ ունի եւ յամառ է։* 3. *Չորքոտանի մը որ եղջիւր ունի եւ որուն կաթը կը խմենք ու միսը կ'ուտենք։* 4. *Կովէն փոքր կենդանի մը՝ որուն միսը կ'ուտենք, կաթը կը խմենք ու բուրդը կը խուզենք։* 5. *Ոչխարի խումբ մը։* 6. *Հօտ մը կառավարողը։* 7. *Հօտին պահապան կենդանին։* 8. *Հօտին թշնամի չար կենդանին։* 9. *Մարդ մը որ գիրք կը ծախէ։* 10. *Գործիք մը որ ժամերը ցոյց կուտայ։* 11. *Մարդ մը որ քարոզ կուտայ։* 12. *Մարդ մը որ գիրք կը կազմէ։* 13. *Մարդ մը որ կօշիկ կը կարէ։*

*Քանի մը տարի վերջը գանձապետը նոյն վաճառականին փեսան ու ընկերն եղաւ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ ըսել է գնտասեղ: — Ի՞նչ բրաւ երիտասարդ մը: — Ինչո՞ւ: — Ի՞նչպէս էր: — Ի՞նչ պատախանեց վաճառականը: — Երիտասարդը ինչո՞ւ տրտում կը դառնար: — Ի՞նչ տեսաւ բակին մէջ: — Ի՞նչ բրաւ: — Ի՞նչպէս այդ գնտասեղը իր հարստութեան պատճառ եղաւ: — Քանի մը տարի վերջը ի՞նչ եղաւ:

---

## 17. ՓՈՃՈԿՆ ՈՒ ՄԻՋՈՒԿԸ

*Երկու տղաք, մէկը շատ պարզամիտ եւ միւսը խորամանկ, միասին գտան ընկոյզ մը։ Հարկ էր բաժնել իրենց մէջ. խորամանկ տղան կը բանայ ընկոյզը, ինք կ'ուտէ միջուկը, և փոճոկը կու տայ իր ընկերին որ ի զուր կը ջանար ակռաներովը մաքրել փոճոկը եւ ուտել։ Վերջապէս հասկցաւ թէ խաբուեր է. «Ա՛լ չպիտի խաբուիմ, ըսաւ ինքիրեն. ես գիտեմ թէ ի՛նչպէս պիտի փոխարինեմ այս խաբէութեան, եթէ առիթ մը ձեռք ձգեմ։» Իրենց պտոյտը շարունակելով՝ քիչ մը հեռուն ձիթա-*

---

**Ց1. ՀՐԱՀԱՆԳ**

*Ի՞նչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 13):

1. *Մարդերուն բնակած շէնքը։* 2. *Կենդանիներուն բնակած տեղը։* 3. *Իրենց ձագերուն համար թռչուններուն շինածը։* 4. *Ծովուն վրայ քալող մեծ շէնք մը։* 5. *Անոր փոքրը։* 6. *Խոտ կտրելու գործիքը։* 7. *Կարասի մը որուն վրայ կը նստին։* 8. *Կրակ վառելու տեղը։* 9. *Թիւերը սորվեցընող ուսմունքը։* 10. *Աշխարհիս բաժանումները սորվեցընող գիտութիւնը։* 11. *Տղայ մը որ անհանդարտ չէ։* 12. *Տղայ մը որ ուսմունքը կը սիրէ։*

*պտուղ մը գտան։ Այն ատեն, պարզամիտը, որ կ'ուզէր խաբել իր ընկերը, ըսաւ. «Քեզի՛ պահէ փոճոկը եւ տո՛ւր ինծի միջինը։» Միւսը քթին տակէն խնդալով՝ իսկոյն կը կատարէ անոր ըսածը. Ձիթապտուղին փափկիկ միսը կ'ուտէ եւ կարծր կուտը իր միամիտ ընկերին կուտայ։*

*Փորձառութիւնն ի՞նչ օգուտ ունի անխելքին։*

**ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ ըսել է փոճոկ։ — Պահարան կամ արտաքին մաս նշանակող ուրիշ ի՞նչ բառեր գիտէք։ — Ի՞նչ ըսել է պարզամիտ, իսկ խորամա՞նկ։ — Ի՞նչ ըրին երկու տղաքը։ — Ի՞նչ ըրաւ խորամանկ տղան։ — Ի՞նչ ըսաւ պարզամիտը։ — Քիչ մը հեռուն ի՞նչ պատահեցաւ։ — Ո՞վ կ'օգտուի փորձառութենէ։**

---

## 18. ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔ

**(Ցամաքի բաժանումներ)**

1. Կղզի *կ'ըսուի՝ ամէն կողմէ ջուրով պատած ցամաքին։*

2. Թերակղզի *կ'ըսուի ցամաքին այն մասը որ երեք կողմէ ջուրով շրջապատուած է և միայն մէկ կողմէն միացած է ցամաքին։*

---

### ԶԶ. ՀՐԱՀԱՆԳ

***Պատասխանեցէք բերանացի ու գրաւոր*** (Ուղեցոյց, էջ 14)։

1. *Ի՞նչ բանի կը գործածուի շաղախը։* 2. *Որո՞նք են ձիու մը կազմածքը։* 3. *Որո՞նք են կառքի մը կազմածքը։* 4. *Ի՞նչ կը շինեն յախճապակիով։ — Ի՞նչ կը շինեն պղինձով։* 5. *Որո՞նք են գործածական մետաղները։* 6. *Ի՞նչ զարդեր կ'ունենան կիները։* 7. *Ո՞վ կը շինէ գոհարեղէնները։* 8. *Ի՞նչ գործիք ունի դերձակը։*

*Քանի մը տարի վերջը գանձապետը նոյն վաճառականին փեսան ու ընկերն եղաւ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ ըսել է գնտասեղ: — Ի՞նչ բրաւ երիտասարդ մը: — Ինչո՞ւ: — Ի՞նչպէս էր: — Ի՞նչ պատասխանեց վաճառականը: — Երիտասարդը ինչո՞ւ տրտում կը դառնար: — Ի՞նչ տեսաւ բակին մէջ: — Ի՞նչ բրաւ: — Ի՞նչպէս այդ գնտասեղը իր հարստութեան պատճառ եղաւ: — Քանի մը տարի վերջը ի՞նչ եղաւ:

## 17. ՓՈՃՈԿՆ ՈՒ ՄԻՋՈՒԿԸ

*Երկու տղաք, մէկը շատ պարզամիտ եւ միւսը խորամանկ, միասին գտան ընկոյզ մը։ Հարկ էր բաժնել իրենց մէջ. խորամանկ տղան կը բանայ ընկոյզը, ինք կ'ուտէ միջուկը, և փոճոկը կու տայ իր ընկերին որ ի զուր կը ջանար ակռաներովը մաքրել փոճոկը եւ ուտել։ Վերջապէս հասկցաւ թէ խաբուեր է. «Ա՛լ չպիտի խաբուիմ, ըսաւ ինքիրեն. ես գիտեմ թէ ի՛նչպէս պիտի փոխարինեմ այս խաբէութեան, եթէ առիթ մը ձեռք ձգեմ։» Իրենց պտոյտը շարունակելով՝ քիչ մը հեռուն ձիթա-*

---

### Ց1· ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 13):

1. *Մարդերուն բնակած շէնքը։* 2. *Կենդանիներուն բնակած տեղը։* 3. *Իրենց ձագերուն համար թռչուններուն շինածը։* 4. *Ծովուն վրայ քալող մեծ շէնք մը։* 5. *Անոր փոքրը։* 6. *Խոտ կտրելու գործիքը։* 7. *Կարասի մը որուն վրայ կը նստին։* 8. *Կրակ վառելու տեղը։* 9. *Թիւերը սորվեցընող ուսմունքը։* 10. *Աշխարհիս բաժանումները սորվեցընող գիտութիւնը։* 11. *Տղայ մը որ անհանդարտ չէ։* 12. *Տղայ մը որ ուսմունքը կը սիրէ։*

*պտուղ մը գտան։ Այն ատեն, պարզամիտը, որ կ'ուզէր խաբել իր ընկերը, ըսաւ. «Քեզի՛ պահէ փոճոկը եւ տո՛ւր ինծի միջինը։» Միւսը քթին տակէն խնդալով՝ իսկոյն կը կատարէ անոր ըսածը. Ձիթապտուղին փափկիկ միսը կ'ուտէ եւ կարծր կուտը իր միամիտ ընկերին կուտայ։*

*Փորձառութիւնն ի՞նչ օգուտ ունի անխելքին։*

**ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ ըսել է փոճոկ։ — Պահարան կամ արտաքին մաս ծածկող ուրիշ ի՞նչ բառեր գիտէք։ — Ի՞նչ ըսել է պարզամիտ, իսկ խորամա՞նկ։ — Ի՞նչ բրին երկու տղաքը։ — Ի՞նչ բրաւ խորամանկ տղան։ — Ի՞նչ ըսաւ պարզամիտը։ — Քիչ մը հեռուն ի՞նչ պատահեցաւ։ — Ո՞վ կ'օգտուի փորձառութենէ։**

---

## 18. ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔ

**(Ցամաքի բաժանումներ)**

1. Կղզի *կ'ըսուի՝ ամէն կողմէ ջուրով պատած ցամաքին։*

2. Թերակղզի *կ'ըսուի ցամաքին այն մասը որ երեք կողմէ ջուրով շրջապատուած է և միայն մէկ կողմէն միացած է ցամաքին։*

---

### ԶԶ. ՀՐԱՀԱՆԳ

**Պատասխանեցէք բերանացի ու գրաւոր** (Ուղեցոյց, էջ 14)։

1. *Ի՞նչ բանի կը գործածուի չաղախը։* 2. *Որո՞նք են ձիու մը կազմածքը։* 3. *Որո՞նք են կառքի մը կազմածքը։* 4. *Ի՞նչ կը շինեն յախճապակիով։ — Ի՞նչ կը շինեն պղինձով։* 5. *Որո՞նք են գործածական մետաղները։* 6. *Ի՞նչ զարդեր կ'ունենան կիները։* 7. *Ո՞վ կը շինէ գոհարեղէնները։* 8. *Ի՞նչ գործիք ունի դերձակը։*

3. Արշիպեղագոս (Կղզեխումբ) կ'ըսուին իրարու մօտ գտնուած շատ մը կղզիներ։

4. Պարանոց կ'ըսուի հողի այն նեղ կտորը որ թերակղզին կը կապէ ցամաքին հետ։

5. Հրուանդան կ'ըսուի ցամաքի մը փոքր մասը որ դէպ ի ծով երկնցած է։

6. Դաշտ կ'ըսուին ընդարձակ ու տափարակ տեղերը։

7. Անապատ կը կոչուին աւազուտ եւ անբեր տեղերը։

8. Ովասիս անունը կուտան անապատին մէջտեղ գտնուող ջրաբեր ու բարեբեր վայրերուն։

9. Լեռ կ'ըսուի հողին այն մասը որ շատ բարձր է։

10. Բլուր կը կոչուին փոքր լեռները։

11. Հովիտը տափարակ դաշտ մ'է որ երկու լերան մէջտեղը կը գտնուի։

12. Ձոր կը կոչուի երկու լերան մէջտեղը գտնուող խորութիւնը։

13. Կիրճ (կապան) կ'ըսուին՝ լեռներու մէջ գտնուող նեղ անցքերը։

14. Հրաբուղխ կ'ըսուի լեռ մը, որուն խորը գտնուած հանքերն ու կազերը ատեն ատեն բռնկելով՝ լեռին գագաթը կը ծակեն եւ՝ կրակ, քար, մուխ ու լաւա կ'արձակեն։

---

## 23. ՀՐԱՀԱՆԳ

*Աշակերտները գրեն հինգ անուն որ նշանակէ* (Ուղեցոյց, էջ 14):

*Մարդ, կին, քաղաք, գիւղ, ժողովուրդ, մարգարէ, սուրբ, եկեղեցական, վաճառական, դատաւոր, փողոց, թաղ։*

## 19. ՄԵՂՈՒ

*Ի՞նչ կայ արդեօք աւելի հիանալի քան Մեղուներուն փոքրիկ խումբը կամ պարը։ Իրօք բարեկարգ կազմակերպութիւն մը ունին իրենց փեթակներուն մէջ. ունին Տիկին մը որ բնաւ չ'աշխատիր եւ աշխատելու ստիպուած չէ, վասն զի ամէնքը իրեն համար կ'աշխատին, կ'երթան, կուգան, սնունդ կը բերեն։ Բայց եթէ Տիկինէն զատ մեղու մը չուզէ աշխատիլ, իսկոյն կը ծեծեն։ Ամէնքն ալ իրենց զբաղումը ունին. ոմանք փեթակին մաքրութեան հոգ կը տանին, ուրիշներ բանւորներուն վրայ կը հսկեն։ Մէկ քանին փեթակին երկու կողմը շարուած՝ կը պաշտպանեն զայն, իբրեւ աչալուրջ հսկողներ։ Ուրիշ խումբեր ալ առտուն կանուխ ծաղիկներուն այցի կ'երթան եւ իրենց համար հարկաւոր եղած հիւթը կը հաւաքեն ու առանց մոլորելու կը վերադառնան իրենց տունը։ Հոն կը զատեն այդ հիւթին այն մասը որ մեղրամոմ ըլլալու յատուկ է, անով փոքրիկ ծակեր, բջիջներ կը շինեն որուն մէջ կը զետեղեն անուշիկ մեղրը որպէս զի մաքուր մնայ։*

*Այս ամէնը սքանչելի ներդաշնակութեամբ կը կա-*

---

### 24. ՀՐԱՀԱՆԳ

**Պատասխանեցէ՛ք եւ ըսէ՛ք թէ** (Ուղեցոյց, էջ 14)։

1. *Ի՞նչ ըսել է հաստատուն մարմին։* 2. *Ի՞նչ ըսել է հեղուկ մարմին։* 3. *Ի՞նչ ըսել է կազային մարմին։* 4. *Ի՞նչպէս կը շինուի հացը, պատմէ՛։* 5. *Ի՞նչ է շիշը։* 6. *Ի՞նչ է կակաչը։* 7. *Ըսէ՛ ինծի հիւանդութիւններու անուններ։* 8. *Ո՞րոնք են դէմքի մասերը։* 9. *Որո՞նք են հինգ մատերու անունները։* 10. *Որո՞նք են սրունքի հինգ մասերը։* 11. *Ի՞նչ է ափինը։*

*տարուի, բնաւ չփոթութիւն, բնաւ անկարգութիւն, կարծես մտածուած կարգ ու կանոն կը տիրէ իրենց մէջ։*

ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Հիանալի, փեթակ, սփռուած, սնունդ, զբաղում, բանուոր, ոմանք, կը պաշտպանեն, աչալուրջ, խումբ, հիւթ, մոլորիլ. մեղրամոմ, բջիջ, զետեղել, սքանչելի, ներդաշնակութիւն, չփոթութիւն։

---

## 20. ՋՈՐ ՍԱԼՈՐԻ ԱՄԱՆԸ

*Դարանին վրայ չոր սալոր պարունակող աման մը կար՝ որուն բերանը բաւական նեղ էր։ Պետրոս ուզեց որ անկիցափ մը առնէ՝ կերակուրէն յետոյ իբր աղանդեր ուտելու համար. «Ա՛ռ ըսաւ մայրը։ — Որչափ, մա՛յրիկ։ — Բուռ մը ա՛ռ, բայց մէ՛կ բուռ միայն։»*

*Պետրոս, որ որկրամոլ է, ձեռքը ամանին մէջ խոթելով՝ կը խառնէ, եւ մատերը իրարմէ հեռացնելով այնպէս կ՚ընէ որ առնուազն տասներկու սալոր կը սեղմեցնէ բուռին մէջ։ Բայց իր ձեռքը այլեւս չի կրնար դուրս հանել ամանին բերնէն որ շատ նեղ է։*

*Պետրոս կը նեղանայ ու կուլայ, ըսելով. «Մայրի՛կ,*

---

### 25. ՀՐԱՀԱՆԳ

**Գրէ՛ եւ բերանացի ալ կրկնէ՛** (Ուղեցոյց, էջ 15)։

1. *Տո՛ւր տասը կաթնատու կենդանիի անուն։* 2. *Որո՞նք են արմտիքները։* 3. *Տո՛ւր հինգ անուն ձուկի։* 4. *Տո՛ւր հինգ անուն սողունի։* 5. *Որո՞նք են դաշտերու մէջ աշխատող գործաւորները։* 6. *Որո՞նք են քաղաքի մէջ աշխատող գործաւորները։* 7. *Ի՞նչ պէտք է տուն մը շինելու համար։* 8. *Ի՞նչ բաներ կրնան կարմիր ըլլալ։* 9. *Ի՞նչ է զանգակատունը։* 10. *Որո՞նք են եկեղեցիի մասերը։* 11. *Որո՞նք են եկեղեցիի պաշտօնեաները։*

սալորները չեմ կրնար դուրս հանել։ — Կէ՛ս մը միայն ա՛ռ, ըսաւ մայրը, եւ այն ատեն պիտի կրնաս ձեռքդ դուրս հանել։ Ի՞նչ օգուտ ունի շատ առնելդ, քանի որ չես կրնար բոլոր առածդ ուտել»։

Պէտք է քիչ բանի փափաքինք, որպէս զի կրնանք ստանալ մեր ուզածը։ Երբ մէկը չափազանց ագահ է, գիտե՞ս ինչ կ'ըլլայ. — սա դժբաղդութիւնը կ'ունենայ որ չի կրնար ձեռք բերել իր յուսացածը։

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ տեսակ տղայ է Պետրոս: — Պատմեցէ՛ք այս առակը: — Ասոր պես ուրիշ օրինակ մը տուէ՛ք:

---

## 21. ԴԱՐԲՆՈՑԻՆ ՄԷՋ

Վարպետ ու աշկերտ՝ կայնած դէմ դէմի՝
Կրակն են խոթեր ձողերն երկաթի,
Աշկերտ մ'ալ «փուֆ փուֆ» կը փչէ փըքոց,
Եւ վառարանէն կ'ելլեն ծուխ ու բոց,
Ծանըր մուրճերով՝ կարմիր երկաթէն
Պէս պէս գործիքներ շուտով կը կոփեն,
Հոն՝ սալին վրայ «Թաքը Թիքը Թաք»
Կացին, բահ, բըրիչ, նաեւ գամ, ուրագ։

---

### 26. ՀՐԱՀԱՆԳ

*Սա բառերը յատուկ անունի վերածէ՛* (Ուղեցոյց, էջ 16):

1. *Բնակած երկիրդ*։ 2. *Աւետարանը գրողները*։ 3. *Թուրքիոյ մայրաքաղաքը*։ 4. *Սպանիայի թագաւորը*։ 5. *Փոքր Ասիայի ամէնէն մեծ լեռը*։ 6. *Մեր ազգին առաջին Լուսաւորիչները*։ 7. *Ձեր վարժարանին անունը*։ 8. *Աստուածաշունչը հայերէնի թարգմանողները*։

Հո՛ն՝ տե՛ս, աշկերտ մը բռնած է ձեռքին
Յեսանին վրայ դեռ դուլ մի կացին.
Շուտ կը դարձնէ անիւը «խըռ խուռ»
Սրբելու համար՝ գործիքն ամրակուռ,
Հոս ալ ուրիշ մը՝ հաստ երկաթին քով
Քրտինք կը թափէ փըշալով հեւքով,
Կը զարնէ մուրճը անվերջ «տանկատանկ»
Աստուած վարձատրէ իր ճիգերն ու ջանք։

---

## 22. ՏՕՆԵՐ

Ծնունդն է մեծ տօն մը զոր եկեղեցին հաստատած է մեր Փրկիչին՝ Յիսուսի Քրիստոսի՝ ծնունդին յիշատակը կատարելու համար։

Մեր Տէրը՝ Յիսուս Քրիստոս՝ ծնաւ Հրէաստանի Բեթղեհեմ քաղաքը, ախոռի մը մէջ։

Մեծ պահք կը կոչուի եկեղեցին հաստատած քառասնօրեայ ապաշխարութիւնը որով հաւատացեալները, բարեկենդանի զուարճութիւններէն ետք, իրենք զիրենք կը ժողվեն, իրենց մեղքին վրայ կը զղջան, կ'ապաշխարեն ու կը պատրաստուին սրբութեամբ կատարել Զատկի տօնը։

---

### 21. ՀՐԱՀԱՆԳ

Պատասխանեցէ՛ք բերնով ու գիրով (Ուղեցոյց, էջ 16)։

1. Ի՞նչ գործիք ունի երկաթագործը։ 2. Ո՞ւր կը տեսնես նաւը. — կառքը, խորանը, ցնցուղը, ծաղիկը, ցորենի հասկերը, սանը, պատուհանը, եայլն, եայլն։ 3. Ի՞նչ պէտք է աշակերտի մը։ 4. Բանջարանոցի մէջ ի՞նչ բանջարներ կը տեսնես։ 5. Ի՞նչ պտուղներ կը ճանչնաս։ 6. Ի՞նչ զգեստներ կը ճանչնաս։ 7. Պառկելու սենեակին մէջ ինչե՞ր կը գտնուին։ 8. Ինչե՞ր կը չինուին խաղողէն։

*Ծաղկազարդը այն կիրակի օրուան յիշատակն է, երբ Յիսուս Քրիստոս մտաւ Երուսաղէմ՝ Չարչարանքէն հինգ օր առաջ։*

*Այն կիրակին «Ծաղկազարդ» կը կոչուի վասնզի Քրիստոս Երուսաղէմ մտած ատեն, ժողովուրդը ի պատիւ իրեն, ծառի ճիւղեր սփռեց անցնելիք ճամբուն վրայ։*

*Զատիկ կամ Յարութիւնը այն օրուան յիշատակն է երբ Քրիստոս, երեք օր գերեզմանին մէջ կենալէ ետք, յարութիւն առաւ։ Այս մեծ տօնին օրը հաւատացեալները կը խոստովանին ու կը հաղորդուին Քրիստոսի սուրբ մարմինին ու արիւնին։*

*Համբարձումը այն օրուան տարեդարձն է երբ Քրիստոս երկինք ելաւ, յարութենէն քառասուն օր ետք։*

*Հոգեգալուստն է տօնը զոր կը կատարենք Ս. Հոգիին երկինքէն իջնելը յիշատակելու համար։*

*Երբ սուրբ առաքեալները, Մարիամ Աստուածամայր եւ ուրիշ սուրբ ու բարեպաշտ կիներ՝ վերնատուն մը հաւաքուած՝ աղօթք կ'ընէին, յանկարծ սաստիկ քամիի պէս ձայն մ'ելաւ, հրեղէն լեզուներ անոնց գլխուն վրայ իջան ու ամէնքն ալ սուրբ Հոգիով լեցուելով՝ սկսան մարգարէանալ ու այլ եւ այլ լեզուներ խօսիլ։*

---

## 28. ՀՐԱՀԱՆԳ

*Հարցումներուն պատասխանեցէք* (Ուղեցոյց, էջ 17)։

1. *Ի՞նչ կ'ընէ լպուտը։* 2. *Բրո՞ւտը։* 3. *Որո՞նք են մարդուս հինգ զգայարանքները։* 4. *Ամառը ո՞ր կենդանիները անհանգիստ կ'ընեն մեզ։* 5. *Ի՞նչ կ'ընեն փայտով։* 6. *Ի՞նչ կը ծախէ փերեզակը։* 7. *Ի՞նչ գործիք ունի հիւսնը։* 8. *Ի՞նչ գործիք ունի կօշկակարը։* 9. *Ի՞նչ գործիք ունի երկաթագործը։* 10. *Որո՞նք են կեանքի հասակները։* 11. *Ի՞նչ կը կոչուի այն տեղը ուր մարդ ծնած է։*

**ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Փրկիչ, յիշատակ, քառասնօրեայ, ապաշխարութիւն, հաւատացեալ, բարեկենդան, զղջալ, չարչարանք, յարութիւն առաւ, խոստովանիլ, հաղորդուիլ, տարեդարձ, հոգեգալուստ, վերնատուն, հրեղէն, մարգարէանալ։**

---

## 23. ԵՐՋԱՆԻԿ ՄԱՐԴՈՒՆ ՇԱՊԻԿԸ

*Պարսիկ Շահ մը կը ձանձրանար. «Բժշկեցէ՛ք զիս» կ'ըսէր իր բժիշկներուն։ Անոնցմէ ամէնէն գիտունը ըսաւ. «Տէ՛ր իմ Թագաւոր, ձեր հիւանդութիւնը կը բժշկուի, եթէ երջանիկ մարդու մը շապիկը հագնիք»։*

*Առաջին նախարարն սկսաւ երջանիկ մարդ փնտռել։ Իրենց վիճակէն գոհ կարծուող հարուստ ու ազդեցիկ անձերու դիմեց։ Ամէնքն ալ կ'ըսէին. «Երջանկութիւնն ի՞նչ է՝ չենք գիտեր»։*

*Օր մը, Նախարարը թշուառ փայտահատի մը հանդիպեցաւ ու հարցուց անոր. «Ըսէ՛ նայիմ, մարդուկս, երջանի՞կ ես»։*

*— Այո՛, ըսաւ միւսը։*

*— Ուրեմն, շո՛ւտ, շապիկդ ինծի տուր։*

---

### 29. ՀՐԱՀԱՆԳ

**Պատասխանեցէք բերանացի եւ գրաւոր (Ուղեցոյց, էջ 17)։**

1. *Ի՞նչ կ'ըլլայ աղը երբ ջուրին մէջ ձգես։* 2. *Կերակուրներուն ի՞նչ կ'ընէ աղը։* 3. *Աղէն զատ ի՞նչ բաներ կը հալին ջուրին մէջ։* 4. *Շաքարէն զատ ի՞նչ բաներ կը ճանչնաս որ անուշ ըլլան։* 5. *Ի՞նչ բաներու կը գործածուի շաքարը։ — Իսկ ա՞ղը, իսկ քացա՞խը։* 6. *Ի՞նչ խմելիքներու մէջ շաքար ձգելու է, որպէսզի խմուին։* 7. *Ուսկի՞ց կ'ելլէ աղը, իսկ շաքա՞րը։*

*— Շապիկ չունիմ, պատասխանեց փայտահատը ։*

*Այս պատմութիւնը հնարող իմաստունը սորվեցնել ուզած է թէ ամենէն հարուստը ամենէն երջանիկը չէ ։*

**ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ եղած էր Պարսիկ Շահ մը։ — Ի՞նչ կ'ըսէր։ — Գիտուն բժիշկն ի՞նչ պատասխանեց։ — Ի՞նչ ըսաւ նախարարը ։ — Ո՞ւր դիմեց ։ — Ի՞նչ կ'ըսէին ամէնքն ալ ։ — Ո՞ւր հանդիպեցաւ նախարարը ։ — Ի՞նչ ըսել է փայտահատ ։ — Ի՞նչ հարցուց փայտահատին ։ — Ան ի՞նչ պատասխանեց ։ — Ի՞նչ կը հետեւի այս պատմութենէն ։**

---

## 24. ԸՆՏԵԼԱՑԱԾ ՕՁԵՐ

*Կան երկիրներ ուր կարգ մը մարդիկ կը բռնեն օձերը, եւ տեսակ մը խաղ կը սորվեցընեն անոնց, նուագարաններու տխուր ու ողբագին ձայնով։ Այդ օձերը, սակայն, շատ վտանգաւոր են։ Ուրեմն, ի՞նչպէս այդ մարդիկ կրնան զանոնք դուրս հանել խորշերէն, ի՞նչպէս կը բռնեն առանց թունաւորուելու։ Օձ մը բռնելնուն պէս, անոր երկու թունալից ժանիքները կը հանեն, ժահրը կը թափի, այսպէսով՝ ա՛լ անկարող կ'ըլլայ օձը խայթելու ։*

---

### 30. ՀՐԱՀԱՆԳ

Հարցումներուն պատասխանեցէք (Ուղեցոյց, էջ 18)։

*1. Ի՞նչ կը կոչուի որթին պտուղը։ 2. Ի՞նչպէս կը շինեն գինին։ 3. Ի՞նչ կը կոչուին այն մարդիկ որ չափազանց գինի կը խմեն։ 4. Ո՞րո՞նք են երկրագործին զբաղումները։ 5. Ո՞րոնք են պայտառին զբաղումները, եւ ի՞նչ գործ ունի։ 6. Ի՞նչո՞ւ կը լուանեն ձիերը։ 7. Ի՞նչ բանի կը ծառայեն հիւանդանոցները։ 8. Ի՞նչպէս կ'եփեն սուրճը։ 9. Ո՞րն է Օսմանեան պետութեան մայրաքաղաքը։ 10. Ո՞րն է աշխարհիս ամենէն բազմամարդ քաղաքը։*

*Այն ատեն զայն կը կրթեն ու կ՚ուսուցանեն ինչ որ ուզեն։ Անոր կը սորվեցնեն ծակի մը մէջ կամ ծածուկ տեղ մը սալարուիլ մինակ, առանց հանդիսականներուն երեւալու։ Սրինգի կամ տիկի մը ձայնով, օձը պահուած տեղէն դուրս կ՚ելլէ ու կը սկսի իր խաղերը։ Պէտք չէ մոռնալ թէ այս սողունը շատ սիրահար է երաժշտութեան որուն տխուր կամ զուարթ խաղերէն ազդուելով՝ կը կանգնի, գլուխը կը շարժէ եւ մերթ տրտմութեան, մերթ աշխոյժ զուարթութեան նշաններ կ՚արտայայտէ։ Իսկ երբ դադրի երաժշտութիւնը, սողունն ալ կը դադրի պարելէ, հանդարտիկ կը պլորուի կը մնայ։*

*Սակայն այս տեսարաններէն մահառիթ վտանգներ ալ կրնան ծագիլ։ Այս զուարթ պարերու միջոցին, անխոհեմ տղեկ մը՝ ուզելով փորձել թէ իրօ՞ք օձը զինք չի խածներ չի թունաւորեր, կատակի համար՝ զարկաւ անոր։ Օձն ալ խայթեց զայն եւ ժամ մը վերջը տղան կը մեռնէր սոսկալի տանջանքներով։*

*Քննութիւն կատարուելով՝ յայտնուեցաւ թէ թունաւոր ժանիքը, զոր խլած էին, նորէ՛ն բուսած ըլլալով՝ թոյնը ազդած էր անխոհեմ մանուկին։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Քանի մը երկիրներու մէջ ի՞նչ կ՚ընեն կարգ մը մարդիկ: — Ի՞նչ կերպով կ՚ընեն: — Ի՞նչպէս ի ցոյց կը հանեն օձը. Նկարագրեցէ՛ք այս տեսարանը: — Այս տեսարաններէն վտանգ ալ ծագա՞ծ է, պատմեցէ՛ք թէ ի՛նչպէս :

---

### 31. ՀՐԱՀԱՆԳ

*Գրեցէ՛ք հինգ հինգ անուն որ ցուցընեն* (Ուղեցոյց, էջ 18)

*Մետաղ, գոյն, ծառ, ծաղիկ, պտուղ, կենդանի, թռչուն, սողուն, միջատ, դրամ, զգայարանք։*

Ծանօթ. — *Ասոնք Հասարակ Անուն կը կոչուին։*

## 25. ՄԻԱՄԻՏ ՈՐՍՈՐԴԸ

*Միամիտ քաղաքացի մը, որ իր ունելիէն զատ ուրիշ զէնք չէր գործածած, որսորդութիւն ընել ուզեց։ Ամէն անգամ որ որսի կ'երթար, ձեռնունայն կը դառնար։ Օր մը շատ յոգնած կը վերադառնար, երբ ճամբան հանդիպեցաւ տղու մը որ ողջ ճագար մը կը տանէր։ «Լաւ, ըսաւ ինքնիրեն, այս անգամ որս պիտի ունենամ»։ Ուստի ճագարը կը գնէ, չուան մը կ'առնէ, մէկ ծայրը անասունին ոտքին կը կապէ եւ միւս ծայրն ալ ծառի մը ոստին։ Յետոյ քանի մը քայլ ետ ետ կ'երթայ, նշան կ'առնէ եւ հրացանը կ'արձակէ։ Գնդակը չուանը կը կտրէ եւ ճագարը կը փախչի իր բոլոր ուժով։*

*Անմիտ մա'րդը միայն կ'ուզէ փառաւորուիլ իր չունեցած կամ իրեն չվերաբերած բանով։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ ընել ուզեց միամիտ մարդը։ — Կրնա՞ր որս ընել. ինչո՞ւ չէր կրնար։ — Ի՞նչ պատահեցաւ օր մը։ — Պատմեցէք թէ ի՛նչ էր մարդուն միտքը։ — Ի՞նչ ըրաւ ճագարը։ — Բարոյականը։

---

### 32. ՀՐԱՀԱՆԳ

*Կէտերուն տեղ պէտք եղած բառը դրէք* (Ուղեցոյց, էջ 19)։

1. *Յիսուս ծնաւ ... մը մէջ եւ մեռաւ ... վրայ։* 2. *Ձիերը կեր կ'ուտեն ... մէջ։* 3. *Այն տեղն ուր դատ կը վարեն, կը կոչուի ...։* 4. *... այն շէնքն է ուր կը բնակին զօրքերը։* 5. *... այն տեղն է ուր մարդ կը թաղեն։* 6. *Կերպասը կը կտրեն ...ով, իսկ հացը կը կտրեն ...ով։* 7. *Մարդ մը որ միշտ նոյն խանութը կը յաճախէ առուտուր ընելու համար, կը կոչուի ...։* 8. *... կը սորվեցընէ ուղիղ խօսիլ եւ ուղիղ գրել, իսկ ... կը սորվեցընէ գաղափարները վայելուչ կերպով շարադրել։*

## 26. ԱՌԻՒԾԸ

*Ամէնէն մեծ ու կատաղի առիւծները կը գտնուին Ափրիկէի լեռներուն և ընդարձակ դաշտերուն մէջ։ Երբ արեւը մարը մտնէ, առիւծը կ'ելլէ իր որջէն ու կ'երթայ որս փնտռելու։ Թեթեւակի կը սողոսկի ցախերուն մէջէն եւ կը պահուըտի աղբիւրի մը քով։ Երբ ուրեշ կենդանի մը՝ ինչպէս գոմէշ, յամոյր, վագերաձի՝ գայ աղբիւրը ջուր խմել, առիւծը ահեղ ոստումով մը անոր վրայ կը յարձակի եւ իր թաթին միա՛կ հարուածովը անոր կողերը կը ջախջախէ։*

*Առիւծը ա՛յնքան ուժով է որ կրնայ երինջ մը բերանը առնել եւ այս բեռով մէկտեղ՝ լայն փոսէ մը կամ բարձր տեղէ մը ցատքելով անցնիլ։*

*Երբ գիշերը լսուի անոր մռնչիւնը, բոլոր կենդանի արարածները ահ ու դողի մէջ կ'իյնան։ Երբ գիւղի մը մօտ գտնուի, շուները կը հաջեն և ձիերը, եզները, ուղտերը յիմարաբար կը վազվզեն։ Գիւղացիները խարոյկներ կը վառեն և բոցավառ ջահեր կը ճօճեն, զայն փախցրնելու համար։ Բայց առիւծին հոգը չէ. արջառներու մակաղատեղը կը մտնէ եւ քանի մը վայրկեանի մէջ ձի մը կամ կով մը իր թաթերուն տակ կը ջախջախէ։*

*Երբ անօթի է կամ զայրացած՝ իր պոչով կը ծեծէ կողերը եւ իր բաշերը կը ցնցէ։*

---

### 33 ՀՐԱՀԱՆԳ

Պատասխանելով ըսէք՝ (Ուղեցոյց, էջ 19):

1. *Ինչի՞ մէջ կ'աղան սուրճը։* 2. *Ինչի՞ մէջ կը ծեծեն սխտորը։* 3. *Ինչի՞ մէջ կը լեցնեն գինին։* 4. *Ինչի՞ մէջ կը ճմլեն խաղողը։* 5. *Ինչի՞ մէջ կը տապկեն ձուկը։* 6. *Ինչի՞ մէջ կը պահեն հագուստները։* 7. *Ինչի՞ մէջ կը հարեն թանը։*

*Այնատեն, մինչեւ իսկ մարդու վրայ կը յարձակի, կը յափշտակէ զայն՝ յագուրդ տալու համար իր անօթութեան։*

*Առիւծին մորթը դեղնագոյն է եւ ողորկ։ Մատակ առիւծը, որ բաշ չունի եւ փոքր է հասակով, կը բնակի անտառներուն խորը՝ իր կորիւններուն հետ։ Վա՜յ անոր որ մօտենայ իր քարանձաւին։*

**ՀԱՐՑՈՒՄՆԵՐ.** — **Ո՞ւր կը գտնուին մեծ ու կատաղի առիւծները։ — Առիւծն ե՞րբ որս կ՚ընէ, ի՞նչպէս, ո՞ւր կը պահուըտի, ի՞նչպէս կը յարձակի։ — Ի՞նչ կը պատահի երբ մռնչէ։ — Երբ գիւղին մօտ ըլլայ, գիւղացիներն ի՞նչ կ՚ընեն, ինչո՞ւ։ — Առիւծն ի՞նչ կ՚ընէ երբ անօթի է, որո՞ւ վրայ կը յարձակի, ինչո՞ւ։ — Նկարագրեցէ՛ք առիւծ մը, հասակը, մորթը, եւայլն։**

---

### 34. ՀՐԱՀԱՆԳ

*Կէտերուն տեղ պէտք եղած բառը դրէ՛ք* (Ուղեցոյց, էջ 19)։

1. ... *տունկ մ՚է որ մեզի կուտայ խաղող։* 2. *Որթին ճիւղերը կ՚ամփոփուին ...ին վրայ։* 3. *Տունկերը կանգուն պահելու համար ...ին կը կապեն։* 4. ... *կոչուի հողի փոքրիկ մաս մը ուր բոյսեր կը տնկուին։* 5. *...ին մէջ ցորեն եւ արմտիք կը ցանեն, իսկ ...ին մէջ կը տնկեն ծառեր ու ծաղիկներ։* 6. *Ազատքեղը, թրթնջուկը, շողգամը եւ անանուխը կը բուսնին ...ին մէջ։* 7. *Կիները իբրեւ զարդ կը գործածեն* ...։ 8. ... *կը տնկէ, կը մշակէ եւ կը պահպանէ ծառեր ու ծաղիկներ։*

## 27. ՀՆԱՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ

Նասրէտտին Հօճան իր գանձը տարաւ ծածուկ անտառին մէջ թաղեց գաղտուկ մը, եւ մարդ չիմացաւ. մինակ՝ իր մէկ ազգականը, որ գիտէր, գիշերանց գնաց ոսկիները հանեց գողցաւ։ Ատեն անցաւ, երբ եկաւ Հօճան իր գանձը նայելու, տեսաւ որ չկայ, հասկցաւ թէ իր ազգականն է գողցեր, մտածեց անա՛նկ խելք մը բանեցնել որ ոսկին տեղն երթայ։ Կանչեց ազգականն ու ըսաւ. «Կ'աղաչեմ, վաղը մէկտեղ երթանք անտառը, փորե՛նք գանձս եղած տեղը, ու հազար ոսկի ալ նորէ՛ն թաղենք։» Նայիս՝ գիշերանց ազգականը առաւ գողցած ոսկիները, տարաւ տեղը դրաւ՝ որ այն հազար ոսկին ալ տէրը թաղէ հոն՝ անկէ ետքը ինք երթայ բոլորը մէկէն յափշտակէ։ Իսկ Հօճան երբոր գնաց գտաւ գանձը, վերցուց տարաւ տուն։

Ո՛վ որ ցանկալով քիչը կը ձգէ ու շատին ետեւէն կ'երթայ, բոլորէն ալ կը զրկուի եւ ունեցածն ալ կը կորսնցնէ։

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Հարուստ մարդը ի՞նչ հնարք մտածեց իր գանձը ձեռք ձգելու համար: (Պատմեցէք նոյնը՝ երկու մարդերը դէմ առ դէմ խօսեցնելով):

---

## 35. ՀՐԱՀԱՆԳ

*Սա պարզ նախադասութիւնները միացուր* ՈՐ *յարաբերականով* (Ուղեցոյց, էջ 19):

1. *Նամակ գրեցի քրոջս, քոյրս եկաւ մեր տունը։* 2. *Դասատուն յանդիմանեց սա տղաքը, սա տղաքը դաս չէին գիտեր։* 3. *Այսօր գացի մօրեղբօրս, մօրեղբայրս գիւղը կը բնակի։* 4. *Ես աչքակապուկը կը սիրեմ, աչքակապուկը ճալի խաղ է։* 5. *Կարդա՛ սա գիրքը, սա գիրքը շատ աղուոր առակներ կը պարունակէ։*

## 28. ԱՂՕԹՔ՝ ՅԻՍՈՒՍԻՆ

*Մայրիկիդ գիրկը՝ փարած ըստինքին՝*
*Յիսո՛ւս, ժամին մէջ՝ այն սեւ ու տըխուր*
*Կանթեղին լոյսին առջեւ լալագին՝*
*Մայրիկէդ կ'առնես գգուանք ու համբոյր։*
*Եթէ կը մըխս հոս, գիշեր ատեն,*
*Եկո՛ւր օրրանըս՝ պառկինք միասին,*
*Հոն՝ քոյրերըս գիս վերմակով պատեն,*
*Պատուհանէն ալ կը նայի լուսին։*
*Գիտեմ, կը վախնաս, երբոր տէրպապան,*
*Իր սեւ մօրուքով՝ մէկ ձեռքը բուրվառ՝*
*Ամէն օր կ'ըսէ խորունկ շարական,*
*Եւ քեզ կ'աղօթէ ամէնուն համար։*
*Եկո՛ւր, տո՛ւն երթանք, շաքար խաղալիկ,*
*Ի՛նչ որ ես ունիմ՝ բաժնենք հաւասար.*
*Հոնտեղ եղբօ՛ր պէս կ'ապրինք խաղաղիկ.*
*Քեզ շա՛տ կը սիրեմ, հիմա հասկցա՞ր։*
*Բայց դուն ալ մայրիկդ ինծի՛ պիտի տաս,*
*Ի՞նչ կ'ըլլայ՝ քո՛ւկդ ալ ի՛մս ալ թող ըլլայ.*
*Իմ մայրըս չի կայ, չիյտեմ ո՞ւր մընաց,*
*Իր կաթն ու պաչիկը շա՛տ կարօտցայ։*

---

*Հարցումներուն պատասխանեցէ՛ք* (Ուղեցոյց. էջ 20)։

1. *Ի՞նչ ըսել է մեդր։* 2. *Քանի՞ տասնորդամեդրը մէկ մեդրի հաւասար է։* 3. *Քանի՞ հարիւրորդամեդրը մէկ մեդրի հաւասար է։* 4. *Քանի՞ մեդրը մէկ հազարամեդր է։* 5. *Ի՞նչ ըսել է քառակուսի մեդր։* 6. *Ի՞նչ ըսել է խորանարդ մեդր։* 7. *Ի՞նչ կը չափեն մեդրով։*

*Եկո՛ւր, Յիսո՛ւս իմ, մայրիկդ ալ մէկտեղ.*
*Մենք պառկինք՝ ան ալ ըսէ թող օրօր։*
*Մենք օրն իրիկուն կը ժպտինք անմեղ,*
*Ան ալ կը սիրէ մեզի ամէն օր . . . .։*

**Ռ. ՈՐԲԵՐԵԱՆ**

---

## 29. ԱՐՁԱԳԱՆԳ

*Արամ չէր գիտեր տակաւին թէ արձագանգն ի՛նչ էր։ Օր մը, որ դաշտը ելած էր, սկսաւ գոչել.*

*— Հօ՜, հօ՜, հօ՜։*

*Անմիջապէս մօտիկ անտառէն նոյն ձայնը լսեց։*

*Տղան՝ զարմանալով սկսաւ դողալ և գոչել.*

*— Ո՞վ ես դուն։*

*Ձայնը պատասխանեց։*

*— Ո՞վ ես դուն։*

*Արամ բարկացաւ, եւ զայրանալով ըսաւ.*

*— Դուն անպիտա՜ն տղայ մ'ես։*

*— Անպիտա՜ն տղայ, կրկնեց ձայնը անտառին խորէն։*

*Ա՛լ աւելի զայրացած՝ Արամ նախատական խօսքերը կրկնապատկեց, զորս արձագանգը իրեն վերադարձուց ճշդիւ։*

*Բարկութեամբ լեցուած՝ բոլոր անտառը պտըտե-ցաւ, մացառներուն մէջ փնտռելով պզտիկ տղան, զոր*

---

**37. ՀՐԱՀԱՆԳ**

*Աշակերտը տայ հինգ անուն* (Ուղեցոյց, էջ 20):

**Կարասիի, արհեստի, արհեստաւորի, դասական առար-կայի, խաղալիկի, ուտելիքի, գրքի, զգեստի։**

*հոն պահուըտած կը կարծէր, որպէս զի վրէժը առնէ: Սակայն բնականաբար ոչ ոք գտաւ հոն:*

*Այս ապարդիւն խուզարկութենէն ետքը, Արամ տուն դարձաւ ու իր մօրը պատմեց թէ չար տղայ մը անտառին մէջ պահուըտած էր եւ զինքն անարգած: Մայրը պատասխանեց.*

*— Զաւա՛կս, դուն ինքզի՛նքդ կ'ամբաստանես, քանզի իսկ և իսկ քու խօսքերդ լսեցիր: Ինչպէս որ յաճախ քու պատկերդ ջուրին մէջ տեսած ես, նմանապէս լսեցիր քու բնիկ ձայնիդ հնչումը: Եթէ սիրուն խօսքեր ըսած ըլլայիր, սիրուն խօսքեր լսած պիտի ըլլայիր:*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է արձագանգը: — Ի՞նչ ըրաւ Արամ: — Ի՞նչ պատասխան տուաւ: Ետո՞յ: — Ուրիշ ի՞նչ ըրաւ: — Ի՞նչ ըսել է «ապարդիւն խուզարկութիւն»: — Գնաց ի՞նչ ըսաւ մօրը: — Մայրը ի՞նչ պատասխանեց: — Ի՞նչ օրինակ տուաւ: — Ի՞նչ կը հետեւի այս պատմութենէն:

---

## 38. ՀՐԱՀԱՆԳ

*Կէտերուն տեղ պէտք եղած բառը դրէ* (Ուղեցոյց էջ 20):

1. *Երբ ջուրը կրակի վրայ դնելով եփենք՝ ջուրը եռալով ... կ'ըլլայ եւ օդին մէջ կը ցնդի:* 2. *Երբ տեղ մը պէտք եղածէն չափ արմտիք չգտնուի, ... կը տիրէ:* 3. *Երբ քաղաքի մը մէջ հիւանդութիւն ծագի եւ շատեր վարակուին, ... կայ կ'ըսուի:* 4. *Ախտ մը կրնայ ... ըլլալ, այսինքն ուրիշներու փոխանցիլ:* 5. *Երբ երկու անձ մի եւ նոյն տեղը գըտնուիլ խոստանան, ... եղած կ'ըլլան:* 6. *Երբ մէկը ուրիշի մը պաշտօնին անցնի, անոր ... կարգուած կ'ըլլայ եւ այդ ուրիշն ալ կը կոչուի ...:* 7. *Յակոբ պարտք ունի Պետրոսին, Յակոբ ... է, իսկ Պետրոս ...:*

## 30. ԹՌՉՈՒՆՆԵՐՈՒ ԻՄԱՑԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

*Սեպտեմբերի վերջերը, երբ ծառերու տերեւները կը սկսին թափթփիլ, մեր պարտէզներուն, դաշտերուն ու անտառներուն մէջ անուշ անուշ երգող թռչուններուն շատերը կը պատրաստուին մեզ թողուլ։ Բոլոր ձմեռը կ'երթան հեռաւոր տաք երկիրներ անցընել։*

*Անշուշտ կը զարմանաք, տղաքս, թէ ի՛նչպէս այնքան հեռաւոր ճամբորդութիւններ կ'ընեն այն խեղճ թռչունները, մինչդեռ մենք՝ խելք ու բանականութիւն ունենալով հանդերձ՝ չենք կրնար, մինչեւ որ ճամբան չգիտնանք կամ առաջնորդներ չունենանք։*

*Իրաւո՛ւնք ունիք զարմանալու։ Սակայն գիտցէք որ Աստուա՛ծ է անոնց առաջնորդը. Աստուած՝ որ արեւը, լուսինն ու աստղերը կը ծագէ, որ ծաղիկ ու պտուղ կը բուսցնէ, Ինքը՝ Աստուած՝ այն թռչուններուն կը ցուցնէ երթալու երկիրը, բնակելու ծառն ու տանիքը եւ այն տեղերն ուր պիտի գտնեն իրենց կերը։ Աստուած, աշնան, կ'առաջնորդէ իրենց՝ տաք երկիրներ և գարնան զիրենք կ'առնէ մեր երկիրները կը դարձնէ, մեր անտառներուն ու պարտէզներուն կենդանութիւն տալու։*

---

### 39. ՀՐԱՀԱՆԳ

Կէտերուն տեղ պէտք եղած բառը դրէ՛ք (Ուղեցոյց, էջ 20-21)։

1. *Սուրը կը դրուի ... մէջ։* 2. *Կենդանիներու մարմինը ... ով պատած է։* 3. *Օձին շապիկը կը կոչուի ...։* 4. *Նամակ մը կը դրուի ...ի մէջ։* 5. *... աման մ'է որու մէջ ջուր կը լեցնեն ծաղիկները ոռոգելու համար։* 6. *... տեղ մ'է ուրկից կը հանեն այլ եւ այլ քարէական նիւթեր։* 7. *... կը կոչուին անոնք որ Քրիստոսի կը հաւատան։*

## 31. ԱՅԾԻՆ ԴԱՏԱՍՏԱՆԸ

*Հարուստ Արաբացի մը տեսաւ որ իրմէ քսակ մը ոսկի գողցուեր է։ Վստահ էր որ գողը տունէ՛ն է, բայց ամէնուն վրայ ալ կը կասկածէր, առանց գիտնալու թէ ո՛վ է։*

*Բոլոր ծառաները ժողվելով՝ ըսաւ անոնց. «Ամէնքդ ալ այծի դատաստանին պիտի ենթարկուիք աս իրիկուն։ Հրաշալի այծ մ'է, աւելցուց, երբ յանցաւոր մը ձեռքը անոր վրայ դնէ, իսկոյն ձեռքը կը սեւնայ»։*

*Իրիկունը, երբ մութը վրայ հասաւ, հրամայեց իր ծառաներուն որ վրանին մէջ մտնեն կարգով, եւ հոն գտնուող այծին կռնակին վրայ դնեն ձեռքերնին։ Բայց հանճարեղ Արաբացին՝ առաջուց, գաղտուկ մը, այծին կռնակն ածուխի փոշի քսած էր։*

*Վրանէն քանի մը քայլ անդին կեցած՝ հարուստը դուրս ելլողներուն ձեռքը կը զննէր։*

*Արդ, ամէնքն ալ սարսափահար էին՝ տեսնելով որ ձեռուընին սեւցեր է. միայն մէկը՝ հպարտութեամբ ցոյց կուտար իր ձեռքը որ ճերմակ մնացած էր։*

*Բայց տէ՛րն ըսաւ անոր. «Դո՛ւն ես գողը, վասն զի միայն դո՛ւն չես համարձակած ձեռքդ այծին կռնակին քսել»։*

---

### 40. ՀՐԱՀԱՆԳ

*Հարցումներուն պատասխանեցէք* (Ուղեցոյց, էջ 21)։

1. *Ի՞նչ է ջուրը։* 2. *Ուրկէ՞ց կուգայ մեր ջուրը։* 3. *Ի՞նչ բաներու կը գործածենք զայն։* 4. *Քանի՞ վիճակ ունի ջուրը։* 5. *Ե՞րբ կը սառի ջուրը։* 6. *Ի՞նչ է շոգին։* 7. *Ինչի՞ կրնայ ծառայել շոգին։* 8. *Ի՞նչ ըսել է հանքաջուր։* 9. *Ի՞նչ ըսել է ջերմուկ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ ըսել է դատաստան: — Ի՞նչ կը կոչուի այն որ դատ կը բանայ: — Իսկ ա՞յն՝ որուն դէմ դատ կը բացուի: — Ի՞նչ տեսաւ արաբացին: — Ի՞նչ ըրաւ եւ ի՞նչ ըսաւ իր ծառաներուն: — Երեկոյին ի՞նչ ըրաւ: — Ինք ո՞ւր կեցած էր եւ ի՞նչ կ'ընէր: — Այսպէս զննելուն պատճառն ի՞նչ էր: — Ծառաներէն մէկն ի՞նչ ըրաւ: — Անոր ի՞նչ ըսաւ տէրը:

---

## 32. ԿԱՊԻԿՆԵՐ

*Կապիկները ուրիշ ամէն կենդանիներէ աւելի կատարեալ կազմութիւն ունին, եւ իրենց մարմինին թէ՛ արտաքին ձեւով և թէ՛ ներքին կազմուածքով մարդուն շատ կը նմանին։ Անոնց երեսը մազ չունի, իսկ մարմինը մազերով ծածկուած է, ականջը մարդու ականջի պէս, աչքը դուրս ցցուած, վիզը կարճ։ Կապիկին չորս անդամները ձեռք են եւ մատները տափակ ու շիտակ եղունգներ ունին։ Կապիկներուն շատերը պոչ չունին, ոմանք ալ մարդու պէս շիտակ կեցած կը քալեն։ Գրեթէ ամէնքն ալ Այրեցեալ Գօտիին տակ կ'ապրին, ծառերուն վրայ կը բնակին ու պտուղներով կը կերակրուին։ Բնութեամբ ճարպիկ են եւ խորամանկ, եւ ուրիշներուն ըրած գործերուն ու շարժումներուն հետեւող նմանող են։*

*Կապիկները շատ Սեռերու ու Տեսակներու կը բաժնուին. գլխաւորներն են Շիմբանզէ, Օրանկութանկ,*

---

## 41. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ ըսել է* (Ուղեցոյց, էջ 21):

*Մթերանոց, վաճառատուն, տօնավաճառ, աճուրդ, նուազուրդ, միջնորդ, յանձնակատար, զեղչ, տասնորդ, տոկոս, սակագին կամ նիխ, ընկալագիր, մուրհակ։*

*Վաճառական մը սովորաբար քանի՞ տեսակ կ'ունենայ.*

*Հասարակ կապիկ, Մօրուսաւոր կապիկ, Առիւծակապիկ, Շնագլուխ կապիկ, Կոնչող կապիկ, եւայլն։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է կապիկը։ — Որո՞ւ կը նմանի։ — Ինչպէս է անոր մարմինը։ — Ո՞ւր կը գտնուի։ — Ի՞նչ ըսել է *Այրեցեալ Գօտի*։ — Ի՞նչ կ'ուտեն կապիկները։ — Ի՞նչ մասնաւոր յատկութիւններ ունին։ — Քանի՞ տեսակ կապիկ կայ։

## 33. ԽՆԱՅՈՂՈՒԹԻՒՆ

*Փոքրիկ քաղաքի մը աղքատներուն օգնելու համար քանի մը հոգի հանգանակութեան ելան։ Գեղեցիկ տան մը բակէն ներս մտած ատեն, լսեցին տան տիրոջ ձայնը որ կը յանդիմանէր սպասաւորներէն մէկը, թէ ինչո՛ւ աղբանոցը թափեր էր վառած լուցկիի ծայրերը, փոխանակ զանոնք վառարանը նետել ու վառելու։*

*Հանգանակիչներէն մէկը ըսաւ իր պաշտօնակիցներուն. «Բա՛րեկամներ, ագա՜հին մէկն է աս մարդը, եւ ասկէ բան յուսալ անխելքութիւն է։ — Հոգ չէ, փորձ մըն է կ'ընենք, նե՛րս մտնենք» ըսաւ միւս ընկերը։*

---

### 42. ՀՐԱՀԱՆԳ

*Սա խօսքերն ամբողջացուր* (Ուղեցոյց, էջ 21—22)։

1. ... *կ'երգէ (ո՞վ)*։ 2. ... *կը կարդայ (ո՞վ)*։ 3. ... *կար կը կարէ*։ 4. ... *տուն կը շինէ*։ 5. ... *մուկերը կը լրտեսէ*։ 6. ... *անուշ կը հոտի*։ 7. ... *բանալիները կը դարբնէ*։ 8. ... *գունդի պէս կլոր է*։ 9. ... *փայտ կը կտրէ*։ 10. ... *ուտելիք կը ծախէ*։ 11. ... *մուշտակ կը կարէ*։ 12. ... *հօտը կ'արածէ*։ 13. ... *կը մուրայ*։ 14. ... *հագուստ կը կարէ*։ 15. ... *կը թռչի*։ 16. ... *կը ծաղկին*։ 17. ... *պատարագ կ'ընէ*։ 18. ... *կ'ածիլէ*։ 19. ... *ձուկ կ'որսայ*։ 20. ... *կը հաչէ*։ 21. ... *կօշիկ կը կարէ*։

*Նոյն միջոցին, տան տէրը անոնց առջեւ ելաւ, ներս հրամցուց եւ ուզեց իմանալ անոնց այցելութեան նպատակը։ Երբ իմացաւ թէ կարօտեալներուն համար նպաստ կը հաւաքէին, իսկոյն իր խուցը առաջնորդեց զանոնք եւ կարեւոր գումար մը նուիրեց։ Մարդիկը՝ շատ գոհ եւ ուրախ ըլլալով այս անակնկալ նուէրէն՝ խոստովանեցան թէ լուցկիի ծայրերուն համար սպասաւորը յանդիմանող անձէ մը չէին յուսար այդքան գումար ստանալ։ Տանտէրը պատասխանեց. «Իրա՛ւ է, պարոններ, թէ խնայասէր եմ, բայց լուցկիի ծայրերուն պէս չնչին բաներն անգամ խնայելո՛վ է որ կրնամ խեղճերուն ողորմութիւն տալ մեծ մեծ գումարներ»։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է խնայողութիւնը: — Ի՞նչ պատահեցաւ հանգանակիչներուն, պատմեցէ՛ք: — Բացատրեցէ՛ք խնայողութեան օգուտները:

---

## 43. ՀՐԱՀԱՆԳ

*Հարցումներուն պատասխանեցէ՛ք* (Տե՛ս Նոր Դպրոց, Զ. Պրակ, էջ 17, եւայլն):

1. *Գիւղի մը պետը կը կոչուի ...։* 2. *Գիւղախմբի մը (նահիյէ) պետը կը կոչուի ...։* 3. *Վիճակի մը կամ գաւառակի մը (գազա) պետը կը կոչուի ...։* 4. *Գաւառի մը (սանճագ կամ միւթէսարրըֆլըգ) պետը կը կոչուի ...։* 5. *Նահանգի մը (վիլայէթ) պետը կը կոչուի ...։* 6. *Պետութեան մը տէրը կը կոչուի ...։*

Ծանօթ. — *Քանի մը տուներու խումբը կը կոչուի* գիւղ. — *Քանի մը գիւղ միասին առնելով՝ կը կոչուին* նահիէ *կամ* գիւղախումբ: — Վիճակը *կամ* գաւառակը *կը կազմուի նահիէներէ։* — Գաւառը *կը բաղկանայ գաւառակներէ։* — Նահանգը՝ *գաւառներէ։* — Պետութիւնը՝ *նահանգներէ կամ կուսակալութիւններէ։*

## 34. ՏՈՒՆԿ

*Բնութեան գործարանաւոր բերքն է տունկը, որ երկրին մէջ կը հաստատուի, սնունդ կ'առնէ, կ'աճի, կը բազմանայ եւ ուշ կամ կանուխ կը թոռմի, կ'անցնի։ Տունկերը միայն գործարաններ ու գործիքներ ունին սնանելու եւ բազմանալու, եւ ասով կը զանազանուին անասուններէն, որոնք իրենք իրենց շարժելու եւ զգալու կարողութիւն ալ ունին։*

*Տունկերու գործարաններն են. Արմատ, Բուն, Տերեւ, Ծաղիկ։ Ասոնք միանալով եւ կազմուելով՝ տունկը կը սնանի եւ կը բացուի, վերջը պտուղ ալ կը բերէ եւ անկէ ետք ուրիշ նոյն տեսակ տունկեր ալ կ'ելլեն։*

*Արմատը տունկին այն մասն է որ հողին մէջ կը տարածուի եւ կ'աճի։*

*Բունը կամ կոճղը արմատէն վեր ելած արտաքին մասն է։*

*Տերեւը բունին ու ճիւղերուն վրայ գտնուած մասն է։*

*Ծաղիկը տունկին այն մասն է որ պտուղներէն անմիջապէս առաջ կը կազմուի եւ պտուղ տալու հարկաւոր գործարաններն ունի։ Սովորաբար ծաղիկին վրայ չորս բան կը գտնուի. Բաժակ, Պսակ, Պտուղի գործարաններ, եւ մեղրի Անօթներ։*

---

### 44. ՀՐԱՀԱՆԳ

*Հարցումներուն պատասխանեցէք* (Ուղեցոյց, էջ 22):

1. *Ինչի՞ մէջ կը ծխեն խունկը։* 2. *Ի՞նչ է սկիհը, իսկ սրբատո՞ւփը։* 3. *Ի՞նչ ըսել է հաղորդութիւն։* 4. *Որո՞նք կը հաղորդուին։* 5. *Ի՞նչպէս, տարին քանի՞ անգամ։* 6. *Որո՞նք են ժամարարին զգեստները։* 7. *Ի՞նչ է Աւետարանը։* 8. *Եկեղեցական գիրքերը որո՞նք են։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է տունկը : — Ինչպէս կը զանազանուի կենդանիներէն : — Որո՞նք են գործարանները : — Ի՞նչ է արմատը : — Կո՞ճղը : — Ծաղի՞կը: — Որո՞նք են ծաղիկի մը մասերը :

## 35. ԿԱՂԱՆԴՆ ՈՐ ՉԻ ԳԱՐ

*«Կաղանդն երբոր գայ, մօրեղբայրդ Ալեք*
*«Քեզի պիտի տայ շաքար, խաղալիք,*
*«Հայրիկըդ՝ սուլիչ, մեծ հայրդ ալ թմբուկ» ։*
*Մայրն այսպէս կ'ըսէր Զարեհին փափուկ,*
*Որ իր առնելիք ընծային ի սէր*
*Կաղանդին գալուն անդուլ կը սպասէր ։*

*Բայց փոքրիկ տղաք համբերել չունին,*
*Կ'ուզեն որ շուտ մը ըլլայ ըսածնին ։*
*Եւ երէկ՝ Զարեհ հարցուց. «Է՜հ, մա՛յրիկ,*
*«Քանի որ չի գար Կաղանդն աղուորիկ*
*«Որ մեզ պիտի տայ այնքան բաներ թանկ՝*
*«Չըլլա՞ր որ քու հետ մենք իրեն երթանք . . .» ։*

### ԱՌԱԾ

*Շաքր ծախողը մատը կը լզէ ։*

### 45. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ բաներ կրնան ըլլալ* (Ուղեցոյց, էջ 22):

***Լեռնային, երկակենցաղ, տարափոխիկ, վայելուչ, տա-տախիա, կալուածական, հոյաչէն, անակնկալ, սրտաբուղխ, այրդահոս, վարանամիտ, խոտաշան, յոքնախուռն ։***

## 36. ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԻՒՐԱՍԻՐՈՒԹԻՒՆ

*Իմաստուն Ամիրապետին՝ Հարուն էլ Ռաշիտի կեանքը լեցուն է մեծ դրուագներով ու վեհանձն դէպքերով. Ահաւադիկ անոնցմէ հատ մը, ուր ի յայտ կուգայ նաեւ արաբական բարքերու ամէնէն բնորոշներէն մէկը։*

*Արաբիայի ներքնագաւառներուն մէջ անգամ մը սաստիկ սով կը տիրէր, աղքատ ժողովուրդը կը տառապէր անսուաղ. մեծամեծներն ալ ազատ չէին դժնդակ կացութեան տագնապներէն։ Հարուստ ցեղապետ մը այս դառնութեան օրերուն մէջ, իր բոլոր ունեցածը ձեռքէ հանելէ վերջն ալ կը պահէր շատ ազնուազգի զամբիկ մը, որուն տէր ըլլալ կ'ուզէր Հարուն էլ Ռաշիտ։*

*Ցեղապետին առաջարկուեցաւ* 200 *ոսկիի փոխարէն Ամիրապետին տալ զամբիկը, բայց ցեղապետը չէր կրնար՝ չէր ուզեր բաժնուիլ իր սիրական զամբիկէն։*

*Սովը կը տիրէր, սակայն, աւելի սաստիկ ու երկարատեւ։*

*Ամիրապետը կը խորհէր թէ՝ ցեղապետը ա՛լ չպիտի կրնար տոկալ ու պիտի յօժարէր վերջապէս վաճառել ազնուազգի զամբիկը։ Ուստի պատուիրակներ ղրկեց անոր, որպէս զի զամբիկը իրեն բերեն՝* 400 *ոսկի վճարելով տիրոջը, որ այսքան մեծ գումարի մը առջեւ տեղի պիտի տար անշուշտ։*

*Պատուիրակներն եկան այն գիւղը ուր կ'ապրէր ցեղապետը, եւ ուղղակի անոր բնակարանը իջեւանեցան։*

*Մեր ասպնջականը, ինչպէս գիտենք, յետին ծայր կարօտութեան մատնուած էր տիրող սովին պատճառով։*

*Եւ սակայն պէտք էր անթերի կատարել հիւրասիրա-*

---

### 46. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ ըսել է* (Ուղեցոյց, էջ 23):

1. *Կոր գիծ*, 2. *ուղիղ գիծ*, 3. *բեկեալ գիծ*, 4. *ուղղաձիգ գիծ*. 5. *զուգահեռական գիծ*, 6. *հորիզոնական գիծ*, 7. *շրջանակ*, 8. *աղեղ*, 9. *տրամագիծ*, 10. *անկիւն*, 11. *եռանկիւն։*

կան պարտականութիւնը։ Ուրիշ բան մը չունէր, բայց միայն զամբիկը։ Ուստի, մորթեց զայն ու իր հիւրերուն հրամցուց։

Իսկ անոնք՝ իրենց այցելութեան նպատակն յայտնելով՝ 400 ոսկի վճարեցին անոր եւ ըսին, թէ ճաշը չպիտի ուտեն, մինչեւ որ ցեղապետը չխոստանայ զամբիկն իրենց վաճառել։

«Բայց այդ բանը անկարելի՛ է, ըսաւ ցեղապետը։

— Եւ ինչո՞ւ, կը հարցնեն պատուիրակները։

— Ինչու որ զամբիկը մորթեցի . . . ձեզի հրամցնելու համար։

* * *

Երբ պատուիրակները այս լուրը բերին Հարուն էր Ռաշիտի, Ամիրապետը սրտին խորէն ցաւագին հառաչ մը արձակեց, բայց միեւնոյն ատեն, ըսաւ իր պատուիրակներուն.

— Եթէ 400 ոսկին ցեղապետէն ետ առնելով՝ ինծի բերէիք, ձեզ ամէնքդ ալ կը սպաննէի . . .։

**(Արաբական Զրոյցներ)**

---

## 37. ՏՂԱՅՈՒԹԻՒՆ

*Տղայութիւնը մարդուս կեանքին առջի հասակն է։ Նոր ծնած տղայ մը իր կեանքին մեծ մասը քունով կ'անցընէ, այնպէս որ անօթութենէ ու անհաճոյ դիպուածէ մը կ'արթննայ միայն։ Իր բովանդակ գործը մարմնաւոր կեանքին համար է միայն, եւ այն ալ հազիւ կրնայ իր պէտքերը ճանչնալ. իր ուզածը, որ միայն օդու կաթ է, անորոշ նշաններով կը յայտնէ։*

---

### 47. ՀՐԱՀԱՆԳ

**Սա խօսքերն ամբողջացուր** (Ուղեցոյց, էջ 23)։

1. Կը մայէ (ո՞վ)։ 2. Կը բառաչէ։ 3. Կը վռնչէ կամ կը խրխնջէ։ 4. Կը զռայ։ 5. Կը հաչէ։ 6. Կը մլաւէ կամ կը նուայ։ 7. Կը կրկռայ։ 8. Կը դայլայլէ։ 9. Կը ճռուողէ։ 10. Կ'ոռնայ։ 11. Կը մռնչէ։ 12. Կը սուլէ կամ կը փչայ։ 13. Կը բզզայ։ 14. Կը թնծկայ։ 15. Կը խօսի։

**Ծանօթ.** — Պատասխանը կենդանիի անուն մ'ըլլալու է։

*Բայց այս ապուշ վիճակն երկար չի տեւեր. անմիջապէս առջի շաբաթը Զգայարանքներն իրենց պաշտօնը կատարել կը սկսին։ Նախ՝ առաջին տեսողութիւնն ու զգացողութիւնը կ՚արթննան, ետքը լսելիքն ու ճաշակելիքը, եւ վերջապէս հոտոտելիքը։ Տղան իր մօր ծոցին մէջ, տաքուկ ու փափուկ, հանգիստ վայելելով իր հաճութիւնն արտաքուստ ալ կը ցուցնէ։ Երկրորդ ամսուն կը սկսի ամէն բանի վրայ աւելի ուշադրութիւն մը ցոյց տալ եւ ուզածը նշաններով յայտնել։ Իսկ երրորդ եւ չորրորդ ամսուն, հնչումի կամ ձայնի ալ միտ դնելու կը սկսի։ Այսպէս՝ կամաց կամաց զարգանալով՝ ըմբռնած պատկերներն հետզհետէ միտքին մէջ կը հաստատուին եւ զանոնք նորէն տեսած ատեն, յիշողութիւնը կը ծագի։ Յետոյ նշաններու եւ բառերու նշանակութիւնը կը սորվի եւ կը սկսի նախ շարժումներով՝ եւ ետքը բառերով իր կամքն ուրիշին հասկցնել։*

**ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ.** — Հասակ, անճանօթ, դիպուած, բովանդակ, մարմնաւոր, անօրոշ, ապուշ, զգայարանք, զգացողութիւն, հաճութիւն, արտաքուստ, ուշադրութիւն, զարգանալ, ըմբռնած, յիշողութիւն, կամք։

---

## 48. ՀՐԱՀԱՆԳ

*Ինչ կը կոչուի* (Տե՛ս աս Գիրքին 108 էջը, Հրահ. 103)։

1. *Բանակի մը* (օրդու) *հրամանատարը*։ 2. *Գունդի մը պետը*։ 3. *Վաշտի մը պետը*։ 4. *Դասակի մը կամ գումարտակի մը պետը*։ 5. *Բանակի զօրքերուն խումբը*։ 6. *Զօրախումբի կամ զօրաբաժնի մը հրամայող զինուորականը*։

Ծան. — *Բանակներու դասակարգութիւնն այս է. — Հարիւր զօրք միանալով կը կազմեն դասակ կամ գումարտակ* (պէօլիւկ)։ — *Հազար զօրք կամ տասը գումարտակ միանալով կը կազմեն վաշտ* (թապուր)։ — *Չորս վաշտ միանալով կը կազմեն գունդ* (ալայ)։ — *Տասներկու գունդ միանալով կը կազմեն բանակ մը* (օրդու)։

## 38. ԿԾԾԻ ՄԱՐԴՈՒՆ ԿՏԱԿԸ

*Յովհաննէս անուն կծծի Անգղիացին, որ Լոնտրա մեռաւ, սա կտակը ձգեց. «Իմ քեռորդիիս կուտամ եւ կը թողում իմ սեւ վերարկուս: Իմ քրոջս աղջիկկին կուտամ եւ կը թողում վրայիս բաճկոնը: Իմ քրոջս թոռներուն կը թողում հանդերձանոցիս վրայի հողէ թաղարներէն մէյմէկ հատ: Վերջապէս իմ քրոջս՝ իբրեւ վերջին նշան իմ սէրիս՝ որով միշտ կը սիրէի զինքը՝ կուտամ եւ կը թողում անկողինիս անարին մօտ գտնուող քարէ սեւ ստամանը:*

*Դիւրին է երեւակայել թէ ժառանգորդներն ի՞նչ յուսաբեկութեան մէջ ինկան, երբոր այս տարօրինակ կտակը կարդացուեցաւ: Սկսան նախատանօք խօսիլ մեռնողին վրայ, եւ քոյրը, սաստիկ բարկութեամբ, ա՛յնպէս կից մը զարկաւ ստամանին՝ իր ժառանգութեան՝ որ կտոր կտոր եղաւ, եւ ահա իր սրտնեղութիւնն ու յուսահատութիւնը ի՛նչ ուրախութեան փոխուեցան՝ երբ տեսաւ որ ոսկիները դուրս կը թափէին կոտրած ստամանէն:*

*Այս որ տեսան միւս ժառանգորդները, իրենք ալ սկսան ամէն մէկը իր ժառանգութեան վազել. մէկը հին սեւ վերարկուին, միւսը բաճկոնին եւ միւսը հողէ թաղարին, որոնք ոսկիով լեցուն էին:*

---

### 49. ՀՐԱՀԱՆԳ

Ի՞նչ ըսել է (Ուղեցոյց, էջ 23):

**Զինուոր, տասնապետ, հարիւրապետ, սպայ, ենթասպայ, հազարապետ, հրամանատար, սպարապետ, հետեւակ, հեծելազօր կամ այրուձի, դրօշակիր, հրետանի, թնդանօթաձիգ, սպայակոյտ:**

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ ըսել է կծծի: — Ի՞նչ է այս բառին ներհակը: — Ի՞նչ ըսել է կտակ: — Ո՞ւր մնաց Անգլիացին: — Ի՞նչ է Լոնտրա: — Ի՞նչ ըսել է մայրաքաղաք: — Քեռորդիին ի՞նչ կտակած էր: — Բանկոնը որո՞ւ թողած էր: — Քրոջը թոռներուն ի՞նչ կը թողուր: — Քանի՞ ստոմա՞նը որու: — Ի՞նչ ըրին ժառանգորդները: — Ի՞նչ երեւան ելաւ: — Միւս ժառանգորդներն ի՞նչ ըրին:

---

## 39. ԽՂՈՒՆՋՆ ՈՒ ԹՐԹՈՒՐԸ

*Թրթուր մը Խղունջի մը հանդիպեցաւ, եւ՝ տեսնելով որ այդ խեղճն ալ իրեն պէս սողալու դատապարտուած կ'ենդանի մ'է, ըսաւ անոր. «Բարի լո՛յս, կընքահա՛յր: — Կնքահա՞յր մի, պատասխանեց Խղունջը զայրագին. ըսէ՛ նայիմ, ի՞նչ տեսակ ընտանութիւն է այդ: Կնքահա՞յր մի. ես ուսկի՞ց կը ճանչնամ զքեզ, գնա՛ բանդ, ոչ միայն տգեղ ես դուն, այլ եւ այնչափ անմիտ՝ որ քու դիրքդ ու չափդ ալ չճանչնալով՝ ինծի հետ մտերմաբար կը վարուիս:»*

*Քանի մը օր ետքը, Թրթուրը փոխուեցաւ գեղեցիկ Թիթեռնիկի մը, որուն թեւերը կը փայլէին արեւուն դէմ: Խղունջը նշմարեց զայն, եւ իր եղջերաւոր գլուխը կոշտ կերպով մը վեր բարձրացնելով. «Բարե՛ւ աղուո-*

---

### 50. ՀՐԱՀԱՆԳ

*Առարկայ ցուցնող բառերը* (գոյականները) *որպիսութիւն ցուցնող բառի* (ածականի) *եւ գործողութիւն ցուցնող բառի* (բայի) *փոխեցէք* (Ուղեցոյց, էջ 23—24):

*Ծառ, հնչում, սոյլ, սկիզբ, պատառ, սառ, զրկում, վախ, փախուստ, կասկած, արգելք, յորդութիւն, գրգիռ, պարզութիւն, երկիւղ:*

ըսէ՛կ պարոնս, պտուղ. Կ՚աղաչեմ բարեհաճեցէ՛ք վայր-կեան մը կանգ առնել, որպէսզի քիչ մը խօսակցինք։»

— Աղուոր զգեստներ հագած ըլլալո՞ւս համար է որ, պատասխանեց Թիթեռնիկը, այսօր ալ զիս կը կանչես։ Չե՞ս ճանչնար զիս։ Ես այն Թրթուրն եմ զոր երեք օր առաջ կը վռնտէիր։ Դուն ալ անոնցմէ ես որոնք կ՚արհամարհեն փոքրերը եւ կը նուաստանան մեծերուն առջեւ։ Մնաս բարով։»

Թիթեռնիկը թռաւ թեթեւաօդը, իսկ Խղունջը եղջիւրները ներս քաշելով ծածկուեցաւ պատեանին մէջ։

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է թրթուրը։ — Իսկ խղո՞ւնջը։ — Ի՞նչ ըսաւ թրթուրը խղունջին։ — Ան ի՞նչ պատասխանեց։ — Քանի մը օր ետքը ի՞նչ պատահեցաւ, պատմեցէք։ — Բա-րոյականը։

---

# 40. ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Որչափ որ մեր երիտասարդութեան մէջ բարի գոր-ծեր ընենք, այնչափ ալ մեր ծերութեան ատեն քաղց-րութիւն ու մխիթարութիւն կը վայելենք։

---

## 51. ՀՐԱՀԱՆԳ

Կէտերուն տեղ պէտք եղած բառը դրէք (Ուղեցոյց, էջ 24)։

1. Թատրոնը շէնք մ'է ուր ... կը կատարուի 2. Թատ-րոնի մը զանազան բաժանումներն են օթեակ, սրահ, բեմ, եւայլն։ Սրահին եւ օթեակներուն մէջ կը նստին ...։ 3. Բեմին վրայ կու գան ... իրենց դերը կատարելու համար։ 4. ... կը կոչուի այն մարդը որ դերասաններուն կը յիշեցնէ իրենց խօսքերը։ 5. Միջնարարի ատեն բեմը կը գոցուի ... 6. Երաժիշտները կ՚ածեն իրենց ...։

*Մարդուս կեանքը նման է անգիր տետրակի մը, որուն ամէն մէկ էջը կը ներկայացընէ կեանքի մէկ օրը։ Երանի՜ անոր որ ամէն մէկ էջին վրայ բարի գործ մը արձանագրելու կարող կ՚ըլլայ։*

*Բարի գործ մը գովելը անոր մասնակից ըլլալ է։*

*Ամէնէն բազմազան եւ անկորնչելի ժառանգութիւնը, զոր մարդ կրնայ թողուլ իր զաւակներուն, իր բարի եւ առաքինի գործերուն ժառանգութիւնն է։*

*Երբեք յետաձգելու չես բարի գործ մը զոր այսօր իսկ կրնաս ընել։*

*Ամէնէն պատուական եւ արդիւնաւոր բարեգործութիւնները աւելի գաղտուկ գործուածներն են։*

*Բարեգործութեան յիշատակին պէս քաղցր բան չի կրնար ըլլալ։*

*Բայց մարդ կը կորսնցընէ իր բարեգործութեան արժէքն ու պատուը, երբ ինքը կը սկսի զանոնք գովել ու հռչակել։*

---

## 58. ՀՐԱՀԱՆԳ

Գիծերուն տեղ պէտք եղած բառը դրէ (Ուղեցոյց, էջ 24):

1. — *կը փայլի ցորեկ ատեն եւ* — *գիշերը։* 2. — *և* — *պարտէզին ամէնէն անուշահոտ ծաղիկներն են։* 3. *Բոյնին մէջ չորս մատաղ* — *կային։* 4. *Գարնան սկիզբը* — *կը վերադառնան մեր երկիրը։* 5. — *մայիս ամսուն մէջ կը բացուին։* 6. — *ամառը կը հասուննան։* 7. *Կերակուրներն եփելու համար* — *պէտք է։* 8. *Առանց աղի* — *անհամ կ՚ըլլայ։* 9. — *երկինքն ու երկիրը ստեղծեց վեց օրուան մէջ։* 10. *Ձմեռ ատեն* — *ցուրտ կ՚ըլլայ։* 11. — *ոչխարները կ՚արածէ։* 12. — *պատարագ կ՚ընէ։* 13. — *Մեկնեց Փարաւոնի երազը։* 14. — *գտաւ Ամերիկան։* 15. — *էր որ ըրաւ տպագրութեան գիւտը։*

ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Բարեգործութիւն, երիտասարդութիւն, մխիթարութիւն, անգիր, էջ, արձանագրել, մասնակից, բազմազան, անկորնչելի, արդիւնաւոր, յիշատակ, արժէք:

## 41. ՀԻՒԱՆԴԻՆ ՀԵՏ ՎԱՐՈՒԵԼՈՒ ԵՂԱՆԱԿ

*Հիւանդը երբեք պէտք չէ քունէն արթնցնել, եւ ոչ իսկ դեղ տալու համար։ Երբ հիւանդը առաջին կազդուրիչ քունէն արթնցած է, ա՛լ իսկոյն չի կրնար քնանալ։ Բնաւ հիւանդին հետ յանկարծ խօսելու և բաղձացածները ուշացնելով տանջելու չէ։ Դարձեալ, պէտք չէ բանի մը երկար ժամանակ սպասցնել. աղմուկը, խշրտոցն ու շշուկը որ հիւանդը կը գրգռեն կամ իր լսելիքը կը յոգնեցընեն, շատ վնասակար են. Թարմ ծաղիկի փունջէն աւելի հիւանդին ուրիշ բան այնչափ ուրախութիւն չի պատճառեր։ Ասոր պէտք է հիւանդի այցելուները մտադիր ըլլան։ Պէտք չէ հիւանդին վարանք եւ շփոթութիւն ցուցնել։ Հիւանդին վրայ պէտք է այն ազդեցութիւնն ու տպաւորութիւնն ընել թէ՝ գիտէ մարդ անոր ուզածը։ Առողջացող հիւանդը պէտք*

---

**53. ՀՐԱՀԱՆԳ**

Պատասխանեցէ՛ք բերանացի ու գրաւոր. (Ուղեցոյց, էջ 24-25):

1. *Բամպակը բո՞յս է թէ կենդանային բերք։* 2. *Բուրդը ուսկի՞ց կ'արտադրի, ծառէ՞ն։* 3. *Սունկը ո՞ւր կը բուսնի։* 4. *Խունկը ո՞ւր կը բուսնի։* 5. *Աղամանդը բո՞յս է, հապա ի՞նչ է։* 6. *Մետաքսը ինչէ՞ն կը գոյանայ։* 7. *Քանի՞ տեսակ ածուխ կը ճանչնաս։* 8. *Մարգարիտը ի՞նչ տեսակ ծառի վրայ կը բուսնի։* 9. *Ո՞րն է էն կարեւոր ու օգտակար մետաղը։* 10. *Ի՞նչ գոյն ունի ծծումբը։* 11. *Մնդիկը պի՞նդ մարմին է թէ հեղուկ։*

*է տեղափոխութիւններ ընէ։ Պէտք չէ այն ձեռագործները արգիլել, որոնք հիւանդին ուրախութիւն կը պատճառեն։ Բազմաթիւ պարագաներու մէջ, հիւանդին առողջութեան համար աւելի՝ դե՛ղը քան թէ հիւանդին հաճոյքն ու կամքը զանց ընելու է։ Հիւանդները լաւ խնամելու համար, կը պահանջուի բնածին ընտրութիւն ու ճարտարութիւն։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչպէս պէտք է վարուիլ հիւանդներու հետ: — Ի՞նչ բաներ վնասակար են հիւանդներուն: — Ի՞նչ կը կոչուի հիւանդն երբ աղէկնալու վրայ է:

---

## 42. ԳԵՂԱՑԻ ԱՂՔԱՏ ՏՂՈՒՆ

*Լեռ ու անտառ՝ այծիդ հետ՝*
*Կը թափառի՜ս օրն ի բուն.*
*Աղքատ, անտէր ու անճետ՝*
*Ներս մտնելու չունիս տուն։*

*Մազըդ գըզուզ ու դեղին,*
*Հասակըդ չոր՝ հասկին պէս,*
*Եւ լոյսի՛ն պէս կանթեղին*
*Կեանքդ ալ դեղի՛ն կ'անցընես։*

---

### 54. ՀՐԱՀԱՆԳ

*Հարցումներուն պատասխանեցէք* (Ուղեցոյց, էջ 25):

1. *Որո՞նք են հաւկիթի մը մասերը։* 2. *Որն է աւելի սննդարար։* 3. *Փոքրիկ տղաք ու հիւանդներ ի՞նչ ուտելու են որպէս զի զօրանան։* 4. *Որո՞նք են հանդերձի մը մասերը։* 5. *Ի՞նչ մասեր ունի ջութակը։*

ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Բարեգործութիւն, ե-րիտասարդութիւն, մխիթարութիւն, անգիր, կոչ, արձանա-գրել, մասնակից, բազմագանձ, անկորնչելի, արդիւնաւոր, յիշատակ, արժէք:

---

## 41. ՀԻՒԱՆԴԻՆ ՀԵՏ ՎԱՐՈՒԵԼՈՒ ԵՂԱՆԱԿ

*Հիւանդը երբեք պէտք չէ քունէն արթնցնել, եւ ոչ իսկ դեղ տալու համար։ Երբ հիւանդը առաջին կազ-դուրիչ քունէն արթնցած է, ա՛լ իսկոյն չի կրնար քնա-նալ։ Բնաւ հիւանդին հետ յանկարծ խօսելու եւ բաղձա-ցածները ուշացնելով տանջելու չէ։ Դարձեալ, պէտք չէ բանի մը երկար ժամանակ սպասցնել. աղմուկը, խշրտոցն ու չչուկը որ հիւանդը կը գրգռեն կամ իր լսելիքը կը յոգնեցնեն, շատ վնասակար են. Թարմ ծաղիկի փունջէն աւելի հիւանդին ուրիշ բան այնչափ ուրախութիւն չի պատճառեր։ Ասոր պէտք է հիւանդի այցելուները մտադիր ըլլան։ Պէտք չէ հիւանդին վա-րանք եւ շփոթութիւն ցուցնել։ Հիւանդին վրայ պէտք է այն ազդեցութիւնն ու տպաւորութիւնն ընել թէ՝ գի-տէ մարդ անոր ուզածը։ Առողջացող հիւանդը պէտք*

---

**53. ՀՐԱՀԱՆԳ**

*Պատասխանեցէ՛ք բերանացի ու գրաւոր.* (Ուղեցոյց, էջ 24-25):

1. *Բամպակը բո՞յս է թէ կենդանային բերք։* 2. *Բուրդը ուսկի՞ց կ'արտադրի, ծառէ՞ն։* 3. *Սունկը ո՞ւր կը բուսնի։* 4. *Խունկը ո՞ւր կը բուսնի։* 5. *Ադամանդը բո՞յս է, հապա ի՞նչ է։* 6. *Մետաքսը ինչէ՞ն կը գոյանայ։* 7. *Քանի՞ տեսակ ածուխ կը ճանչնաս։* 8. *Մարգարիտը ի՞նչ տեսակ ծառի վրայ կը բուս-նի։* 9. *Որն է էն կարեւոր ու օգտակար մետաղը։* 10. *Ի՞նչ գոյն ունի ծծումբը։* 11. *Սնդիկը պի՞նդ մարմին է թէ հեղուկ։*

*է տեղափոխութիւններ ընէ։ Պէտք չէ այն ձեռագործները արգիլել, որոնք հիւանդին ուրախութիւն կը պատճառեն։ Բազմաթիւ պարագաներու մէջ, հիւանդին առողջութեան համար աւելի՝ դե՛ղը քան թէ հիւանդին հաճոյքն ու կամքը զանց ընելու է։ Հիւանդները լաւ խնամելու համար, կը պահանջուի բնածին ընտրութիւն ու ճարտարութիւն։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչպէս պէտք է վարուիլ հիւանդներու հետ: — Ի՞նչ բաներ վնասակար են հիւանդներուն: — Ի՞նչ կը կոչուի հիւանդն երբ աղէկնալու վրայ է:

---

## 42. ԳԵՂԱՑԻ ԱՂՔԱՏ ՏՂՈՒՆ

*Լեռ ու անտառ՝ այծիդ հետ՝*
*Կը թափառի՛ս օրն ի բուն.*
*Աղքատ, անտէր ու անճետ՝*
*Ներս մտնելու չունիս տուն։*

*Մազըդ գըռուզ ու դեղին,*
*Հասակըդ չոր՝ հասկին պէս,*
*Եւ լոյսի՛ն պէս կանթեղին*
*Կեանքդ ալ դեղի՛ն կ'անցընես։*

---

### 54. ՀՐԱՀԱՆԳ

*Հարցումներուն պատասխանեցէք* (Ուղեցոյց, էջ 25):

1. *Որո՞նք են հաւկիթի մը մասերը։* 2. *Ո՞րն է աւելի սննդարար։* 3. *Փոքրիկ տղաք ու հիւանդներ ի՞նչ ուտելու են որպէս զի զօրանան։* 4. *Որո՞նք են հանդերձի մը մասերը։* 5. *Ի՞նչ մասեր ունի ջութակը։*

Կտոր մը չոր յարդին մէջ
Կը դողդղայ մինչեւ լոյս .
Ո՞վ գիտէ, ի՞նչ կ'երազես,
Մայրի՞կ, ժպի՞տ, արշալո՞յս . . . ։

Եւ այծուկէդ՝ ուլի պէս՝
Ծըծես կաթը փրփուրի .
Արտասուքով ալ սրբէ՛ս
Այտէդ հետքը համբոյրի
Զոր խեղճ մայրըդ դրաւ հոն . . .
. . . . . . . . . . . . . . . . . ։

Մի՛ հեծկլտար, խե՛ղճ տղայ,
Սրբէ՛ աչքերըդ խոնաւ .
Յիսուս մանո՛ւկն ալ քեզ պէս,
Մըսուրի մը մէջ ծընաւ . . . ։

## 43. ԱՐԱՐՉԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

*Ժամանակ եղած է, զաւակս, որ տեսած երկինքդ ու բնակած երկիրդ չկային, ստեղծուած չէին։ Աստուած ուզեց որ ըլլան, եւ Իր ամենակարող զօրութիւնը զանոնք ոչինչէն ստեղծեց։*

*Աշխարհիս եւ բոլոր մէջի բաներուն ստեղծումը վեց*

---

### 55. ՀՐԱՀԱՆԳ

Հարցումներուն պատասխանեցէ՛ք (Ուղեցոյց, էջ 25) :

1. Որո՞նք են երաժշտական գործիքները։ 2. Որո՞նք են երաժշտական եօթը ձայները կամ խազերը։ 3. Որո՞նք են գեղարուեստները։ 4. Ի՞նչ կ'ընէ անդրիագործը։ 5. Ի՞նչ ըսել է անդրի, կոթող, արձան։ 6. Ի՞նչ ըսել է կիսանդրի։

*օրուան մէջ եղաւ, այսինքն մեր ամէն տեսած բաները մէկէն չեղան, այլ կարգով՝ ետեւէ ետեւ, վեց օրուան մէջ։ Հետզհետէ Աստուած ստեղծեց արեւը, լուսինը, աստղերը, տունկերը, կենդանիները, ու ամէնէն վերջ՝ մարդը, որուն տուաւ հոգի բանական, այսինքն հոգի մը որ կարող է ճանչնալ ու սիրել։*

*Առաջին մարդուն՝ մեր նախահօր՝ անունն էր Ադամ, եւ նախամօր անունը՝ Եւա։*

*Ո՜հ, միթէ կրնա՞նք երկինք վերցնել աչքերնիս, տեսնել այն լուսազարդ չքեղ կամարն ու չբարեբանել զԱյն որ անճառելի զօրութեամբ, իմաստութեամբ եւ բարութեամբ ստեղծեց ամէն ինչ, ու զանոնք հրաշալի կարգով ու օրէնքով կը պահէ կը պահպանէ։ Անհուն անհամար արարածներու մէջ, ի՞նչ է՝ տկար, անզօր ու մահկանացու մարդը, հիւլէ մ'ենք. միջատի պէս՝ աւազի հատիկի մը վրայ կը ղեռանք կը սողանք։ Ի՞նչ ենք մենք այն բիւրաւոր աշխարհներուն առջեւ որ իրենց Ստեղծողին, իրենց Արարիչին փառքը կը պատմեն։*

---

## 56. ՀՐԱՀԱՆԳ

Գիծերուն տեղ պէտք եղած բառը դրէք (Ուղեցոյց, էջ 25)։

1. — *տերեւներն ու ծաղիկները կ'երերցնէ։* 2. — *իր կաթով կը սնուցանէ որդին։* 3. — *կը պատէ բոլոր աշխարհս։* 4. — *Գողիաթն սպաննեց։* 5. — *գարունը կ'աւետէ։* 6. — *խաղողէն կը շինուի։* 7. — *բանջարեղէն մ'է։* 8. — *գտաւ հայերէն տառերը։* 9. — *Պոլսոյ մէջ հիմնեց Ս. Փրկչեան ազգային Հիւանդանոցը։* 10. *Օսմանեան կայսրներէն — առաւ Կ. Պոլիսը ու — եղաւ առաջին Պատրիարք Հայոց։*

Ծան. — 1. Դասատուն այս հրահանգի պատմական դէպքերուն եւ դէմքերուն վրայ խօսի։

2. Բացատրէ թէ գիծերուն տեղ դրած բառերը ի՞նչ կը կոչուին։

**ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Արարչագործութիւն, ստեղծուած, ամենակարող, ոչինչէ, բանական, լուսազարդ, ցեղ, կամար, բարեբանել, անճառելի, անհուն, անհամար, արարած, մահկանացու, կը զեռայ, բիւրաւոր:**

---

# 44. ՏՈՒՆԿԵՐՈՒՆ ՕԳՈՒՏԸ

*Տունկերուն կամ բոյսերուն օգուտն ա՛յնչափ յայտնի է որչափ իրենց կարեւորութիւնն ու առօրեայ գործածութիւնը։ Կարելի է ըսել որ, առանց տունկերուն, ո՛չ մարդեր եւ ո՛չ անասուններ չէին կրնար ապրիլ։ Տունկերն են որ բնութիւնը կը զարդարեն եւ երկրին մերկութիւնը կը զգեցնեն։ Տունկե՛րն են որ անթիւ անհամար կենդանիներու սնունդ կուտան. իսկ մարդուն համար տունկերը կարեւոր են իբրեւ սնունդ՝ ինչպէս բանջարեղէնները, ընդեղէնները, պտուղներն ու անոնց հիւթերը։ Նաեւ մարդուն հագուստը, բնակարանն ու պաշտպանութիւնը տունկերէն է։ Ո՞ւրկից է բամպակը, ո՞ւրկից՝ կտաւը, քթանը, կանեփը եւ նոյն իսկ մետաքսը, ո՞ւսկից է մարդուն բնակարանը, կարասիները, վառելիքը, եւայլն։ Բայց տունկերն իբրեւ դեղ ալ անհրաժեշտ օգուտներ ունին մեր առողջութեան համար։*

---

### 57. ՀՐԱՀԱՆԳ

Պատասխանեցէ՛ք բերանացի ու գրաւոր (Ուղ., էջ 25-26):

1. *Ինչո՞ւ կը սալարկեն փողոցները։* 2. *Ինչո՞ւ ապակի կ'անցընեն պատուհաններուն։* 3. *Ինչո՞ւ եկեղեցիներուն մէջ առտու իրիկուն զանգակ կը հնչեցնեն։* 4. *Ինչո՞ւ երախան կը մկրտեն։* 5. *Ինչո՞ւ կը խուզեն ոչխարները։* 6. *Ինչո՞ւ դպրոց կուգաս։* 7. *Ինչո՞ւ կ'ոռոգեն ծաղիկները։* 8. *Ինչո՞ւ եկեղեցի կ'երթաս։*

ինչպէս՝ մոլոշը, մեկոնը, երիցուկը, եւայլն։ Տաք երկիրներու մէջ կը բուսնին անուշահոտ բոյսեր եւ համեմներ, ինչպէս կինամոն, պղպեղ, կոճապղպեղ, մեխակ, եւայլն։

Բայց կան նաեւ թունաւոր տունկեր, ինչպէս՝ մոլեխինդ, ակոնիտոն, եւայլն, որոնցմէ զգուշանալու է։

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ օգուտ ունին տունկերը։ — Ըսէ՛ք քանի մը տունկերու անուններ։ — Ո՞ւր կը բուսնին համեմները։ — Որո՞նք են տաք երկիրները։ — Իսկ ցո՞ւրտ երկիրները։ — Տո՛ւր հինգ ընդեղէնի անուն։

---

## 45. ԽՈՍՏՆԱՊԱՀՈՒԹԻՒՆ

Գաղղիոյ հռչակաւոր ու առաքինի զօրավարներէ մէկն է Թիւրէն որ 1675ին մեռած է։ Գիշեր մը Բարիզ դառնալու ժամանակ, կառքին վրայ գողեր կը յարձակին, կը կեցընեն, ունեցած դրամը կ'առնեն եւ ձեռքի մատանին ալ կ'ուզեն առնել։ Եւ որովհետեւ իրեն սիրելի յիշատակ մ'էր այդ մատանին, անոնց կը խոստանայ հարիւր ոսկի տալ, եթէ զայն իրեն թողուն։

Երկրորդ օրը գողերուն ամէնէն աներկիւղը կ'երթայ Թիւրէնին տունը, եւ բազմութեան մէջ իրեն մօտենալով՝ ականջէն վար կը յիշեցընէ անոր խոստումը։ Թիւրէն իսկոյն կը հանէ կուտայ հարիւր ոսկին եւ մէ-

---

### 58. ՀՐԱՀԱՆԳ

Պատասխանեցէ՛ք սա հարցումներուն (Ուղեցոյց, էջ 26)։

1. Ի՞նչ բաներ անպատճառ սեւ են։ 2. Ի՞նչ բաներ յղկուած ըլլալու են։ 3. Ի՞նչ համ ունին՝ աղոխը, սոխը, կոտիմը, պանիրը, օշինդրը, թէյը։ 4. Ի՞նչ ըսել է թթուաշ, դաղձ, անոյշ։ 5. Ի՞նչ բաներ կծու համ ու հոտ ունին։

*կուն բան չ՚ըսեր, մինչեւ որ գողը բաւական ժամանակ կ՚ունենայ աներեւոյթ ըլլալու։ Ան առեն կը [illegible] Նախորդ օրուան դէպքն ու կը յարէ. «[illegible] ու պատուաւոր մարդուն խոստումը անլուծելի է. ոչ երբեք պէտք է դրժէ իր խօսքը, եթէ նոյն իսկ գողերու տուած ըլլայ զայն»։*

ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Խոստապահութիւն, Գաղղիա, հռչակաւոր, առաքինի, յարձակիլ, աներկիւղ, քաջութիւն, յիշեցընել, խոստում, աներեւոյթ, յարել, արդարասէր, անլուծելի, դրժել։

---

## 46. ՓԻՂ

*Չորքոտանիներուն մէջ ամէնէն մեծը և ամէնէն խելացին է փիղը։ Անտառները կը բնակի եւ կը սնանի արմատներով, խոտով ու ցախերով։ Մինչեւ հարիւր և ա-*

---

## 59. ՀՐԱՀԱՆԳ

*Սա խօսքերն ամբողջացուր՝* գիծերուն տեղ *խօսքին յարմար բառեր դնելով* (Աւղեցոյց, էջ 26)։

1. —, —, —, — *դասական առարկայ են։*
2. —. —, —, — *խաղալիկ են։*
3. —, —, —, — *պտուղ են։*
4. —, —, —, — *ծառ են։*
5. —, —, —, — *լեռ են։*
6. —, —, —, — *թռչուն են։*
7. —. —, —, — *ձուկ են։*
8. —, —, —, — *հիւանդութիւններ են։*
9. —, —, —, — *մոլութիւններ են։*
10. —, —, —, — *առաքինութիւններ են։*
11. —, —, —, — *ազգեր են։*
12. —, —, —, — *կրօնքներ են։*

Ծան. — Գիծերուն տեղ դրած բառերդ ի՞նչ կը կոչուին։

*ւելի տարի կ'ապրի ։ Երկու տեսակ փիղ կայ, մէկը Ասիայի եւ միւսը Ափրիկէի. այս երկիրներու բնակիչները կ'որսան զայն, թէ՛ անոր միսը ուտելու եւ թէ՛ մանաւանդ անոր ժանիքը՝ այսինքն փղոսկրը առնելու համար ։*

*Փիղը կրնայ ընտելանալ, եւ այն ատեն շատ լաւ ծառայութիւն կրնայ ընել. ահագին բեռներ կը կրէ, հողը կը հերկէ, երկար ճամբորդութեան ատեն հեծնելու կը գործածուի, ինչպէս եւ վագրի որսորդութեան ։ Հին ժամանակները պատերազմի համար ալ կը գործածուէր ։ Ոխակալ է եւ վրէժխնդիր ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է փիղը ։ — Ի՞նչպէս է մարմինը։ — Ուրիշ վայրի կենդանիներ ալ ըսէք ։ — Ո՞ւր կը բնակի փիղը, ո՞ր երկիրները ։ — Փիղը ի՞նչ կուտայ մարդուն։ — Կրնա՞յ ընտելանալ ։ — Ի՞նչեր կրնայ ընել ։

---

## 47. ԾՆՈՂԱՍԻՐՈՒԹԻՒՆ

*Բոլոր սրտով պատուէ՛ ծերունի հայրդ և մի՛ մոռնար մօրդ գորովալից խնամքը. ե՞րբ եւ ի՞նչպէս պիտի կրնաս փոխարինել անոնց երախտիքը ։*

*Հօր օրհնութիւնը կը հաստատէ որդիին տունը, եւ մօր անէծքը հիմնայատակ կը կործանէ զայն ։*

---

### 60. ՀՐԱՀԱՆԳ

**Պատասխանէ գրաւոր ու բերանացի** (Ուղեցոյց, էջ 27) ։

1. *Որո՞նք են մարմնամարզական գործիքները ։* 2. *Ի՞նչ օգուտ ունի մարմնամարզը ։* 3. *Ի՞նչ ըսել է դնդեր, մկան, գանկ, ջիղ, երակ, ծուծ, կմախք ։* 4. *Որո՞նք են կմախքի մը գլխաւոր ոսկորները ։* 5. *Կը ճանչնա՞ք ոսկոր չունեցող կենդանիներ ։* 6. *Ի՞նչ ըսել է թռչնասուն ։* 7. *Ի՞նչ կը կոչուի այն կենդանին որ կրնայ ապրիլ թէ՛ ծովու մէջ եւ թէ՛ ցամաքի վրայ ։*

*Ծնողքի՛դ ի՛նչ որ ըրեր դո՛ւն, զա՛յն միայն կրնաս յուսալ քու զաւակներէդ՝ ծերութեանդ ժամանակ. ուստի, գոնէ ի սէր անձի՛դ սիրէ ծնողքդ։*

*Պատմութիւնը շատ գեղեցիկ օրինակներ կը պարունակէ որդիական սէրը պանծացնելու համար. ահաւասիկ անոնցմէ մէկը։*

*Պարսից Կիւրոս թագաւորը՝ Լիւդիայի Սարդիկէ մայրաքաղաքին տիրած ատենը՝ յաղթական զօրքեր հոն ամէն կողմ ինկած կը կողոպտէին։ Ոմանք Կրեսոս թագաւորին պալատը կը դիմեն, որպէս զի բռնեն մեռցընեն։ Կը գտնեն զինքը և զինուորներէն մէկը՝ սուրը վեր առած՝ պատրաստ էր գլխուն զարնելու, երբ Կրեսոսի որդին, Ատիս, որ ի ծնէ համր էր, կը տեսնէ զայն եւ սրտին անհնարին ցաւէն, ոյժ մը կուտայ լեզուին որ իսկոյն կը բացուի ու կը գոչէ. «Թուրդ վա՛ր առ, Կրեսոս հա՛յրս կը սպաննես»։ Այս յանկարծական աղաղակը՝ որդիական բուռն սէրէն դրդուած՝ կ'ազատէ Կրեսոսը։*

ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Ծնողասիրութիւն, բռնի ուժով, գորովալից խնամք, փոխարինել, երախտիք, օրհնութիւն, անէծք, հիմնայատակ, կործանել, պանծացնել, Լիւդիա, մայրաքաղաք, տիրել, յաղթական, դի, կողոպտել, պալատ, համր, անհնարին, յանկարծական, բուռն, դրդուած:

---

## 61. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ յատկութիւն ունենալու է* (Ուղեցոյց, էջ 27):

*Բնակարան մը, ուտելիք մը, մեր խմած ջուրը, մեր անկողինը, հագուստը, զմելին մը, ծառայ մը, աշակերտ մը, կօշիկ մը, ճամբայ մը, եւայլն։*

*Ըսէ՛ք նաեւ թէ նոյն առարկաներն ու անձերը ի՛նչ թերութիւններ ունենալու չեն:*

## 49. ՁԱՆԳԱԿԸ

Ամէն առտու մըթընշաղին,
Բարձրէն կախուած՝ գեղգեղաձայն՝
Թռչնակներու հետ ծիծաղին,
Կ'արթնցընէ բնութիւնն համայն ։

Եւ ցան ցան ցան հատիկ հատիկ՝
Անվերջ ժըպի՛տ մ'է կարծես այն,
Որ տղաքները մեր պըստիկ
Կը հրաւիրէ աշխատութեան ։

Իրիկունն ալ ըստուերներուն
Մէջէն անհուն, երկար, տըխուր՝
Կը տարածուի, կ'երթայ հեռո՛ւն՝
Աղօթքի մը պէս սիրաբոյր ։

Ծիր մըշակներն՝ յոգնած, ցանցիր՝
Կը հաւաքէ շուրջն օճախին,
Ուր կեանքը կայ սուրբ, անձանձիր
Հողէ մարդուն՝ կապուած հողին ։

Մերթ հարսնիքի, սիրոյ ատեն,
Երգ մը կ'ըլլայ ան մոլորուն,
Ճեշտեր որոնք մարդը պատեն
Երջանկութեամբ սիրով անհո՜ւն . . . ։

---

### 68. ՀՐԱՀԱՆԳ

Պատասխանները գրեցէք, ետքը բերնուց ալ ըսէք (Ուղեց.էջ 28) ։

1. Ջեռուցման համար ի՞նչ վառելի նիւթեր կը գործածուին ։ 2. Լուսաւորման համար ի՞նչ կը գործածուի ։ 3. Քանի՞ տեսակ իւղ կը ճանչնաք ։ 4. Ասոնցմէ որո՞նք կ'ուտուին ։ 5. Ասոնցմէ որո՞նք բնական են եւ որո՞նք արուեստական (մարդու ձեռքով պատրաստուած) ։

*Բայց մերթ անհեղ հընչէ ցան ցան*
*Մոլորաձայն վիշտի մը պէս,*
*Խորունկ զանգակն է այն մահուան՝*
*Դողդողագին ու վշտակէզ,*

*Որ առջեւէն լուռ դագաղին*
*Կը մռընչէ, կարծես, անհեղ . . ,*
*Դիակին հարցը . . . անդունդին . . .*
*«Ըսէ՛, ի՞նչ կայ անկէ անդին։»*

---

## 50. ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔ (*)

### (Ջուրերու բաժանումներ)

1. **Ովկիանոս** *կամ* **ծով** *կը կոչուի ընդարձակ տարածութեամբ աղի ջուրը որ կը ծածկէ երկրագունտին մակերեւոյթը։*

2. **Ծոց** *կ'ըսուի ջուրին այն մասը որ դէպի ցամաք ներս մտած է։* **Խորշ** *կը կոչուին փոքրիկ ծոցերը։*

3. **Նեղուց** *կը կոչուի ծովուն այն նեղկեկ անցքը որ երկու ծովեր կը միացնէ։ Լայն նեղուցը* **ջրանցք** *կ'ըսուի։*

---

### 63. ՀՐԱՀԱՆԳ

*Հարցումներուն պատասխանեցէք՝ նախ գրելով, ետքն ալ դասարանին մէջ բերնուց ըսելով* (Ուղեցոյց, էջ 28):

1. *Որո՞նք են առողջապահական հիմնական պայմանները։* 2. *Ի՞նչ բաներէ զգուշանալու են փոքրիկ տղաքը՝ հիւանդութենէ ազատ մնալու համար։* 3. *Ցուրտէն գոյացած հիւանդութիւնները որո՞նք են։* 4. *Ստամոքսը ի՞նչ բաներէ կը վնասուի։* 5. *Ի՞նչ բաներ արիւնին շրջաբերութիւնը կ'արգիլեն, որու հիւանդութիւն կը գոյացընեն։*

---

(*) Գրատախտակի կամ քարտէսի վրայ օրինակներով բացատրեցէք այս սահմանները։

4. Լիճ կը կոչուի ցամաքին մէջ գտնուող ջուրի տարածութիւն մը որ ծովերու հետ հաղորդակցութիւն չունի։

5. Մօր (ճախիճ, ճահիճ) կը կոչուին տղմուտ ու տապականեալ ջուրերը։ Անոնց մօտ բնակիլ վտանգաւոր է մարդուս առողջութեան։

6. Յորձանք կը կոչուի այն խորունկ տեղը ուր ջուրը արագութեամբ կը վազէ եւ շատ անգամ կոր կոր կը դառնայ։

7. Ակն (աղբիւր) կը կոչուի ջուրի մը՝ գետնէն բղխած տեղը։

8. Հեղեղ կը կոչուի ջուրը որ առատ ու արագ կը հոսի։

9. Գետ կ'ըսուին առուներէ ու աղբիւրներէ կազմուած ջուրերը, որոնք միանալով կը թափին լճի կամ ծովի մէջ։

10. Վտակ (գետակ) ըսել է փոքր գետ։

11. Ջրվէժ (սահանք) կը կոչուի վազող ջուրի հոսանք մը որ ահագին բարձրութենէ վար կը գահավիժի։

---

## 64. ՀՐԱՀԱՆԳ

Գիծերուն տեղ պէտք եղած բառերը գրէք (Ուղեցոյց, էջ 28)։

1. Ստացուած — է։ 2. Երկինքը — է։ 3. Խոտը — է։ 4. Նարինջը — է։ 5. Գնդակները — են։ 6. Ծծումբը — է։ 7. Սաթը — է։ 8. Աստղերը — են։ 9. Լեղակը — է։ 10. Ապակին — է։ 11. Աշակերտները — են։ 12. Ծառերը — էին։ 13. Սկաւառակն ու անիւը — են։ 14. Օդը — եղաւ։ 15. Տղա՛ս, — մի՛ ըլլար։ 16. Արեգակը — է։ 17. Տղաքը — չեն։ 18. Երկու օր — կեցանք։ 19. Աղուէսն ու կզաքիսը — են։ 20. Տղաք թող — ըլլան իրենց մեծերուն։ 21. Բարեկամները — ըլլալու են։ 22. Յովսէփ կարգուեցաւ — Եգիպտոսի։ 23. Յիսուս եղաւ — աշխարհի։ 24. Անոր անունը — դրէ՛ք։

Ծան. — Գիծերուն տեղ դրուած բառերը կը կոչուին Ստորոգելի։

# 51. ՏՕՆ ՈՒ ՀԱՆԴԷՍ

*Ամէն ազգեր մեծ կարեւորութիւն կ՚ընծայեն քաղաքական հանդէսներու։ Մենք ալ՝ սուրբի, նահատակի յիշատակները տօնելու համար՝ եկեղեցական հանդէսներ կը կատարենք։*

*Բայց կան նաեւ ընտանեկան տօներ որ հրահանգիչ ու հրապուրիչ են, մանաւանդ իրենց բարոյական ներգործութեամբ։ Իրաւի՛, ի՜նչ սիրուն ու սիրայօդ գումարումներու առիթ կ՚ըլլան այլ եւ այլ տէրունական տօներ՝ տարուան շրջանին մէջ։ Ի՜նչ խնդութիւն ու եռանդ կը գրգռէ, տղոց մէջ, Կաղանդը որ սրտագին ուխտեր, մաղթանք ու պարգեւներ կը բերէ իր հետ, բանալով երախտապարտ սիրտերու գանձերը։ Ի՜նչ սիրաշահ զգացումներ կը հրահրեն Ծնունդն ու Զատիկը, երբ տղոց ծնողասէր ոգին կը յորդորէ զիրենք նաեւ սիրել ու պաշտել իրենց հայրերուն Աստուածը եւ ջերմագին կատարել կրօնային պարտականութիւնները։ Իսկ երբ ծնունդի կամ անունի տարեդարձներ, ծնողքի ու զաւակներու տօները կը հասնին, բերկրութիւնը կը կրկնապատկեն, տունը հանդիսավայր մը կը դառնայ, կարծես թէ կը վերածնին տնեցիները ու կ՚ոգեւորին՝ իրենց շուրջը տեսնելով համակրութեան ու սիրոյ նշաններ, շնորհաւորական այցեր։*

---

## 65. ՀՐԱՀԱՆԳ

Պատասխանները գրեցէք, ետքը բերնուց ալ ըսէք (Ուղեցոյց, էջ 29) :

1. *Ի՞նչ է հոգեկան ախտը. (օրինակներ տուէք)։* 2. *Երբ ու ինչպէս կարելի է հոգեկան ախտերու առաջքն առնել։* 3. *Առաքինի ըլլալ ի՞նչ օգուտ ունի հոգեւորապէս ու մարմնաւորապէս։* 4. *Մարմինն ի՞նչ հիւանդութիւններէ կրնայ տառապիլ։*

**ՀԱՐՑՈՒՄՆԵՐ.** — Այլ եւ այլ ազգեր ի՞նչ կ'ընեն: — Մենք ի՞նչ տեսակ հանդէսներ կը կատարենք: — Ի՞նչ բան է ընտանեկան հանդէս: — Ի՞նչ կը պատահի այլեւայլ տեսակ հանդէսներու մէջ՝ որոշեցէք: — Ի՞նչ օգուտներ կ'ընծայեն այդ հանդէսները:

---

## 52. ՋՈՒԹԱԿԸ

*Պարոն մը կար որ ջութակ կ'ածէր:*

*Այս մարդը ունէր որդի մը, Կորիւն, որ չա՛տ ուրախ, չա՛տ երջանիկ կ'ըլլար, երբ հայրը իր գիտցած եղանակները կը նուագէր, ինչպէս՝ Առաւօտ լուսոյ, Ծիծեռնակ, Թմբուկին երգը, եւայլն: Այն ատեն, Կորիւն կ'երգէր ու հայրը ջութակով անոր ձայնին կ'ընկերանար:*

*Շատ աղուոր բան էր եւ շատ ալ դիւրին կ'երեւար: Հայրիկը ջութակին փոքր մասը կուրծքին կը կրթնցնէր, կոթը ձախ ձեռքին մէջ կ'առնէր, յետոյ աջ ձեռքով կը բռնէր կտնտոցը կամ աղեղը՝ ու վեր վար կը պտըտցնէր լարերուն վրայ. Ջութակը կ'երգէր բոլոր ուզած եղանակները: Այս բանս ա՛յնքան պարզ ու դիւրին կը թուէր որ Կորիւն ուզեց ինք ալ ջութակ ածել:*

---

### 66. ՀՐԱՀԱՆԳ.

*Բերանացի ու գրաւոր պատասխանեցէք եւ ըսէ՛ք թէ ի՛նչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 29):

1. *Գործիք մը որով կրակ կը հրահրեն:* 2. *Գործիք մը որով ամառ ատեն կը հովահրենք մեր դէմքը:* 3. *Երկաթէ զգեստը զոր կը կրէին նախնի մարտիկներ:* 4. *Կլոր գործիք մը որով կը պատսպարէին իրենց դէմքը:* 5. *Գործիք մը որով քար կը նետէին:* 6. *Գործիք մը որով նետ կ'արձակէին.* 7. *Գարգմանակաւոր գլխարկը զոր կը կրէին զօրապետները.*

*պէս ձայնաւոր գիր չըլլալուն՝ Հայերը հետզհետէ մոռցուած հին գիրերը կամ պատկերագիրները կարդալու դժուարութիւն կը կրէին, ուստի Պարսիկներու, Յոյներու, եւ Ասորիներու գիրերը կը գործածէին։*

*Այն ատենի Հայ տղաք մեծ ծախքերով ու հեռաւոր ճամբորդութիւններով նեղութիւններ կը կրէին օտար ազգերու դպրոցները երթալու համար։*

*Եկեղեցիին մէջ ամէն բան ասորերէն ու յունարէն լեզուով կը կարդային, ու ժողովուրդը անոնցմէ բան չէր հասկընար։ Այս պատճառով Հայոց քրիստոնէական հաւատքն իսկ կը տկարանար։*

*Աստուած Հայոց այս գրական թշուառութեան վրայ գթալով՝ օգնութեան հասաւ։*

## ՀԱՅԵՐԷՆ ՆՈՐ ՏԱՌԵՐՈՒ ԳԻՒՏԸ

*Սուրբ Մեսրոպ՝ տեսնելով հին պատկերագիրները կարդալու դժուարութիւնը եւ ասկէ ծագած վնասները՝ եռանդով լեցուեցաւ Հայերէն դիւրընթեռնլի գիրեր հնարելու։*

*Ուստի Սուրբ Սահակին դիմեց, որ այն ատեն մեր ազգին Կաթողիկոսն էր, ու ժողով մ'ընել տուաւ որ այս բանիս մէկ հնարը գտնէ։*

---

### 68. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 30)։

1. *Քար մը որ կրակ կամ կայծ կը հանէ երբ երկաթով զարնենք։* 2. *Գործիք մը որուն վրայ թել կը փաթթէ ոստայնանկը։* 3. *Ջախրակին այն ծայրը որուն վրայ կը դիզուի ոստայնանկին մանած թելը։* 4. *Փոքր գործիք մը որով կերպաս կը գործէ ոստայնանկը։* 5. *Երկու գործիք որոնք անհրաժեշտ են լպուտին։*

*Այս ժողովին ներկայ էր նաեւ պատկառելի անձ մը, Վռամշապուհ, որ իմացուց անոնց թէ ինքն ալ իր դիւանագրութիւնները հայերէն գրել տալու համար Միջագետք իջած ատենը, Հաբէլ անուն քահանայէ մը լսեր էր թէ Դանիէլ ասորի եպիսկոպոսին քով հայերէն նշանագիրներ կը գտնուին։*

*Հաբէլ քահանան Միջագետք ղրկուեցաւ, ու Դանիէլ եպիսկոպոսէն հայերէն գիրերը տորվելով եկաւ։ Բայց պատկերաձեւ այն գիրերը ձայնաւորներէ զուրկ ըլլալուն՝ հեգելու բաւական չէին։*

*Շատ տեղեր պտըտեցաւ, շատ իմաստուններու խորհուրդ հարցուց, ու վերջապէս Աստուծոյ օգնութեամբ (*), յունարէն գիրերուն վրայ չափեց, ձեւեց մեր հիմակուան գործածած հայ տառերը որոնք շատ եղանակաւորումներ կրած են։*

**ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Որո՞նք էին Հայոց նախնական գիրերը: — Հայերը ո՞ր դպրոցներ կ'երթային: — Ո՞վ գտաւ Հայերէն տառերը: — Ի՞նչպէս գտաւ. պատմեցէ՛ք:**

---

### 69. ՀՐԱՀԱՆԳ

*Գիծերուն տեղ պէտք եղած բառերը դրէք* (Ուղեցոյց, էջ 30)։

1. *Հողագործը — կը հերկէ։* 2. *Ատաղձագործը — կը տաշէ։* 3. *Մսավաճառը — կը ծախէ։* 4. *Փայտահատը — կը ջարդէ։* 5. *Սուրհանդակը — կը տանի։* 6. *Երկրագործը — կը ցանէ։* 7. *Դատաւորը — կը դատէ։* 8. *Հիւանդը — կը խնդրէ։* 9. *Տղաք պարտին մեծարել իրենց — եւ —։* 10. *Խլուրդը — կը փորէ։* 11. *Թռչունը ծառին վրայ — կը շինէ։* 12. *Աղուէսը — կը խեղդէ։* 13. *Ժամացոյցը — նշանակէ։* 14. *Ձկնորսն իր — ծովը կը ձգէ։* 15. *Մեղուները — կը շինեն։* 16. *Արեւը — կը լուսաւորէ ու կը տաքցնէ։* 17. *Հովիւն իր — կ'արածէ։*

(*) Պատմել նաեւ հրաշքի աւանդութիւնը, Խորենացիին համեմատ։

## 54. ՆԵՐՔԻՆ ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐ

*Զարմանալի է մարդկային մարմինին կազմակերպութիւնը, ամէնէն ճարտար եղանակով յօրինուած մեքենաներէն աւելի գեղեցիկ են մանաւանդ ներքին մասերը որոնք հիանալի ներդաշնակութեամբ մը գործելով ամէն մէկն իր պաշտօնը կատարելով՝ շարունակ կը նորոգեն կենսական ուժը։ Ասոնց գլխաւորներն են.*

1. **Սիրտ** *որ երակներու միջոցաւ արիւնը մարմինին մէջ կը պտըտցընէ ու անդադար շարժումի մէջ կը պահէ մարմինը, մինչեւ որ մահը գայ եւ այդ շարժումը կասեցնէ։*

2. **Թոքեր** *որոնք շնչառութեան գլխաւոր գործարաններն են. հոն մեր շնչած օդը՝ արիւնը մաքրելու համար երկու երեք րոպէ կենալէ յետոյ՝ կ'ապականի, արտաշնչութեամբ դուրս կ'ելլէ եւ անոր տեղ նոր ու մաքուր օդ կը մտնէ։*

3. **Ստամոքս** *որուն պաշտօնն է մարսել կերակուրները զորս կ'ուտենք՝ պահելու եւ վերանորոգելու համար կենդանութիւնը։*

4. **Լեարդ** *որ կ'արտադրէ մաղձը։*

5. **Փայծաղ** *որուն պաշտօնը դեռ յայտնի չէ։*

---

### ԴԹ. ՀՐԱՀԱՆԳ

**Պատասխանները գրեցէք եւ բերնով ալ ըսէք՝** (Ուղեցոյց, էջ 30)։

1. **Ի՞նչ բերքեր կ'ելլեն ծովէն։** 2. **Ո՞րոնք են սննդատու տունկերը։** 3. **Թելուտ տունկերը։** 4. **Գունատու տունկերը։** 5. **Իւղային տունկերը։** 6. **Բուժային տունկերը։** 7. **Խնկահոտ տունկերը։** 8. **Թունաւոր տունկերը։**

*Ասոնցմէ զատ, մեր մարմինն ունի* ոսկորներ, երակներ, ջիղեր, մկաններ, *եւ ասոնք ամէնը պատած է բարակ մաշկ մը որ ունի բիւրաւոր ծակտիք։ Այս ծակտիքներու միջոցաւ ալ տեղի կ'ունենայ արտաշնչութիւն։*

**ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ.** — **Կազմակերպութիւն, մեքենայ, նիւանալի, ներդաշնակութիւն, անձնիւր, կենսական, երակ, կասեցնել, ապականել, արտաշնչութիւն, արտադրել, մաղձ, մկան, մաշկ :**

## 55. ԱՆԽԱՏՈՒԹԵԱՆ ՊՏՈՒՂԸ

*Ասկէ գրեթէ երկու հարիւր տարի առաջ, Ռուս ազգը դեռ բարբարոսութեան մէջ կը գտնուէր։*

*Մեծն Պետրոս, Ռուսիոյ թագաւորը, Եւրոպայի արուեստներն իր երկրին մէջ մտցնելու և իր ժողովուրդը քաղաքակրթելու համար, ամէն աշխատութիւն յանձն առաւ։ Իր գահն ու արքունիքը թողուց, Հոլանտա գնաց, եւ երկու տարի օգտակար արուեստներ սորվելու պարապեցաւ։*

---

**ՏԱ. ՀՐԱՀԱՆԳ**

*Ի՞նչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 30)։

1. *Մարդոց թեւին այն մասը որ ուսին ներքեւ կը գտնուի*։ 2. *Իսկ այն մասը որ դաստակին ու ծղիքին մէջտեղ կը գտնուի*։ 3։ *Այն տեղն ուր երկու անդամ իրարու կապուած են*։ 4. *Վիզին ետեւի կողմը. առջեւի կողմը*։ 5. *Այն ներքին գործարանը որուն միջոցաւ շնչառութիւն կը կատարուի*։ 6. *Այն գործարանը ուր մարսողութիւն տեղի կ'ունենայ*։ 7. *Այն խողովակը որուն մէջ արիւնը շրջան կ'ընէ*։ 8. *Ուղեղին կըռնակին դուրս ցցուած մասը*։ 9. *Ոչխարին ետեւէն կախուած այն մասը որմէ իւղ կը հանեն*։

*Այս արուեստներուն մէջ ամէնէն երեւելին է նաւ շինելու արուեստը։ Թագաւորը՝ գործաւորի զգեստ հագած՝ սղոց, մուրճ ու կացին կը գործածէր ու նաւ շինողներուն հետ հաւասար կ'աշխատէր։*

*Գործաւորները իրենց մէջ թագաւոր մը տեսնելով՝ ի սկզբան կը շուարէին, բայց քիչ քիչ սորվելով՝ սկսան անոր հետ ընտելանալ։*

*Մեծն Պետրոս իր ձեռքով վաթսուն թնդանօթով նաւ մը շինեց։*

*Երկաթ ձուլելու արուեստն ալ սորված ըլլալով՝ իր երկիրը դառնալէն քանի մ'օր առաջ, երկաթէ ձողեր ձուլեց եւ իր նշանը անոր վրայ դրոշմեց։*

*Այս երկաթեայ ձողերը իրենց բուն արժէքով ձուլարանին տիրոջը ծախեց, եւ անոնց ստակով մուճակներ գնեց, զորս հագնելով կ'ըսէր. «Ահա այս մուճակներն իմ ճակտիս քրտինքով շահեցայ»։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ռուս ազգը ի՞նչ վիճակի մէջ էր անկէ առաջ։ — Ի՞նչ ըրաւ Մեծն Պետրոս։ — Ի՞նչ կ'ընէին գործաւորները։ — Ի՞նչ շինեց Մեծն Պետրոս։ — Ո՞ւր ծախեց զանոնք։ — Ի՞նչ կ'ըսէր։

---

### 72. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 30)։

1. *Կակուղ նիւթ մը որով բիծ, աղտ, մելան, եւայլն կը մաքրեն թուղթին վրայէն։* 2. *Գործիք մը որով շրջանակ կը գծեն։* 3. *Գործիք մը որով պատերը կը բռնեն կամ կը ծեփեն։* 4. *Գործիք մը որով խոտ կը հնձեն։* 5. *Գործիք մը որուն վրայ ասեղնագործութիւն կ'ընեն աղջիկները։* 6. *Տեղ մը՝ ուր կրակ կը վառեն երկաթը տաքցնելու համար։*

## 56. ՁԿՆԻԿԸ

*Վըտակի մը մէջ՝ ձկնիկ մը ուրախ՝*
*Վեր վար կը լողար անհոգ ու անվախ,*
*Երբեմն անիկա գլուխը կամացուկ*
*Ջուրէն դուրս կը հանէր ու կ'որսար մժղուկ։*

*Երբոր կը տեսնէր ձկնորս կամ տղաք,*
*Ճարպիկ շարժումով կ'իջնէր ջուրին տակ.*
*Եւ հպարտութեամբ կ'ըսէր ինքնիրեն*
*«Ես չեմ բռնուիր այդ ձկնորսներէն»։*

*Անգամ մը մօտի գեղէն մէկ տղայ*
*Եկաւ նստեցաւ վըտակին վրայ*
*Եւ տուփին մէջէն առաւ որդ մը մեծ*
*Զայն կարթին անցուց ու ջուրը նետեց։*

---

### 78. ՀՐԱՀԱՆԳ

*Գիծերուն տեղ պէտք եղած բառը դրէ՛ք* (Ուղեցոյց, էջ 31)

1. *Աստուած դրախտէն վռնտեց* —։ 2. *Մովսէս Եգիպտոսէն հանեց* —։ 3. *Նոյ տնկեց* —։ 4. *Աստուած ջրհեղեղով պատժեց* —։ 5. *Ցորեկին որդիները կ'ատէին* —։ 6. *Անձրեւը կը զովացնէ* —։ 7. *Ակռան կը մանրէ* —։ 8. *Երաժշտութիւնը կը հմայէ* —։ 9. *Կատուն կը լրտեսէ* —։ 10. *Դարբինը կը շինէ* —։ 11. *Հայրը կը սիրէ* —։ 12. *Կրակը կը կարմրցնէ* —։ 13. *Աս տղան շատ կը սիրէ* —։ 14. *Հայրը կանչեց* —։ 15. *Որսորդն սպաննեց* —։ 16. *Աստուած անիծեց* —։ 17. *Օձը խաբեց* —։ 18. *Կառավարը կը լծէ* —։ 19. *Ձին կը ճանչնայ* —։ 20. *Շունը կը պահպանէ* —։ 21. *Կը սիրեմ* —։ 22. *Հովիւը կ'արածէ* —։ 23. *Քրիստափոր Քոլոմպոս գտաւ* —։ 24. *Յուդա համբուրելով մատնեց* —։ 25. *Նոյ շինեց* —։ 26. *Յովսէփ մեկնեց Փարաւոնի* —։ 27. *Միհրան պատուեց — և ազատեց* —։ 28. *Ս. Մեսրոպ գտաւ* —։ 29. *Աստուած կ'օրհնէ* —։

Մեծ ձուկ մը ըսաւ ձկնիկին. «Ե՛ղբայր,
Քեզ մահ կը սպասէ, որդէն մի՛ երթար.»
Ձկնիկն ալ ըսաւ. «Ատ գիտեմ արդէն,
Ես չեմ բռնուիր անօրէն կարթէն։

Կ'ուզեմ լոկ քննել թէ կարթին ծայրի
Որդը մեռա՞ծ է եթէ ո՞չ կ'ապրի։»
Քննեց, հաւնեցաւ, կուռթ . . . կլլեց զանի՝
Ձուկն որսացուած էր — յիմա՛ր կենդանի։

---

Մըտի՛կ ըրէ մեծի խրատ
Որ չի հասնի փորձանք վրադ։

---

## 57. ԲԱՐՈՅԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐ

Եթէ ամէն օր մէկ քանի վայրկեան զոհէք ընթերցանութեան, առանց ձեր գործերէն ու զբօսանքէն ետ կենալու, տարուան վերջը ձեր յառաջդիմութեան վրայ պիտի հիանաք։

---

### 74. ՀՐԱՀԱՆԳ

Հետեւեալ բառերը 4 սիւնակի մէջ գրեցէք, զանազանելով կուտաւոր, թինաւոր, հատաւոր ու փեճեկաւոր պտուղները. (Ուղեցոյց, էջ 31)։

Դեղձ, խնձոր, խաղող, նուշ, ծիրան, տանձ, հաղարջ, ընկոյզ, սալոր, զղեար, ելակ, շագանակ, կեռաս, կաղին։

*Ընթերցումը կը վանէ ձանձրոյթը, կը սփոփէ վիշտերը, կը փարատէ նեղութիւնը։*

*Ախտերուն ամէնէն ատելին եւ թերեւս ամէնէն վտանգաւորը հպարտութիւնն է։*

*Կ՚ուզէ՞ք որ ձեր աղէկութեան վրայ խօսին, դուք մի՛ խօսիք անոր վրայ։*

*Իր վիճակէն գոհ ըլլալու է եւ կարելի եղածին չափ անկէ օգուտ քաղելու է։ Չի կայ վիճակ մը այնչափ գէշ, ուր խելացի մարդը մխիթարութիւն չգտնէ։*

*Իր վիճակէն գոհ ըլլալ՝ հարուստ ըլլալ է։*

*Հաճոյքը, հարստութիւնը, արծաթի ու ոսկիի կոյտերը չեն բժշկեր ո՛չ մարմինին եւ ո՛չ հոգիին ցաւերը*

*Բարկութիւնը յիմարութեան մերձենալն է։*

*Երբ մէկն ինծի նախատինք մը կ՚ընէ, կը ջանամ այնչափ բարձրացնել հոգիս՝ որ նոյն թշնամանքը մինչեւ ինծի չի հասնիր։*

ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Զոհել, զբօսանք, հիանալ, վանել, ձանձրոյթ, սփոփել, փարատել, ախտ, ատելի, հպարտութիւն, մխիթարութիւն, կոյտ, յիմարութիւն, մերձենալ, նախատինք:

---

## 75. ՀՐԱՀԱՆԳ

*Գրով ու բերնով ըսէ՛ թէ ինչ կ՚ընէիր* (Ուղեցոյց, էջ 31)։

1. *Եթէ աղքատ մը ձեր տունին դուռը զարնէր։* 2. *Եթէ փոքր տղայ մը փողոցէն անցած ատեն ոտքը սահելով իյնար։* 3. *Եթէ ճամբան քեզմէ տարեց անձի մը հանդիպէիր։* 4. *Եթէ փողոցը բան մը գտնէիր։* 5. *Եթէ մէկուն ոտքին վրայ կոխած ըլլայիր։*

## 58. ԲԱՐԵՒԵԼՈՒ ՁԵՒԵՐ

*Եւրոպացիները իրար բարեւելու համար գլխարկնին կը հանեն, գլուխնին և իրաննին քիչ մը կը ծռեն, իրարու աջ ձեռքը կը բռնեն ու կը թօթվեն։*

*Չինացիները, բարեւ տալու ատեն, կերպ կերպ շարժումներ կ'ընեն ու կը կոտրտուին. երկու ձեռքերնին կուրծքերնուն կը տանին ու գլուխնին կը ծռեն։ Երկու բարեկամներ, երբ երկար ատենէ ի վեր իրար չեն տեսած, իրարու հանդիպած ատեն, ծնկան վրայ կուգան, գլուխնին մինչեւ գետինը կը ծռեն ու այսպէս երկու երեք անգամ կը կրկնեն։*

*Ճարոնցիները, բարեւելու համար, իրենց մուճակներէն մէկը կը հանեն։*

*Փիլիպպեան կղզիներուն բնակիչները, իրենց բարեկամը տեսած ատեն, իրենց ձեռքն երեսնին կը տանին եւ մէկ ոտքերնին վեր կը վերցնեն։ Եթէ մէկը պատուել ուզեն, անոր ձեռքը կամ ոտքը կը բռնեն եւ իրենց երեսին կը քսեն։*

---

### ԾԹ. ՀՐԱՀԱՆԳ

*Ինչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 32)։

1. *Այն մարդը որ ապագային մէջ պատահելիք բան մը կը գուշակէ*։ 2. *Գործիք մը որով հեռաւոր առարկաները կը տեսնենք*։ 3. *Գործիք մը որով կը տեսնենք շատ մանր (պարզ աչքով անտեսանելի) առարկաները*։ 4. *Գործիք մը որ ջերմութեան աստիճանը կը ցուցնէ*։ 5. *Շէնք մը՝ ուր կրակ կը վառեն, գիշեր ատեն, նաւերուն ճամբան ցոյց տալու եւ խարակներէ զգուշացնելու համար*։ 6. *Գործիք մը որ շոգենաւերուն հետեւելիք կողմը ցոյց կուտայ*։ 7. *Գործիք մը որ չանթին ընթացքը կը կասեցնէ*։

*Հնդկաստանցի հեթանոսներ իրարու մօրուք բռնելով զիրար կը բարեւեն։*

*Ասիայի հարաւային շատ մը կղզիներուն մէջ եւ հիւսիսային բեւեռին մօտ բնակող ազգեր քիթ քիթի քսելով կը բարեւեն զիրար։*

*Այանիս կոչուած ազգը բարեւ տուած մարդուն ականջը կը փչէ։*

*Ափրիկէի Սօքօթօրա կղզին բնակիչները իրարու ուս համբուրելով կը բարեւեն։*

*Հօուն կղզիներուն բնակիչները փորի վրայ կը փռուին. ա՛ս է իրենց բարեւելու եղանակը։*

*Իսկ Օսմանցիները աջ ձեռքերնին իրենց ճակատը բարձրացնելով կ'ողջունեն։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչպէս կը բարեւեն զիրար Եւրոպայի մէջ: — Չինացիներ՞ը: — Ճաբոնցիներ՞ը: — Փիլիպպեան կղզիներու բնակիչներ՞ը: — Հնդիկներ՞ը, եւայլն:

---

## 59. ՖԻՕՐԷՆՑԱՅԻ ԱՌԻՒԾԸ

*Իտալիայի Ֆիօրէնցա քաղաքին բնակիչները սովորութիւն ունէին գեղջկական հանդէս կատարելու՝ տարին անգամ մը։*

*Շրջակայ գաւառերէն գեղացիներ կը հաւաքուին գար-*

---

**ՏՏ. ՀՐԱՀԱՆԳ**

*Ի՞նչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 32):

1. *Աշխարհիս շուրջը պատող օդը։* 2. *Քար մը որ երկինքէն կ'իջնայ։* 3. *Երեւոյթ մը որ օդին մէջ տեղի կ'ունենայ։* 4. *Աստղ մը որ կը խուսի։* 5. *Մոլորակի մը բոլորտիքը շրջող երկնային մարմինը։* 6. *Գունաւոր կամարը որ անձրեւի ատեն կ'երեւայ։* 7. *Ի՞նչ ըսել է* առանցք, ծղխնի:

նան դալուկը ողջունելու, եւ ձմեռնային փակուած կեանքէն ելքը, դաշտային զուարճութիւն կատարելու։ Մինչ ամէն մարդ խրախճանքի ու ուրախութեան մէջ էր, յանկարծ —սոսկալի՜ բան— ահեղ ձայն մը կը լսուի անտառներէն եւ անմիջապէս, Առիւծ մը, արիւնազանգ աչուըներով, երեւան կ'ելլէ։ Ամէնքը խոյս կուտան։ Այս ահուդողի ու խառնաշփոթութեան մէջ, մայր մը՝ խելայեղ՝ կը վազէ, իր մանկիկը շալկած . . . ։ Բայց ահա՝ մանուկը կը սպրդի կ'իյնայ գետին։ Մայրը զայն վեր առնելու ժամանակ չունեցած՝ ահաբեկ ճիչ մը կ'արձակէ՝ տեսնելով որ Առիւծն արդէն մօտեցած էր խեղճ մանուկին։

Թշուառ կինը կը դողայ, սարսափահար, եւ արձանացած կը մնայ ակնապիշ ու բազկատարած։

Բայց այս անզգայութեան, անհնարին տագնապի ու սոսկումի գերագոյն վայրկեանին՝ մայրական սէրը վսեմ ճիգ մը կ'ընէ։ Հէգ կինը ծնրադիր կը գոչէ աղեխարշ ձայնով. «Տո՛ւր, տո՛ւր զաւակս»։ Եւ ահա այնքան կատաղի, այնքան ահեղ Առիւծը՝ այս աղերսագին ձայնէն ի գութ շարժելով՝ կը դիտէ մայրը, կը կենայ, կը դիտէ դարձեալ եւ՝ կարծես հասկնալով թէ մա՛յր մըն է որ կ'աղերսէ՝ հանդարտ ու քաղցր ակնարկ մը կը նետէ անոր վրայ, եւ սիրական մանկիկը մօրը ծունկերուն վրայ կը դնէ։ Վերջին անգամ մըն ալ խան-

---

## 78. ՀՐԱՀԱՆԳ

Հարցումներուն պատասխանեցէք (Ուղեցոյց, էջ 32)։

1. Որ պտուղները կուտաւոր կը կոչուին (օրինակներ տուէք), 2. որո՞նք թիճաւոր (օրինա՛կ), 3. որո՞նք հատաւոր (օրինա՛կ), 4. որո՞նք փեճեկաւոր (օրինա՛կ)։ 5. Ի՞նչ ըսել է վայրի պտուղ (օրինա՛կ)։

*դաղատ նայուածք մը ուղղելով մանկիկին, որ խաղաղիկ կը ժպտէր, ետ կը դառնայ եւ կամաց կամաց կը քաշուի կ'երթայ անտառին խորը։*

*Մայրական անձնուիրութիւնը անսահման է։*

ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Գեղջկական, շրջակայ, դաշտային խրախճանք, արիւնազանգ, խելայեղ, սպրդիլ, անաբեկ, սարսափահար, արձանացած, ակնապիշ, բազկատարած, անզգայութիւն, անհնարին, տագնապ, գերագոյն, վսեմ, աղեխարշ, աղերսագին, աղերսել, խանդաղատ, ժպտիլ, անձնուիրութիւն:

---

## 60. ԽՆԱՅԱՍԻՐՈՒԹԻՒՆ

*Ժամանակը, ստակը եւ ամէն գոյք չափով գործածելն է բուն խնայասիրութիւնը կամ տնտեսութիւնը։ Ընդհանրապէս մանկական յատկութիւն մը չէ խնայասիրութիւնը որ հեռատեսութիւն ու զոհողութիւն կը պահանջէ։ Տնտեսութեան դէմ կը վարուին փոքրիկ տղաք երբ անխնայ կը գործածեն, կը կտրեն, կը կոտրեն, կը թափեն ու կ'աւրեն շատ պիտանի իրեր, վասն*

---

**79. ՀՐԱՀԱՆԳ**

Քերականութեան մէջ ի՛նչ կը կոչուի (Ուղեցոյց էջ 32):

1. *Այն բառը որ կիրք կը յայտնէ։* 2. *Այն՝ որ երկու համատեսակ բառ կամ խօսք իրարու կը կապէ։* 3. *Այն՝ որ գործողութիւն եւ վիճակ (ընել կամ ըլլալ) կը ցուցնէ։* 4. *Այն՝ որ Բային որպիսութիւնը կամ պարագաները կը ցուցնէ։* 5. *Այն՝ որ անձ, կենդանի եւ իր կը ցուցնէ։* 6. *Այն՝ որ գոյականին որպիսութիւնը կը ցուցնէ։* 7. *Այն ածականը՝ որ կարգ կամ դաս կը ցուցնէ։*

զի չգիտեն անոնց բուն արժէքը, վասն զի չեն կրնար մտածել թէ ո՛րքան ճիգերու ու աշխատութեան արդիւնք են անոնք։ Տղաք սպառող են միայն։ Իրենց ուտեստը, հագուստն ու ամէն պիտոյքը կը հոգացուին ծնողքներուն կողմէ, եւ ասոնք՝ ուրիշ փափաք, ախոփանք ու վարձք չունին, բայց միայն իրենց զաւկըներուն հանգիստը, քաջառողջութիւնը, մտաւոր ու բարոյական զարգացումը։

Սակայն կուգայ ժամանակ՝ երբ տղաք ալ մեծնալով կը խելամտին ու կը սկսին զգալ եւ ապա խորհիլ թէ ծանր աշխատութեամբ ու տքնութեամբ կը ստացուին ամէն սպառելի բաներ. ուստի կը սկսին ո՛չ միայն շնորհապարտ ոգիով ու որդիական ջերմ սիրով գնահատել իրենց ծնողքին հոգասիրութիւնն, այլ եւ աստիճան մը թեթեւցնել անոնց աշխատութեան բեռը։ Արդ, այս բեռը կրնայ թեթեւնալ, նախ՝ զաւակներու

---

## 80. ՀՐԱՀԱՆԳ

*Հարցումներուն պատասխանելով՝ գտէ՛ք թէ նոյն դէպքերը* ***ԵՐԲ*** *կը պատահին* (Ուղեցոյց, էջ 33)։

1. *Ե՞րբ կը ծագի արեւը։* 2. *Ե՞րբ արեւու խաւարում կը պատահի։* 3. *Ե՞րբ լուսնի խաւարում կ'ըլլայ։* 4. *Ե՞րբ լուսինը մահիկի ձեւով կ'երեւայ։* 5. *Ե՞րբ փոթորիկ կը պատահի։* 6. *Ե՞րբ ձիւն կը տեղայ։* 7. *Ե՞րբ որոտումի ձայն կը լսէք։* 8. *Ե՞րբ ծիծառը կուգայ մեր երկիրը։* 9. *Տղայ մը ե՞րբ ուսման պարապելու եւ կրթուելու է։* 10. *Ե՞րբ կը հաղորդուիք։* 11. *Ե՞րբ զանգակ կը հնչէ եւ ինչո՞ւ։* 12. *Ե՞րբ գտնուեցան Հայերէն գիրերը եւ ի՞նչպէս (պատմեցէք)։* 13. *Ե՞րբ կը փճանան հունձքերը։* 14. *Երկրագործն ե՞րբ վարուցան կ'ընէ։* 15. *Ե՞րբ կը սկսի երկարիլ գիշերը։* 16. *Ե՞րբ կը սկսի աշնան եղանակը։*

*մտային ու բարոյական զարգացումով, ապա՝ խնայասիրութեամբ, որովհետեւ խնայասէրը պարտի ըլլալ պարզասէր, այսինքն իր չափէն ու աստիճանէն վեր բաներու չտենչալ ու ծախք չընել. հեռատես՝ այսինքն միայն այսօրուանը չմտածել, այլ եւ վաղուան պէտքերուն հոգը տանիլ. չափասէր՝ այսինքն հրապուրիչ, բայց սնոտի բաներու վայելքն անգոսնել ու ներկայ վաղանցիկ հաճոյքը ապագայ երջանկութեան զոհել։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է խնայասիրութիւնը: — Ո՞րոնք խնայասէր չեն ըլլար: — Ի՞նչ կ'ընեն: — Ի՞նչ է ծնողքներուն փափաքն ու վարձքը: — Տղաք մեծնալով հետզհետէ ի՞նչ կը զգան ու կը խորհին: — Ծնողքի մը բեռը ի՞նչպէս կրնայ թեթեւնալ: — Ի՞նչ պէտք է ըլլայ խնայասէրը: — Ի՞նչ կ'ընէ պարզասէրը, հեռատեսը, չափասէրը:

## 61. ԲԱՐՈՅԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐ

*Հաւատքը կը մխիթարէ մարդը դժբաղդութեան մէջ ու երկնային անուշութիւն մը կը խառնէ կեանքի դառնութիւններուն հետ։*

*Աղօթքը հոգիին շնչառութիւնն է, ո՛վ որ չ՚աղօթեր՝ չ՚ապրիր։*

---

### ՑԱ. ՀՐԱՀԱՆԳ

*Սա խօսքերն ամբողջացուր* (Ուղեցոյց էջ 33):

1. ... *կը հնձեն (ինչո՞վ)*։ 2. ... *կը քանդեն (ինչո՞վ)*։ 3. ... *կը կտրեն (ինչո՞վ)*։ 4. ... *կը գրեն*։ 5։ ... *երկաթը կը ծեծեն*։ 6. ... *կը կարեն*։ 7. ... *կը տողեն*։ 8. ... *կը տաշեն*։ 9. ... *հաց կը շինեն*։ 10. ... *գինի կը շինեն*։ 11. ... *ճրագը կը վառեն*։ 12. ... *գլուխ կը սանտրեն*։ 13. ... *պանիր կը շինեն*։ 14. ... *կը փորեն*։ *(Ըսէ՛ք՝ ինչո՞վ)*։

*Ապրէ՛ ա՛յն կերպով որ եթէ յանկարծ մահը վրայ հասնի, միշտ զքեզ պատրաստ գտնէ։*

*Ո՛վ որ իր պարտքերը լաւ կը կատարէ, ամէն օր մահուան պատրաստ կը գտնուի եւ անոր գալը աներկիւղ կրնայ տեսնել։*

*Մաքուր խիղճը կակուղ բարձ մըն է, որուն վրայ բարի մարդը միայն կրնայ հանգչիլ։*

*Մաքո՛ւր եղիր գործերուդ ու խօսքերուդ մէջ, մաքո՛ւր եղիր նաեւ մտածումներուդ մէջ, այնպէս որ եթէ մէկը յանկարծ հարցնէ թէ ի՛նչ կը խորհիս, կարենաս միշտ՝ արագ ու անկեղծօրէն պատասխանել։*

*Պատուաւոր անձերու ընկերութիւնը գանձ մ՚է։*

*Լաւ է առանձին ըլլալ քան չարերու հետ։*

*Ըսէ՛ ինծի թէ ո՛ւր կը յաճախես, այն ատեն կ՚ըսեմ թէ ո՛վ ես դուն։*

ՈՒՍԱՆԵԼԻ ՈՒ ՄԵԿՆԵԼԻ ԲԱՌԵՐ. — Հաւատք, դժբաղդութիւն, դառնութիւն. խիղճ, արագ, գանձ, յաճախել: — Ինչ ըսել է բարոյական սկզբունք:

---

### ՁԲ. ՀՐԱՀԱՆԳ

*Ինչ կը կոչուի* (Ուղեցոյց էջ 34):

1. *Առուներէն կազմուած ջուրերու ընթացք մը որ կը թափի ծովը։* 2. *Այն տեղն ուր երկու գետեր իրարու կը խառնուին։* 3. *Այն տեղն ուր գետը կը թափի ծովուն մէջ։* 4. *Ցամաք մը որուն երեք կողմը ջուրով պատած է։* 5. *Ջուրին այն մասը որ ցամաքին մէջ երկնցած է։* 6. *Ցամաքին այն մասը որ ծովուն մէջ երկնցած է։* 7. *Փոքրիկ լեռ մը։* 8. *Լեռին բարձրագոյն ծայրը։* 9. *Լեռին վարի մասը։* 10. *Շատ մը կղզիներ որ իրարու մօտ են։*

## 62. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

*Անցած ժամանակներու նշանաւոր դէպքերուն եւ անձերուն վրայ խօսող գիտութիւնը Պատմութիւն կը կոչուի։ Պատմութիւնը կարեւոր գիտութիւն մըն է. հայելի մ'է ան՝ որ կը ցուցնէ ազգերու անցեալը, եւ ուրկէ խրատ կ'առնեն մարդիկ իրենց ներկայ եւ ապագայ ընթացքը ուղղելու համար։*

*Պատմութենէն կը սորվինք թէ աշխարհս ե՛րբ եւ ի՛նչպէս ստեղծուեցաւ, անկէ ի վեր ինչե՛ր պատահեցան, մարդիկ ի՛նչ ըրին և ի՛նչպէս ապրեցան, ազգերն ի՛նչպէս կազմակերպուեցան եւ ի՛նչ նշանաւոր մարդիկ եկան անցան մինչեւ մեր օրերը։*

*Աշխարհի վրայ հին ժամանակներէ ի վեր շատ մը ազգեր ապրեցան որոնցմէ ոմանք այսօր չկան, բայց ամէնքն ալ ունին իրենց պատմութիւնը։ Այդ ազգերն են Եբրայեցիները, Եգիպտացիները, Պարսիկները, Հայերը, Յոյները, Արաբացիները, Օսմանցիները, Ֆրանսացիները, Իտալացիները, Չինաստանցիները, Հնդկաստանցիները, եւայլն։*

*Պատմութիւնը կը սկսի մարդոց քաղաքակրթուելէն, այն է՝ մեզմէ 60 դար առաջ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. Ի՞նչ է պատմութիւնը եւ ի՞նչ կը սորվեցնէ: — Ո՞ր ազգեր ապրած են հին դարերու մէջ: — Ո՞ր ժամանակէն կը սկսի Պատմութիւնը:

---

## 63. ՀՐԱՀԱՆԳ

*Հետեւեալ բառերը գրեցէ՛ք երկու սիւնակի մէջ՝ զանազանելով* բնական եւ արուեստական *առարկաները* (Ուղ. էջ 34):

*Ձաւար, ձագար, ճագար, քաքար, չաքար, լոյս, մոմ, ձէթ, փայտ, թուղթ, օղի, ձուկ, կոճակ, հող, պողպատ, խունկ, յարդ, վառօդ, կինամոն, սպունգ, կտաւ, գայլախազ, ժամացոյց, ոսպ, հայլի, ռուփ, աւազ, աղ, մեղր, ամպ, ծաղիկ, արծաթ, բիւրեղ, ապակի։*

## 63. ՊԱՀԱՊԱՆ ՀՐԵՇՏԱԿԻՍ

*Ո՛վ պահապան իմ հըրեշտակ,*
*Որ կը հըսկես գըլխուս վերեւ,*
*Իս պահպանէ՛ քու թեւիդ տակ*
*Եւ շնորհէ՛ ինձ օր ու՚արեւ։*

*Խաղաղ քունըս չխանգարի՛,*
*Քաղցր երազնե՛ր տեսնեմ միայն.*
*Մայրիկս անուշ, հայրըս բարի*
*Շա՛տ օրերով ապրած մընան։*

*Թող կազդուրուի միտքըս յոգնած,*
*Եւ ըստանայ ուժ ու կորով.*
*Կանուխ ելլեմ ես առտուանց*
*Սորվիմ համարս արթուն միտքով։*

*Քունը հանգիստ կուտայ մարդուն*
*Կ՚ընէ առողջ, զըւարթ, արի՛։*
*Ո՛վ իմ հրեշտակ, հսկէ՛ արթուն,*
*Քեզ կը մաղթեմ «Գիշեր բարի»։*

(Բիւրակն, 1899, էջ 145) Ս. Գ.

---

### 84. ՀՐԱՀԱՆԳ

*Բերանացի ու գրաւոր պատասխանեցէք* (Ուղեցոյց, էջ 34)։

1. *Ո՞վ եղաւ առաջին մարդը*։ 2. *Առաջին եղբայրասպանը*։ 3. *Առաջին մարգարէն*։ 4. *Առաջին սուրբը*։ 5. *Առաջին առաքեալը*։ 6. *Առաջին մարտիրոսը*։ 7. *Իսրայէլի առաջին թագաւորը*։ 8. *Առաջին դատաւորը*։ 9. *Յակոբ նահապետի առաջին որդին*։ 10. *Օսմանեան առաջին թագաւորը*։ 11. *Մեր առաջին լուսաւորիչները*։ 12. *Առաջին կաթողիկոսը*։ 13. *Առաջին պատմագիրը, եւայլն*։

## 64. ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

### ՈՒՍՈՒՄ, ԱՍՏՈՒԱԾ

*Դաստիարակութեան նպատակը կամ վախճանն է մարդուս մտաւոր կարողութիւնները զարգացնել, սիրտը կրթել, ախտերէ ու մոլութիւններէ հեռացնել. իմաստութիւնն ու առաքինութիւնը անոր սիրելի ընել. աստուածապաշտ մարդիկ եւ օգտակար քաղաքացիներ պատրաստել որ ճանչնան իրենց պարտքն առ Աստուած, առ երկիրն, առ ընկերն եւ առ անձն։*

*Ամէնքնիս ալ տգէտ և անուսում կը ծնինք։ Աշխարհ եկած ժամանակնիս, ո՛չ խօսիլ գիտենք, ո՛չ կարդալ, ո՛չ գրել. եւ անբանի պէս պիտի մնայինք եթէ նախ ուրիշները մեզի բան սորվեցնել չջանային. և յետոյ մենք ջանք չընէինք մեր բարոյական ու մտաւոր զարգացումին։ Ինչպէս մարմինը ապրելու համար անհրաժեշտ պէտք ունի սնունդի՝ կերակուրի, այնպէս ալ հոգիին*

---

## 85. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 34)։

1. *Այն ճառը զոր կը կարդան մեռելի մը վրայ։* 2. *Այն տաղերը զոր կ'երգեն եկեղեցիին մէջ։* 3. *Այն պաշտօնը կամ աղօթքը զոր կը կատարէ քահանան՝ մեռելներուն հոգիին համար։* 4. *Այն հանդէսը որ կը կատարուի Տօնի մը նախորդ իրիկունը։* 5. *Այն խաչը կամ ուրիշ նուիրական առարկայ մը որ կը պարունակէ սուրբի մը նշխարը։* 6. *Այն խորհուրդը զոր կը կատարեն երախայ մը եկեղեցիին անդամ ընելու համար։* 7. *Այն խորհուրդը զոր եկեղեցին կը կատարեն հարս ու փեսան իրարու անբաժան ընկեր ընելու համար։* 8. *Այն խորհուրդը զոր եպիսկոպոսը կը կատարէ աշխարհական մը քահանայ ընելու համար։*

*կենդանութեան հարկաւոր է ուսում եւ գիտութիւն։ Ուրեմն, ուսումն է հոգեկան զարգացման համար պիտանի եղած սնունդը։*

*Իմաստութեան սկիզբն է երկիւղ Աստուծոյ։*

*Աստուած է մեր եւ ամէն բանի արարիչը։ Նա կը տեսնէ ու կը քննէ մեր սիրտը, մեր միտքը եւ մեր ամէն գործերը։*

*Մեր առ Աստուած առաջին պարտքն է զինք ճանչնալ, սիրել եւ Իր պատուիրանքին հնազանդիլ։*

*Մեր պարտքերը կատարելով՝ այս աշխարհի մէջ երջանիկ կ՚ըլլանք եւ հանդերձեալ կեանքի համար ալ յաւիտենական երջանկութիւն կը պատրաստենք։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Դաստիարակութեան նպատակն ի՞նչ է: — Քանի՞ տեսակ պարտքեր ունինք գլխաւորապէս: — Ուսումն ի՞նչ է: — Ի՞նչ ըսել է բարոյական զարգացում, մտաւոր զարգացում, հոգիի կենդանութիւն: — Իմաստութեան սկիզբը ո՞րն է: — Ի՞նչ է Աստուած: — Ո՞րն է մեր առաջին պարտքն առ Աստուած: — Ի՞նչ օգուտ կայ մեր պարտքերը կատարելէ: — Ի՞նչ է հանդերձեալ կեանք, յաւիտենական երջանկութիւն:

---

## 86. ՀՐԱՀԱՆԳ

*Գրեցէ՛ք ու ըսէ՛ք թէ* (Ուղեցոյց, էջ 35):

1. *Ո՞րն է ամենէն մեծ թռչունը։* 2. *Ամենէն մեծ ցամաքային կենդանին։* 3. *Ամենէն մեծ ծովային կենդանին։* 4. *Աշխարհիս ամենէն մեծ գետը։* 5. *Լեռը։* 6. *Քաղաքը։* 7. *Ծովը։* 8. *Կղզին, եւայլն։* 9. *Ո՞րն է ամենէն մեծ մոլութիւնը։* 10. *Առաքինութիւնը։* 11. *Հաճոյքը։* 12. *Վիշտը։* 13. *Փափաքը զոր կրնայ ունենալ մարդ։*

## 65. ԹՈՒԹԱԿՆ ՈՒ ՓՈՔՐԻԿ ԳՈՂԸ

*Ծեր որսապահ Մելքոն որոգայթով թութակ մը բռնեց եւ քանի մը խօսք սորվեցուց անոր։ Զոր օրինակ եթէ որսորդը հարցնէր. — Ո՞ւր ես, սի՛րելիս», Թութակը կը պատասխանէր. — «Հո՛ս եմ, տէ՛ր»։*

*Պզտիկ Գուրգէն մեծ հաճոյք կը զգար թռչունին խօսիլը լսելով եւ յաճախ կուգար մօտիկ ընել։*

*Օր մը Մելքոն տունէն դուրս ելած էր։ Գուրգէն սենեակը մտաւ, բռնեց թութակը, գրպանը դրաւ եւ կծիկը դնելու վրայ էր։*

*Բայց նոյն միջոցին որսորդը դուռը բացաւ ու ներս մտաւ։ Տեսնելով իր դրացիին տղան իր տան մէջ՝ ուզեց անոր հաճոյք առթել, եւ ըսաւ. «Ո՞ւր ես, սի՛րելիս»։*

*Ողորմելի թռչունը տղուն գրպանին մէջէն խղդուկ ձայնով մը պատասխանեց։*

*— Հո՛ս եմ, տէ՛ր։*

---

### 87. ՀՐԱՀԱՆԳ

*Գիծերուն տեղ պէտք եղած բառերը դրէ՛ք* (Ուղ., էջ 35):

1. *Սպասաւորը կը հնազանդի —*։ 2. *Ցորեկը կը յաջորդէ —*։ 3. *Բարձր լեռները ծածկուած են —*։ 4. *Նախնի դարերու ասպետներ — պատուած էին*։ 5. *Արջը կը մագլցի — վրայ*։ 6. *Երկիրը կը լուսաւորուի —*։ 7. *Թռչունը կը սնանի —*։ 8. *Փոքրիկ մանուկները կը սնուցուին —*։ 9. *Ցիտուս ներեց իր —*։ 10. *Մայրը դիւրաւ կը ներէ —*։ 11. 11. *Տղան կը ժպտի — եւ մայրը կը գգուէ զայն*։ 12. *Ծուլութիւնը կը տանի զմարդ —*։ 13. *Քամ յանդիմանուեցաւ —*։ 14. *Ադամ ու Եւա վռնտուեցան —*։

Ծան. — *Գիծերուն տեղ դրած բառերդ ի՞նչ տեսակ խնդիր կ՚ըլլան եւ ի՞նչ հոլով են։*

*Ի՛նչ ամօթ, ի՛նչ խայտառակութիւն։ Գուրգէն փութաց թռչունը իր տիրոջ յանձնել և շուտ մը փախաւ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է թութակը: — Ի՞նչ ըսել է որսապահ, որոգայթ, յաճախ: — Ի՞նչ ըրաւ որսապահ Մելքոն: — Ի՞նչ կ'ընէր պզտիկ Գուրգէն: — Ի՞նչ եղաւ օր մը, պատմեցէք: — Բարոյականը:

## 66. ԱՍՏՈՒԱԾ ՈՒ ԿՐՕՆՔ

*Կրօնքը մեզի կը սորվեցնէ մեր պարտքը Աստուծոյ հանդէպ։*

*Կրօնքն է գիտութիւն և սէր Աստուծոյ որ ստեղծած է տիեզերքը, եւ մեզ պարգեւած է մեր կեանքը եւ անթիւ բարիք. ասոր համար պարտական ենք պաշտել ու սիրել զինքը, օրհնել իր սուրբ անունը, բարիք գործել, չարէն զգուշանալ եւ այսպէս հաճոյ ըլլալ իրեն։*

*Կրօնքը կը սորվեցնէ նաեւ մեր պարտքերը՝ մարդոց, մեր ծնողքներուն եւ մեր անձին հանդէպ։*

*Կրօնքին այս մասը կը կոչուի* **բարոյական**։

*Բարոյականի պատուէրները կրնան ամփոփուիլ սա երկու երկու առածին մէջ. «Մի՛ ըներ ուրիշին՝ ինչ որ չես ուզեր որ քեզի ընեն», եւ «Սիրեցէք իրար»։*

---

### 88. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 35):

1. *Տեղ մը՝ ուր ջուր չի կայ։* 2. *Այն ժամանակը երբ սնունդի հարկաւոր բաներ կը նուազին։* 3. *Այն ժամանակը երբ անձրեւ չի տեղար։* 4. *Հիւանդութիւն մը որ ամէն տեղ կը ճարակի։* 5. *Լուր մը որ ամէն տեղ կը տարածուի։* 6. *Աստղեր որոնք երկինքի վրայ խումբ մը կը կազմեն։* 7. *Այն աստղերու խումբը որ երկինքը կ'երեւայ լայն պողոտայի մը պէս։* 8. *Այն անհուն միջոցը ուր կը թաւալին տիեզերքի մարմինները։*

*Ասոնք մեր տէրոջ Յիսուս Քրիստոսի աստուածայ-
ին խրատներն են զորս մեզի կ'աւանդէ Ս. Աւետա-
րանը։ Եւ արդարեւ ասոնց մէջ կը կայանայ քրիստոնէա-
կան մեծագոյն սկզբունքը։ Առաջինով կը սորվինք ու-
րիշին կեանքը, ստացուածքը ու համբաւը պատուել,
խնամել. իսկ երկրորդով կը սորվինք թէ ամէնքս ալ սի-
րոյ սուրբ կապով մը պէտք է կապուինք իբրև եղբայր։*

**ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Կրօնքը ի՞նչ կը սորվեցնէ: — Ի՞նչ է
կրօնքը: — Ուրիշ ինչե՞ր կը սորվեցնէ մեզի: — Բարոյակա-
նի պատուէրներէն գլխաւորները որո՞նք են: — Ասոնք ո՞վ
կ'աւանդէ մեզի: — Ի՞նչ է Աւետարանը: — Ի՞նչ է այդ եր-
կու առածներուն իմաստը:**

---

## 67. ՇԱԳԱՆԱԿ

*Մատթէոս շատ որկրամոլ տղայ մըն էր։ Օր մը տե-
սաւ շուկան աղուոր շագանակներ։ Ամենեւին շագա-
նակ կերած չըլլալով՝ վաճառող կնոջ հարցուց թէ այն
թուխ միրգերը լա՞ւ էին արդեօք։*

*— Կարծեմ թէ շատ լաւ են, ըսաւ կինը տղուն։*

---

### 89. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ կը կոչուի եւ ո՞րն է* (Ուղեցոյց, էջ 35):

*1. Այն նշանը որ կը դրուի հարցական բառերուն վրայ։
2. Այն նշանը զոր կը դնեն տողին ծայրը, երբ բառին մէկ
մասը տողադարձ ընել հարկ ըլլայ։ 3. Այն նշանը զոր կը
դնեն ուրիշի մը խօսքը առաջ բերուած ատեն։ 4. Այն նշանը
որ բառի մը իբր յաւելուած կամ իբր մեկնութիւն դրուած
ուրիշ բառեր զատելու կը ծառայէ։ 5. Այն նշանը զոր կը
դնեն հոգիի կիրք, զարմանք, եւայլն ցուցնող բառերուն
վրայ։ 6. Այն նշանը զոր կը դնեն հրամայական բառերու
վրայ։ 7. Այն նշանը որ կը դրուի կրճատուած կամ յապա-
ւուած գիրի մը տեղ։*

*Գնէ՛ որ տեսնես՝ ի՛նչ համեղ են, մանաւանդ երբ տաք մոխիրի մէջ եփես»։*

*Դժբախտաբար Մաթէոս արդէն իր ստակը վատնած էր ուրիշ անուշեղէններու։ Սակայն որ կինը կռնակը դարձընէ՝ եւ ձեռքը շագանակի կողովին մէջ մխեց, ափ մը լեցուն առաւ ու փախաւ։*

*Տուն դառնալով՝ գնաց խոհանոցը ուր մարդ չէր կար, եւ շագանակները կրակարանին մոխիրին մէջ դրաւ։ Կրակը չառաչել տուաւ զանոնք եւ Մաթէոս հաճութեամբ կը լսէր անոնց ձայնը։*

*Աւելի շուտ եփելու համար, վառուած ածուխներ դրաւ շագանակներուն վրայ եւ սկսաւ ուժով փչել։ Յանկարծ շագանակներէն մէկը պայթեցաւ և անխոհեմ տղուն երեսն ի վեր ծուխ ու մոխիր ժայթքեց։*

*Մաթէոս, շուարած, սկսաւ վազել տան մէջ, կոյրի պէս, պոռալով։*

*Պայթումին ձայնը եւ տղուն աղաղակը լսելով՝ ծնողքը եւ տան ծառաները սարսափած՝ վազեցին։ Այն ատեն պզտիկ գողին յանցանքը երեւան ելաւ։ Շատ ցաւ քաշեց՝ մինչեւ որ աչուըները կատարեալ բժշկուեցան։ Լաւ հասկցաւ թէ որկրամոլութիւնը գէշ ախտ մ՚է որ մինչեւ գողութեան կը տանի։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ տեսակ տղայ է Մաթէոս։ — Ի՞նչ ըսել է որկրամոլ։ — Ներհակը ի՞նչ է։ — Պատմեցէք այս առակը եւ բացատրեցէք բարոյականը։

---

## 90. ՀՐԱՀԱՆԳ

*Աշակերտները թող տան* (Ուղեցոյց, էջ 35)։

1. *Հինգ զոյգ Նմանաձայն կամ յարանուն բառեր։*
2. » » *Համանիշ* »
3. » » *Հականիշ* »

## 62. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

*Անցած ժամանակներու նշանաւոր դէպքերուն եւ անձերուն վրայ խօսող գիտութիւնը Պատմութիւն կը կոչուի։ Պատմութիւնը կարեւոր գիտութիւն մըն է. հայելի մ'է ան՝ որ կը ցուցնէ ազգերու անցեալը, եւ որմէ խրատ կ'առնեն մարդիկ իրենց ներկայ եւ ապագայ ընթացքը ուղղելու համար։*

*Պատմութենէն կը սորվինք թէ աշխարհս ե՛րբ եւ ի՛նչպէս ստեղծուեցաւ, անկէ ի վեր ինչե՛ր պատահեցան, մարդիկ ի՛նչ ըրին և ի՛նչպէս ապրեցան, ազգերն ի՛նչպէս կազմակերպուեցան եւ ի՛նչ նշանաւոր մարդիկ եկան անցան մինչեւ մեր օրերը։*

*Աշխարհի վրայ հին ժամանակներէ ի վեր շատ մը ազգեր ապրեցան որոնցմէ ոմանք այսօր չկան, բայց ամէնքն ալ ունին իրենց պատմութիւնը։ Այդ ազգերն են Եբրայեցիները, Եգիպտացիները, Պարսիկները, Հայերը, Յոյները, Արաբացիները, Օսմանցիները, Ֆրանսացիները, Իտալացիները, Չինաստանցիները, Հնդկաստանցիները, եւայլն։*

*Պատմութիւնը կը սկսի մարդոց քաղաքակրթութենէն, այն է՝ մեզմէ 60 դար առաջ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. Ի՞նչ է պատմութիւնը եւ ի՞նչ կը սորվեցնէ: — Ո՞ր ազգեր ապրած են հին դարերու մէջ: — Ո՞ր ժամանակէն կը սկսի Պատմութիւնը:

---

## 83. ՀՐԱՀԱՆԳ

*Հետեւեալ բառերը գրեցէ՛ք երկու սիւնակի մէջ՝ զանազանելով* բնական եւ արուեստական *առարկաները* (Ուղ. էջ 34):

*Ձաւար, ձագար, ճագար, քաքար, շաքար, լոյս, մոմ, ձէթ, փայտ, թուղթ, օղի, ձուկ, կոճակ, հող, պողպատ, խունկ, յարդ, վառօդ, կինամոն, սպունգ, կտաւ, գայլախազ, ժամացոյց, ոսպ, հայլի, ռուփ, աւազ, աղ, մեղրամոմ, ծաղիկ, արծաթ, բիւրեղ, ապակի։*

## 63. ՊԱՀԱՊԱՆ ՀՐԵՇՏԱԿԻՍ

*Ո՜վ պահապան իմ հրեշտակ,*
*Որ կը հսկես գլխուս վերեւ,*
*Իս պահպանէ՛ քու թեւիդ տակ*
*Եւ շնորհէ՛ ինձ օր ու՚արեւ։*

*Խաղաղ քունըս չխանդարե՜,*
*Քաղցր երազնե՜ր տեսնեմ միայն.*
*Մայրիկս անուշ, հայրըս բարի*
*Շա՜տ օրերով ապրած մընան։*

*Թող կազդուրուի միտքըս յոգնած,*
*Եւ ըստանայ ուժ ու կորով.*
*Կանուխ ելլեմ ես առտուանց*
*Սորվիմ համարս արթուն միտքով։*

*Քունը հանդիստ կուտայ մարդուն*
*Կ'ընէ առողջ, զուարթ, արի՛։*
*Ո՛վ իմ հրեշտակ, հսկէ՛ արթուն,*
*Քեզ կը մաղթեմ «Գիշեր բարի»։*

(Բիւրակն, 1899, էջ 145) Ս. Դ.

---

## 84. ՀՐԱՀԱՆԳ

*Բերանացի ու գրաւոր պատասխանեցէք* (Ուղեցոյց, էջ 34)։

1. *Ո՞վ եղաւ առաջին մարդը։* 2. *Առաջին եղբայրասպանը։* 3. *Առաջին մարգարէն։* 4. *Առաջին սուրբը։* 5. *Առաջին առաքեալը։* 6. *Առաջին մարտիրոսը։* 7. *Իսրայէլի առաջին թագաւորը։* 8. *Առաջին դատաւորը։* 9. *Յակոբ Նահապետի առաջին որդին։* 10. *Օսմանեան առաջին թագաւորը։* 11. *Մեր առաջին լուսաւորիչները։* 12. *Առաջին կաթողիկոսը։* 13. *Առաջին պատմագիրը, եւայլն։*

## 64. ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

### ՈՒՍՈՒՄ, ԱՍՏՈՒԱԾ

*Դաստիարակութեան նպատակը կամ վախճանն է մարդուս մտաւոր կարողութիւնները զարգացնել, սիրտը կրթել, ախտերէ ու մոլութիւններէ հեռացնել. իմաստութիւնն ու առաքինութիւնը անոր սիրելի ընել. աստուածապաշտ մարդիկ եւ օգտակար քաղաքացիներ պատրաստել որ ճանչնան իրենց պարտքն առ Աստուած, առ երկիրն, առ ընկերն եւ առ անձն ։*

*Ամէնքնիս ալ տգէտ և անուսում կը ծնինք ։ Աշխարհ եկած ժամանակնիս, ո՛չ խօսիլ գիտենք, ո՛չ կարդալ, ո՛չ գրել. եւ անբանի պէս պիտի մնայինք եթէ նախ ուրիշները մեզի բան սորվեցնել չջանային. և յետոյ մենք ջանք չընէինք մեր բարոյական ու մտաւոր զարգացումին ։ Ինչպէս մարմինը ապրելու համար անհրաժեշտ պէտք ունի սնունդի՝ կերակուրի, այնպէս ալ հոգիին*

---

## 85. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 34)։

1. *Այն ճառը զոր կը կարդան մեռելի մը վրայ ։* 2. *Այն տաղերը զոր կ'երգեն եկեղեցիին մէջ ։* 3. *Այն պաշտօնը կամ աղօթքը զոր կը կատարէ քահանան՝ մեռելներուն հոգիին համար ։* 4. *Այն հանդէսը որ կը կատարուի Տօնի մը նախորդ իրիկունը ։* 5. *Այն խաչը կամ ուրիշ նուիրական առարկայ մը որ կը պարունակէ սուրբի մը նշխարը ։* 6. *Այն խորհուրդը զոր կը կատարեն երախայ մը եկեղեցիին անդամ ընելու համար ։* 7. *Այն խորհուրդը զոր եկեղեցին կը կատարեն հարս ու փեսան իրարու անբաժան ընկեր ընելու համար ։* 8. *Այն խորհուրդը զոր եպիսկոպոսը կը կատարէ աշխարհական մը քահանայ ընելու համար ։*

*կենդանութեան հարկաւոր է ուսում եւ գիտութիւն։ Ուրեմն, ուսումն է հոգեկան զարգացման համար պիտանի եղած սնունդը։*

*Իմաստութեան սկիզբն է երկիւղ Աստուծոյ։*

*Աստուած է մեր եւ ամէն բանի արարիչը։ Նա կը տեսնէ ու կը քննէ մեր սիրտը, մեր միտքը եւ մեր ամէն գործերը։*

*Մեր առ Աստուած առաջին պարտքն է զինք ճանչնալ, սիրել եւ Իր պատուիրանքին հնազանդիլ։*

*Մեր պարտքերը կատարելով՝ այս աշխարհի մէջ երջանիկ կ'ըլլանք եւ հանդերձեալ կեանքի համար ալ յաւիտենական երջանկութիւն կը պատրաստենք։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Դաստիարակութեան նպատակն ի՞նչ է: — Քանի՞ տեսակ պարտքեր ունինք գլխաւորապէս: — Ուսումն ի՞նչ է: — Ի՞նչ ըսել է բարոյական զարգացում, մտաւոր զարգացում, հոգիի կենդանութիւն: — Իմաստութեան սկիզբը ո՞րն է: — Ի՞նչ է Աստուած: — Ո՞րն է մեր առաջին պարտքն առ Աստուած: — Ի՞նչ օգուտ կայ մեր պարտքերը կատարելէ: — Ի՞նչ է հանդերձեալ կեանք, յաւիտենական երջանկութիւն:

---

## 86. ՀՐԱՀԱՆԳ

*Գրեցէ՛ք ու ըսէ՛ք թէ* (Ուղեցոյց, եջ 35):

1. *Ո՞րն է ամենէն մեծ թռչունը։* 2. *Ամենէն մեծ ցամաքային կենդանին։* 3. *Ամենէն մեծ ծովային կենդանին։* 4. *Աշխարհիս ամենէն մեծ գետը։* 5. *Լեռը։* 6. *Քաղաքը։* 7. *Ծովը։* 8. *Կղզին, եւայլն։* 9. *Ո՞րն է ամենէն մեծ մոլութիւնը։* 10. *Առաքինութիւնը։* 11. *Հաճոյքը։* 12. *Վիշտը։* 13. *Փափաքը զոր կրնայ ունենալ մարդ։*

## 65. ԹՈՒԹԱԿՆ ՈՒ ՓՈՔՐԻԿ ԳՈՂԸ

*Ծեր որսապահ Մելքոն որոգայթով թութակ մը բռնեց եւ քանի մը խօսք սորվեցուց անոր։ Զոր օրինակ եթէ որսորդը հարցնէր. — «Ո՞ւր ես, սի՛րելիս», Թութակը կը պատասխանէր. — «Հո՛ս եմ, տէ՛ր»։*

*Պզտիկ Գուրգէն մեծ հաճոյք կը զգար թռչունին խօսիլը լսելով եւ յաճախ կուգար մտիկ ընել։*

*Օր մը Մելքոն տունէն դուրս ելած էր։ Գուրգէն սենեակը մտաւ, բռնեց թութակը, գրպանը դրաւ եւ կծիկը դնելու վրայ էր։*

*Բայց նոյն միջոցին որսորդը դուռը բացաւ ու ներս մտաւ։ Տեսնելով իր դրացիին տղան իր տան մէջ՝ ուզեց անոր հաճոյք առթել, եւ ըսաւ. «Ո՞ւր ես, սի՛րելիս»։*

*Ողորմելի թռչունը տղուն գրպանին մէջէն խղճուկ ձայնով մը պատասխանեց։*

*— Հո՛ս եմ, տէ՛ր։*

---

### 87. ՀՐԱՀԱՆԳ

*Գիծերուն տեղ պէտք եղած բառերը դրէ՛ք* (Ուղ., էջ 35)։

1. *Սպասաւորը կը հնազանդի* —։ 2. *Ցորեկը կը յաջորդէ* —։ 3. *Բարձր լեռները ծածկուած են* —։ 4. *Նախնի դարերու ասպետներ — պատած էին*, 5. *Արջը կը մագլցի — վրայ*։ 6. *Երկիրը կը լուսաւորուի* —։ 7. *Թռչունը կը սնանի* —։ 8. *Փոքրիկ մանուկները կը սնուցուին* —։ 9. *Յիսուս ներեց իր* —։ 10. *Մայրը դիւրաւ կը ներէ* —։ 11. 11. *Տղան կը ժպտի — եւ մայրը կը գգուէ զայն*։ 12. *Ծուլութիւնը կը տանի զմարդ* —։ 13. *Քամ յանդիմանուեցաւ* —։ 14. *Ադամ ու Եւա վռնտուեցան* —։

Ծան. — *Գիծերուն տեղ դրած բառերդ ի՞նչ տեսակ խնդիր կ'ըլլան եւ ի՞նչ հոլով են։*

*Ի՜նչ ամօթ, ի՜նչ խայտառակութիւն։ Գուրգէն փութաց թռչունը իր տիրոջ յանձնել և չուտ մը փախաւ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է թուքակը : — Ի՞նչ ըսել է որսապահ, որոգայթ, յանախ: — Ի՞նչ ըրաւ որսապահ Մելքոն: — Ի՞նչ կ'ընէր պզտիկ Գուրգէն : — Ի՞նչ եղաւ օր մը, պատմեցէք : — Բարոյական :

---

## 66. ԱՍՏՈՒԱԾ ՈՒ ԿՐՕՆՔ

*Կրօնքը մեզի կը սորվեցնէ մեր պարտքը Աստուծոյ հանդէպ։*

*Կրօնքն է գիտութիւն և սէր Աստուծոյ որ ստեղծած է տիեզերքը, եւ մեզ պարգեւած է մեր կեանքը եւ անթիւ բարիք. ատոր համար պարտական ենք պաշտել ու սիրել զինքը, օրհնել իր սուրբ անունը, բարիք գործել, չարէն զգուշանալ եւ այսպէս հաճոյ ըլլալ իրեն։*

*Կրօնքը կը սորվեցնէ նաեւ մեր պարտքերը՝ մարդոց, մեր ծնողքներուն եւ մեր անձին հանդէպ։*

*Կրօնքին այս մասը կը կոչուի բարոյական։*

*Բարոյականի պատուէրները կրնան ամփոփուիլ սա երկու երկու առածին մէջ. «Մի՛ ըներ ուրիշին՝ ինչ որ չես ուզեր որ քեզի ընեն», եւ «Սիրեցէք իրար»։*

---

### 88. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ կը կոչուի* (Ուղեցոյց, էջ 35) :

1. *Տեղ մը՝ ուր ջուր չի կայ։* 2. *Այն ժամանակը երբ անուանդի հարկաւոր բաներ կը նուազին։* 3. *Այն ժամանակը երբ անձրեւ չի տեղար։* 4. *Հիւանդութիւն մը որ ամէն տեղ կը ճարակի։* 5. *Ծով մը որ ամէն տեղ կը տարածուի։* 6. *Աստղեր որոնք երկինքի վրայ խումբ մը կը կազմեն։* 7. *Այն աստղերու խումբը որ երկինքը կ'երեւայ լայն պողոտայի մը պէս։* 8. *Այն անհուն միջոցը ուր կը թաւալին տիեզերքի մարմինները։*

*Ասոնք մեր տէրոջ Յիսուս Քրիստոսի աստուածային խրատներն են զորս մեզի կ'աւանդէ Ս. Աւետարանը։ Եւ արդարեւ ասոնց մէջ կը կայանայ քրիստոնէական մեծագոյն սկզբունքը։ Առաջինով կը սորվինք ուրիշին կեանքը, ստացուածքը ու համբաւը պատուել, խնամել. իսկ երկրորդով կը սորվինք թէ ամէնքս ալ սիրոյ սուրբ կապով մը պէտք է կապուինք իբրեւ եղբայր։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Կրօնքը ի՞նչ կը սորվեցնէ: — Ի՞նչ է կրօնքը: — Ուրիշ ինչե՞ր կը սորվեցնէ մեզի: — Բարոյական պատուէրներէն գլխաւորները որո՞նք են: — Ասոնք ո՞վ կ'աւանդէ մեզի: — Ի՞նչ է Աւետարանը: — Ի՞նչ է այդ երկու առածներուն իմաստը:

## 67. ՇԱԳԱՆԱԿ

*Մատթէոս շատ որկրամոլ տղայ մըն էր։ Օր մը տեսաւ շուկան աղուոր շագանակներ։ Ամենեւին շագանակ կերած չըլլալով՝ վաճառող կնոջ հարցուց թէ այն թուխ միրգերը լա՞ւ էին արդեօք։*

*— Կարծեմ թէ շատ լաւ են, ըսաւ կինը տղուն։*

---

### 89. ՀՐԱ՜ՀԱՆԳ

*Ի՞նչ կը կոչուի եւ ո՞ւր է* (Ուղեցոյց, էջ 35):

*1. Այն նշանը որ կը դրուի հարցական բառերուն վրայ։ 2. Այն նշանը զոր կը դնեն տողին ծայրը, երբ բառին մէկ մասը տողադարձ ընել հարկ ըլլայ։ 3. Այն նշանը զոր կը դնեն ուրիշի մը խօսքը առաջ բերուած ատեն։ 4. Այն նշանը որ բառի մը իբր յաւելուած կամ իբր մեկնութիւն դրուած ուրիշ բառեր զատելու կը ծառայէ։ 5. Այն նշանը զոր կը դնեն հոգիի կիրք, զարմանք, եւայլն ցուցնող բառերուն վրայ։ 6. Այն նշանը զոր կը դնեն հրամայական բառերու վրայ։ 7. Այն նշանը որ կը դրուի կրճատուած կամ յապաւուած գիրի մը տեղ։*

*Գնէ՛ որ տեսնես՝ ի՞նչ համեղ են, մանաւանդ երբ տաք մոխիրի մէջ եփես » ։*

*Դժբախտաբար Մաթէոս արդէն իր ստակը վատնած էր ուրիշ անուշեղէններու ։ Սպասեց որ կինը կռնակը դարձնէ՝ եւ ձեռքը շագանակի կողովին մէջ մխեց, ափ մը լեցուն առաւ ու փախաւ ։*

*Տուն դառնալով՝ գնաց խոհանոցը ուր մարդ չը կար, եւ շագանակները կրակարանին մոխիրին մէջ դրաւ ։ Կրակը շառաչել տուաւ զանոնք եւ Մաթէոս հաճութեամբ կը լսէր անոնց ձայնը ։*

*Աւելի շուտ եփելու համար, վառուած ածուխներ դրաւ շագանակներուն վրայ եւ սկսաւ ուժով փչել ։ Յանկարծ շագանակներէն մէկը պայթեցաւ և անխոհեմ տղուն երեսն ի վեր ծուխ ու մոխիր ժայթքեց ։*

*Մաթէոս, շուարած, սկսաւ վազել տան մէջ, կոյրի պէս ; պոռալով ։*

*Պայթումին ձայնը եւ տղուն աղաղակը լսելով՝ ծնողքը եւ տան ծառաները սարսափած՝ վազեցին ։ Այն ատեն պզտիկ գողին յանցանքը երեւան ելաւ ։ Շատ ցաւ քաշեց՝ մինչեւ որ աչուըները կատարեալ բժշկուեցան ։ Լաւ հասկցաւ թէ որկրամոլութիւնը գէշ ախտ մ'է որ մինչեւ գողութեան կը տանի ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ տեսակ տղայ է Մաթէոս : — Ի՞նչ բանի է որկրամոլ : — Ներհակը ի՞նչ է : — Պատմեցէք այս առակը եւ բացատրեցէք բարոյականը :

---

## 90. ՀՐԱՀԱՆԳ

*Աշակերտները թող տան* (Ուղեցոյց, էջ 35) :

1. *Հինգ զոյգ Նմանաձայն կամ յարանուն բառեր ։*
2. » » *Համանիշ* »
3. » » *Հականիշ* »

## 68. ԸՆԹԵՐՑԱՆՈՒԹԻՒՆ

*Ընթերցանութիւնը մասնաւոր արուեստ մըն է որուն պէտք է եւ կ'արժէ ուշադիր խնամ տանիլ և ջանալ որ ամէն մէկ խօսք, ամէն մէկ բառ, ամէն մէկ վանկ եւ տառ հնչուի իրեն յատուկ շեշտով։ Առանց այս պայմանին, կարդացուածը կ'ըլլայ ցուրտ, ցամաք, միօրինակ եւ ձանձրացուցիչ։ Գրուածքին իմաստը հասկնալէ եւ որոշ ու իմանալի ձայնով կարդալէ զատ, պէտք է, իմաստին համեմատ, ձայնը բարձրացնել կամ ցածցնել՝ մեղմ կամ ուժգին, տխուր կամ զուարթ շեշտ մը տալով անոր, եւ կանգ առնել՝ ստորակէտէն եւ բութէն վերջ՝ մէկ րոպէ, միջակէտէն վերջ՝ երկու րոպէ և վերջակէտէն ետք՝ երեք չորս րոպէ։ Ուշ դնել զարմացական երկարներուն՝ զգացնելով թէ ո՛ր ձայնաւորի կը պատ-*

---

### 91. ՀՐԱՀԱՆԳ

*Դիծերուն տեղ պէտք եղած բառը դրէ* (Ուղեցոյց, էջ 36)։

1. *Աստուած շինեց մարդը — (ինչէ՞ն)*։ 2. *Ո՛վ որ կ'ողորմի —, փոխ կուտայ —*։ 3. *Ըրէ՛ք — ինչ որ կ'ուզէք որ անոնք ընեն —*։ 4. *Լուսինը — կը ստանայ իր լոյսը*։ 5. *Մանիշակը կը ծաղկի —*։ 6. *Խաղողը կը քաղեն —*։ 7. *Երբ արեւը ծագի, հօտերը կը ցրուին — մէջ*։ 8. *Գինին — կը շինուի*։ 9. *Եւա խաբուեցաւ — եւ Ադամ՝ —*։ 10. *Աստուած ստեղծեց աշխարհը վեց — մէջ*։ 11. *Երկրագործը երեկունը կը դառնայ —*։ 12. *Դասատուն դաս կուտայ իր —*։ 13. *Երկաթագործը կը տաքցնէ — (ի՞նչը) եւ — (ինչո՞վ) կը ծեծէ զայն*։ 14. *—ով կը շինեն շապիկ*։ 15. *—ով կը ճամբորդեն ծովու վրայ*։ 16. *Մարդիկ՝ ապրելու համար պէտք ունին —*։ 17. *Այս աղքատ ընտանիքը կ'ապրի (ի՞նչպէս)*։ 18. *Անձրեւը, ձիւնը, կարկուտը կը տեղան — (ուրկէ՞)*։ 19. *Երկու աւազակներ խաչուեցան — հետ*։ 20. *Ծառերն ու ալիքները կը շարժին — էն*։ 21. *Հացը կը շինեն — ով եւ — ով*։

կանին. շեշտերուն՝ որ եթէ պատկանեալ վանկին վրայ չդրուին, խօսքը կը կորսնցնէ իր ոյժը, կը նուաղի, «կ'իյնայ», ինչպէս կ'ըսեն սովորաբար։ Ուշադրութիւն ընծայել մանաւանդ պարոյկ կամ ոլորակ կոչուած հարցական նշանին, որ խօսքի մը իմաստին հետ ուղղակի առնչութիւն ունենալով՝ եթէ տարբեր բառի կամ վանկի վրայ չեշտուի, ըստ այնմ կ'այլայլի նաև իմաստը, և երկդիմութիւն ու շփոթութիւն կը ծագի բնականաբար։ Տեսէ՛ք պարոյկին կատարած դերը մի՛ եւ նոյն նախադասութեան այլ եւ այլ բառերուն վրայ.

Մշակնե՞րն երէկ կը հերկէին իրենց արտերը։
Մշակներն երէ՞կ կը հերկէին իրենց արտերը։
Մշակներն երէկ կը հերկէ՞ին իրենց արտերը։
Մշակներն երէկ կը հերկէին իրե՞նց արտերը։
Մշակներն երէկ կը հերկէին իրենց արտե՞րը։

Լաւ կարդալու համար պէտք է նախ հասկնալ գրըուածքին իմաստը, եւ նիւթին, իմաստին ու պարագային համեմատ ելեւէջներով կարդալ՝ եւ ոչ թէ միօրինակ ու տաղտկալի կերպով։ Բայց նաեւ զգուշանալու է որ, առանց հարկի, անբնական, անպատշաճ եւ յանկարծական փոփոխութեամբ՝ ձայնը անհաճոյ տպաւորութիւն չընէ ունկնդիրին վրայ։

---

## 92. ՀՐԱՀԱՆԳ

Գտէ՛ք եւ գրեցէ՛ք թէ (Ուղեցոյց, էջ 36)։

1. Ի՞նչ ըսել է թուական։ 2. Տօմա՞ր։ 3. Հիմա քանի՞ տեսակ թուական կը գործածեն սովորաբար։ 4. Ի՞նչ ըսել է Քրիստոսի թուական։ 5. Հիճրեթի թուական։ 6. Քրիստոսի ո՞ր թուականին հնարուեցաւ տպագրութիւնն եւ ո՞վ հնարեց։ 7. Ո՞ր թուականին գտնուեցաւ Ամերիկան եւ ո՞վ գտաւ։ 8. Ո՞ր թուականին հնարուեցաւ օդապարիկը և ո՞վ հնարեց։ 9. Ի՞նչ ըսել է հեռագիր, հեռաձայն։

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Որո՞նք են կէտադրութեան նշանները եւ ո՞րն է անոնց գործածութեան եղանակը:

---

## 69. ԵՐԿՈՒ ՃԱՄԲՈՐԴ

*Երկու ճամբորդ, Թովմաս եւ Յովհաննէս, տօնավաճառը կ'երթային: Անտառ մը հասան. Թովմաս, որ առջեւէն կ'երթար, իր առջեւ ոսկիով լի քսակ մը կը տեսնէ եւ կը վերցնէ. «Ո՜հ, ի՜նչ աղուոր գիւտ մը ըրինք», կը գոչէ Յովհաննէս զուարթագին: — «Մե՞նք, կը պատասխանէ Թովմաս, ի՞նչ ըսել կ'ուզես, բարեկամ: Ըսէ՛ մանաւանդ ե՛ս: Ե՛ս գտայ դրամը եւ ինծի համար կը պահեմ»: Յովհաննէս կը լռէ: Մտիկ կ'ընէ իր հարուստ ընկերին որ արդէն կը հաշուէ ինչ որ պիտի կրնայ գնել իր գտած դրամով: Յանկարծ երկու գող կ'երեւան անտառին մէջ: — Վա՜յ, կը գոչէ Թովմաս սարսափահար, կորսուա՜ծ ենք»: — «Մե՞նք, կը պատասխանէ յայնժամ Յովհաննէս, կը սխալիս, բարեկամս, ըսէ՛ մանաւանդ ես»: Աս ըսաւ ու սկսաւ փախչիլ: Իսկ Թովմաս դրամին ծանրութեան պատճառաւ, չկրցաւ փախչիլ: Գողերը իր վրայ կը յարձակին, կը ծեծեն, կը կողոպտեն եւ իր գանձն ու հագուստը միանգամայն կը գողնան:*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ ըսել է տօնավաճառ: — Երկու ճամբորդներուն առակէն ի՞նչ խրատ կը հետեւցնէք:

---

## 93. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ կը կոչուի* (Ուղեցոյց, 37):

1. *Աւազուտ եւ անբեր դաշտ մը:* 2. *Հողի կտոր մը որ ցամաքէն դէպի ծով երկնցած է:* 3. *Տեղ մը ուր տղմուտ ու ապականեալ ջուր կայ ու սէզ բուսած է:* 4. *Անապատի մէջ գտնուող ջրաբեր ու դալարաւէտ կղզին:* 5. *Երկու լեռան մէջ գտնուող խորութիւնը:* 6. *Ծովու նեղկեկ մաս մը որ երկու ցամաք կը միացնէ:* 7. *Ցամաքի նեղ մաս մը որ երկու ցամաք կը միացնէ:* 8. *Տեղ մը ուր կը գահավիժի ջուրը:*

## 70. ԽԱՂՈՂԸ

Տերեւներուն մէջէն բարակ,
Որք սընդուսի կը նըմանին,
Կուռ ողկոյզներ սեւ ու ճերմակ
Վար կը կախեն հատիկներնին։

Ոմանք երկայն, ոմանք կլոր,
Մանրիկ, փայլուն ու լուսանցիկ,
Տերեւներուն վըրայ խոշոր,
Կը կարծըւին բանուած ծաղիկ։

Արցո՞ւնք են թէ շաղի կաթիլ,
Ամպին ցանցէն ցօղուած չիթ չիթ,
Զըմրո՞ւխտ արդեօք, վա՞րդ նորածիլ
Կամ աստղերէ՛ն ինկած ժըպի՞տ։

Անոնք արցունք չեն, ո՛չ գոհար,
Ո՛չ ալ ծաղիկ, ո՛չ ալ կիտուած.
Անուշ խաղող են գովարար.
Միրգ, զոր միայն օրհնեց Աստուած։

---

### 94. ՀՐԱՀԱՆԳ

*Բաղդատելով ըսէ՛ թէ ինչ կ'ընեն քաղաքավար տղայ մը եւ անքաղաքավար տղայ մը* (Ուղեցոյց, էջ 37)։

1. *Երբ իրենք կանչուին։* 2. *Երբ իրենց բան մը հարցուի։* 3. *Երբ բան մը հրամայուի։* 4. *Երբ բան մը խօսին։* 5. *Երբ փողոցի մէջ կամ ուրիշ տեղ տարէց կամ ակնածելի անձի մը պատահին։* 6. *Երբ սեղանի վրայ գտնուին։* 7. *Երբ մէկը, սխալմամբ եւ անգիտութեամբ, անպատշաճ կամ անկիրթ խօսք մը ըսէ.* 8. *Երբ իրենց առջեւ յանիրաւի բամբասեն ու զրպարտեն ուրիշը։*

Ձայն չինեցին լոյս հրեշտակներ
Նուրբ մատներովն իրենց ճարտար,
Այգիներուն աշնան նըւէր՝
Սիրո՛ւն տըղաք, ձեզի՛ համար։

---

## 71. ԳՈՂՑՈՒԱԾ ՀԱՒ

Իրիկուն մը, Պետրոս՝ մինակ իր խուցը նստած՝ կը մանէր։ Դուռը բաց ձգած էր, եւ դրացիին հաւը յամրաքայլ եւ զգուշութեամբ ներս մտաւ։

Պետրոս մէկէն դուռը գոցեց ու հաւը բռնեց շտեմարան դրաւ։

— Հոս կը պահեմ զայն, մարդ չ'իմանար, եւ քիչ ատենէն քանի մը տասնեակ հաւկիթ կ'առնեմ։

Իրօք, երկրորդ առտուն, հաւը հաւկիթ մ'ածեց։ Բայց Պետրոս ամէն բան չէր մտածած. քանզի հազիւ թէ հաւը զայն ածեց, սկսաւ կռկռալ. Պետրոս վազեց փութով զայն լռեցնելու, բայց ուշ մնացեր էր, դրացին իր հաւուն ձայնը լսած էր. վազեց շուտով, ելաւ շտեմարան, ուր Պետրոսը տեսաւ, լաւ մը յանդիմանեց եւ իր հաւն առնելով գնաց։

---

### 95. ՀՐԱՀԱՆԳ

Պատասխանեցէք բերանացի ու գրաւոր. ըսէք թէ (Ուղ. էջ 38):

1. Արհեստները, Արուեստները եւ Գիտութեանց զանազան ճիւղերուն համար հաստատուած Վարժարանները որո՞նք են։ 2. Ի՞նչ կ'աւանդուի Գեղարուեստներու Վարժարանին մէջ։ 3. Քաղաքագիտական 4. Քաղաքային։ 5. Բժշկական։ 6. Իրաւագիտական եւլն. վարժարաններո՞ւ մէջ։

*Մինչեւ այն օրը, գործաւորուհին իր դրացիին գթալով՝ հաւկիթ, կարագ ու ալիւր տուած էր յաճախ։ Այնուհետեւ բան չտուաւ եւ անոր անունը գող դրաւ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է հաւը, ուրիշ թռչուններ ալ ը-րէք: — Ի՞նչ պատահեցաւ իրիկուն մը: — Ի՞նչ ըրաւ Պէադրիս; — Ի՞նչ ըսել է յամրաքայլ եւ ի՞նչ տեսակ բառ է (*պա՞րզ, բարդ* թէ *ածանցեալ*): — Պէադրիս ո՞ւր պահեց հաւը: — Միւս առտու ի՞նչ պատահեցաւ, յետո՞յ . . . (*շարունակեցէ՛ք*):

---

# 72. ՄԱՔՐՈՒԹԻՒՆ

*Մաքրութիւնը առողջութեան համար էական պայման մըն է։ Վտանգաւոր ու տարափոխիկ շատ մը հիւանդութիւններու միակ պատճառը աղտոտութիւնն է։ Մաքուր ջուր, մաքուր օդ, արեգակի լոյս, եւ մաքուր ու առողջարար սնունդ, մարդուս համար բացարձակապէս անհրաժեշտ չորս տարրեր են։*

*Մորթերնիդ մաքուր պահեցէք։ Մարմինը փոքր ծակոտիկներ ունի՝ որոնք արտաշնչութեամբ ու աղտոտ-*

---

**96. ՀՐԱՀԱՆԳ**

*Տառ մը փոխելով բառը փոխէ՛ եւ նշանակութիւնը սորվէ՛* (Ուղեցոյց, էջ 38):

*Գլուկ, ամանակ, բառարան, արարած, աւազան, կապիկ, խայծ, պաճար, դունչ, ցուլ, ճեպել, ածու, վաթիլ, ցեխ, սուրճ, նրբութիւն, փաստ, կայթ, լուրջ, սունկ, լերկ, անառակ. ճատրակ, ամուլ, մամուռ, մատակ, չուչակ, պտուկ, որբ, բանդակ, մաճ, արօր, հունձ, կարթ, չուստ, կարիք, կամար, սնար, անոտի, մարագ, խարակ, զիստ, բուրդ, ոստ, զուտ, բորեան, աւազակ, դեգ, քող, սէզ, վտառ, մեղր, հունտ, կարճ, քիստ, խաղաղիկ,. անպատճառ, զարգանալ։*

*ութեամբ դիւրաւ կը լեցուին ու կը գոցուին, այն ատեն, հիւանդութեան սնունդ ու ծագում կուտան։ Ասոր համար, պէտք է խնամքով լուացուիլ, հագուստները շատ մաքուր պահել և յաճախակի բաղնիք երթալ։*

*Մորթի աղտոտութեան չափ վնասակար է նաեւ հագուստներու աղտոտութիւնը որ մարմինին տկարանալուն կը նպաստէ։ Մորթը ծածկող ճերմակեղէններն ու հագուստները, վերմակները, սաւանները եւայլն՝ ամէն օր բաց օդին թօթուելու և յաճախ փոխելու է։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է մաքրութիւնը: — Աղտոտութենէն ի՞նչ կրնայ առաջ գալ: — Ի՞նչ բաներ անհրաժեշտ են առողջութեան: — Ե՞րբ ջուրը մաքուր է, իսկ օ՞դը՝ ե՞րբ մաքուր եւ առողջարար է: — Ի՞նչ ըսել է արտաշնչում: — Ի՞նչ է աս բառին ներհակը: — Աղտոտ լաթեր հագնելո՞ւ է: Ինչո՞ւ:

## 73. ՇՈՒՆ

*Շունը ընտանի կենդանի մըն է, ունի չորս ոտք, և ասոր համար կը կոչուի չորքոտանի։ Շունը ունի իրան, պարանոց, գլուխ, ագի։ Բերանը զինուած է խոշոր ակռաներով։ Իր գլխաւոր ու եզական յատկութիւնն է հաւատարմութիւնը եւ սուր հոտառութիւնը։ Շատ դիւրաւ կը կրթուի եւ կրնայ ծառայութիւններ մատու-*

---

### 97. ՀՐԱՀԱՆԳ

*Հարցումներուն պատասխանեցէք* (Ուղեցոյց, էջ 39)*:*

1. *Որո՞նք են մարդկային կմախքին գլխաւոր մասերը։* 2. *Ոսկորներն ու մկանները (կամ դնդերքը) ինչի՞ միջոցաւ կրնան շարժիլ։* 3. *Որո՞նք են ներքին գործարանները եւ ի՞նչ է անոնց պաշտօնը։*

*ցանել մարդու, մանաւանդ որսորդութեան ատեն։ Շունը կը պահպանէ մեր տունը։ Գիշեր ատեն, երբ գող գայ, հաչելով մեզի կ'իմացնէ։ Ասկէ զատ, շունը մանաւանդ՝ խոշոր տեսակը, որ գամփռ կը կոչուի, մեր հօտերը կը պահպանէ գողերէն ու գայլէն։ Շունին ամենէն վտանգաւոր հիւանդութիւնն է կատաղութիւնը։ Կատաղած շուն մը չի խնայեր ո՛չ փոքրիկ տղոց, որոնց շատ բարեկամ է, եւ ո՛չ ալ իր տիրոջ, որուն հարուածները շատ անգամ քծնելով կը պատասխանէ։ Շունը մսակեր է, իր բնակարանը կը կոչուի խշտիկ, էգը կը կոչուի քած, իսկ ձագը՝ լակոտ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է շունը: — Ի՞նչ ըսել է ընտանի: — Ներհա՞կը: — Տեսա՞ծ էք վայրի կենդանիներ: — Ի՞նչ ըսել է չորքոտանի: — Երկու ոտք ունեցող կենդանիները ի՞նչ կ'ըսուին: — Ո՞րն է շունին գլխաւոր յատկութիւնը: — Ի՞նչ ծառայութիւն կ'ընէ մեզի՝ թուեցէք: — Ի՞նչ է կատաղութիւնը: — Ասոր դարմանը գտնուա՞ծ է, ո՞վ գտած է: — Ի՞նչ ըսել է խշտիկ, քած, լակոտ:

---

## ՂԸ. ՀՐԱՀԱՆԳ

*Գրով ու բերնով պատասխանելով ըսէ՛ք թէ՝ ի՛նչ կերպով կրնան յարաբերութիւն ունենալ իրարու հեռու քաղաքներու մէջ գտնուող անձեր* (Ուղեցոյց, էջ 39—40):

1. *Ուրեմն ի՛նչ է նամակ մը։* 2. *Ի՞նչ է նամակի մը թըւականը, վերնագիրը, վերջաւորութիւնը, ստորագրութիւնը, հասցէն։* 3. *Նամակը ինչի՞ մէջ կը ծրարեն։* 4. *Ո՞ւր կը յանձնեն։* 5. *Ի՞նչ կը փակցնեն վրան (պատմեցէ՛ք այսպէս թէ ի՞նչ կերպով կը ճամբորդէ նամակ մը եւ որո՞նց ձեռքէն կ'անցնի մինչեւ որ հասնի իր հասցէին)։*

## 74. ՊԱՐՏՔԵՐ ԾՆՈՂՔԻՆ ՀԱՆԴԷՊ

Մեր ծնողքին ունեցած մեր գլխաւոր պարտքերն են մեծարանք, սէր, երախտագիտութիւն:

Մեծարանք՝ որովհետեւ իրենք մեզի կեանք տալով մեր առաջին մեծերն են։ Ուստի պէտք է զիրենք պատուենք ու մեծարենք։

Սէր՝ որովհետեւ իրենք մեզ խնամեր են ու անկեղծ սիրտով սիրած ու մեր պէտքերն հոգացած են՝ նիւթապէս ու բարոյապէս. իրենք են որ զԱստուած ճանչնալ ու սիրել սորվեցուցած են մեզի. իրենք՝ Աստուծոյ պատկերն են աշխարհի վրայ։

Երախտագիտութիւն՝ որով պիտի ճանչնանք իրենց ամէն բարիքն ու երախտիքը. պիտի ջանանք անոնց փոխարէնն ընել, պաշտպանել, կարօտութեան մէջ իրենց օգնել, նեղութեան ատեն մխիթարել, ծերութեան ատեն խնամել, անոնց յիշատակը պատուել։

Մեր պարտքերն առ անձն (*)՝ ասոնք են. զգուշանալ այն բաներէն որ մեր հոգիին կամ մարմինին կը վնասեն. մեղքերէ հեռու կենալ, որպէս զի Աստուծոյ բարկութիւնը մեր վրայ չհրաւիրենք, վայրկենական զուար-

---

### 99. ՀՐԱՀԱՆԳ

Հարցումներուն պատասխանեցէք (Ուղեցոյց, էջ 40):

1. Ի՞նչ է գիւղը (գարիյէ), աւանը (նահիյէ), քաղաքը (շէհիր), գաւառակը (գազա), գաւառը (սանճագ), նահանգը (վիլայէթ).

Ի՞նչ կ'ընէ գիւղապետը, աւանապետը կամ գիւղախորմ-բապետը (մուդիր), քաղաքապետը (շէհիր էմինի եւ պէլէտիյէ րէիսի), փոխ-կառավարիչը կամ տեղակալը (գայմագամ), կառավարիչը կամ գաւառապետը (միւթէսարրըֆ), նահանգապետը կամ կուսակալը (վալի)։

---

(*) Ի՞նչ ըսել է առ անձն, առ Աստուած, առ եղբայրն:

ճութիւններէ խոյս տալ եւ առաքինի կեանք ունենալ։ Նոյնպէս, եթէ կը սիրենք մեր անձը, պէտք է պահպանենք ու խնամենք մեր մարմինն ալ որ հոգիին բնակարանն է։

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Որո՞նք են մեր պարտքերը առ ծնողս։— Ի՞նչ բրած են մեզի՝ մեր հայրն ու մայրը։ — Մենք ի՞նչ ընելու ենք անոնց։ — Ի՞նչ պարտքեր ունինք մեր անձին։

---

## 75. ԳՐԱՎԱՐԺՈՒԹԵԱՆ ԴԱՍԸ

*Արմինէ գրավարժութեան դասին կը պատրաստուի, նախ գրչատուփը ձեռքը կ՚առնէ, կը նայի թէ գրիչը լա՞ւ է։*

*Գրասեղանին մէջ տետրակը կը փնտռէ, եւ կը հանէ սեղանին վրայ կը դնէ։*

*Շիփ-շիտակ կը նստի։ Ձախ ձեռքը տետրակին վերի կողմը, աջ բազուկը տետրակին վրայ դրած։ Արմինէ կուրծքը սեղանին չի կրթնցըներ, գրիչը առանց շատ սեղմելու, առաջին երեք մատներուն մէջ կը բռնէ, այնպէս որ գրչին ծայրը ճիշդ ու ճիշդ թուղթին վրայ գայ։*

*Յետոյ, Արմինէ կը սկսի գրել, ուշադրութեամբ օրինակին կը նայի եւ կրցածին չափ կը նմանցնէ անոր։ Առաջին տողերը շատ աղէկ չեն, բայց կամաց կամաց վայելուչ գրել կը վարժուի եւ տետրակին վարի տողե-*

---

**100. ՀՐԱՀԱՆԳ**

*Գրեցէ՛ք եւ բերնուց ըսէ՛ք զէ* (Ուղեցոյց, էջ 41)։

*Որո՞նք են Օսմ. Պետութեան գործերը վարող Նախարարութիւններն ու Պաշտօնատուններ, եւ ի՞նչ են անոնց պաշտօնները։*

րուն, իր գիրը քիչ մը կը նմանի օրինակին։ Արմինէ երբեք չ'աղտոտեր տետրակները։ Ո՛չ մելանի բիծ մը կայ անոնց մէջ, ո՛չ պատռած երես մը։ Ատոր համար, երբ տետրակ մը աւարտէ, կը տանի ծնողքին կը ցուցնէ, Մայրը գրէթէ միշտ վարձատրութիւն կուտայ անոր։

Եթէ Արմինէ շարունակէ իր ջանքը, գրավարժութեան մէջ առաջին մրցանակ պիտի առնէ, տարեկան քննութեան ատեն։

Շատ աղջիկներ կը ճանչնամ որ անոր չեն նմանիր, կը գրեն . . . կատուի պէս՝ յղրճած, խառնաշփոթ գիր մը։

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ կ'ընէ Արմինէ: — Ի՞նչպէս կը նստի գիր գրած ատենը: — Ի՞նչպէս կը դնէ աջ ու ձախ ձեռքերը: — Ի՞նչպէս կը բռնէ գրիչը: — Ի՞նչ ըսել է գիրի օրինակ: — Ո՞վ կուտայ զայն: — Ձեր տետրակները ի՞նչպէս կը պահէք: — Ո՞վ առաջին մրցանակ պիտի առնէ քննութեան ատեն:

---

## 76. ԱՐԻՒՆԻՆ ՇՐՋԱՆԸ

Մարդուն արիւնը կարմիր հեղուկ մըն է։

Մանրադէտը արիւնին մէջ երկու բան կը ցուցնէ, շինուկ ու կարմիր գնտիկներ։ Գնտիկներուն գոյնովը արիւնը կարմիր կը տեսնենք։

Արիւնը կը գտնուի սիրտին մէջ։ Սիրտէն դուրս կ'ելլէ արիւնը, երակներուն միջոցաւ կը պտըտի մարմինին ամէն կողմերը, ու կը դառնայ դէպ ի սիրտ։

---

## 101. ՀՐԱՀԱՆԳ

Հարցումներուն պատասխանեցէ՛ք (Ուղեցոյց, էջ 41):

1. Ի՞նչ ըսել է վաճառաշահ քաղաք (օրինակներ տուէք)։ 2. Ի՞նչ ըսել է ճարտարագործութիւն եւ ո՞ր քաղաքներ նշանաւոր են իրենց ճարտարագործական արտադրութեամբ։ 3. Ի՞նչ ըսել է առեւտրական նաւահանգիստ (օրինակներ տուէք)։

Արիւնին պտոյտը, երթալ ու վերադառնալը կը կոչուի արիւնի շրջան ։ Սիրտն ու երակները արիւնի շրջանին գործարաններն են ։

Սիրտը միսէ քսակ մըն է, վերէն վար երկու մասի բաժնուած է ներսէն, աջ կէսը կ'ըսուի աջ սիրտ, ձախ կէսը կ'ըսուի ձախ սիրտ ։ Ձախ սիրտը կարմիր արիւնին տեղն է, աջ սիրտը սեւ արիւնին տեղն է ։ Կարմիր արիւնը մաքուր կը համարուի ու օգտակար է, սեւ արիւնը ապականուած կը համարուի ու անօգուտ է, պէտք ունի մաքրուելու ։

Սիրտը կուրծքին մէջ է, երկու թոքերուն մէջտեղը, ձախ ստինքին ետին ։

Երակները նեղ խողովակներ են ու երկու տեսակ կ'ըլլան, շնչերակ ու սեւ երակ ։ Շնչերակներէն կարմիր արիւն կ'անցնի, սեւ երակներէն սեւ արիւն կ'անցնի ։

---

## 77. ԾՆՈՒՆԴ

Զորթան կը հարէ հարսնուկ խորոտիկ՝
Մինչ դուրսը կուգայ ձիւնն հատիկ հատիկ.
Բաղցր յիշատակներ անհուն խըռովքով
Կուգան, կը շարուին լուռ մունջ, քովէ քով ։

---

### 102. ՀՐԱՀԱՆԳ

*Ըսէ* (Ուղեցոյց, էջ 42)։

1. Որո՞նք են Ողնայարային կենդանիները ։ 2. Ի՞նչ հանգամանք ունին Ստնաւոր կամ Կաթնտու կենդանիները ։ 3. Իսկ Թռչուննե՞րը ։ 4. Սողուննե՞րը ։ 5. Երկակենցաղնե՞րը ։ 6. Ձուկե՞րը ։ 7. Ասոնց ամէն մէկին օրինակներ տուէք ։

— «Տօ՛ն եկաւ, կ'ըսէ, կաքւու պէս ցնծուն,
Ամէն տեղ խնդում, ամէն տեղ ձայն ձուն.
Ջուլհակն իսկ թողեր մաքոք, հոր, ցից, հէնք,
Խեւ-խնդում կ'ըլլայ մոռցած իր խոնջէնք։

— «Աշխարհք ձայն կըտրեր՝ հարկ հարկինք անուշ,
Բողող, հարանի, տաշօն, կոճն ու գուշ,
Մէկէն կը թօթուեն սեւ սուգն ու փոշին,
Լաճերն ալ չը պիտ' հալին ու մաշին։

— «Առտըւանց կ'ելլեն հարսերն հոգեխռով.
Խըմոր կը թըրեն շարմղուն ալիւրով.
Քաղցկուն, կըսկուծ հաց՝ փողոցէ փողոց,
Կը տրոփէ սիրտը մանտըրտիկ տղոց։

— Մինչեւ օրարձակ կը վառի թոնիր,
Գաթա, փլիկ կ'եփեն ճերմակ ու կարմիր,
Տաշտիկ, չօթ՝ վառ վառ՝ կարագն ու կոգին
Ի՜նչ նուրբ հեշտանքով կը լեցնեն հոգին։

---

### 103. ՀՐԱՀԱՆԳ

*Ըսէ՛ք ու գրեցէ՛ք թէ*

1. Ի՞նչ է դասակը կամ գումարտակը (պէօլիւկ), եւ ո՞վ կը կառավարէ։ 2. Ի՞նչ է վաշտը (թապուր) եւ ո՞վ կը կառավարէ։ 3. Ի՞նչ է գունդը (ալայ) եւ ո՞վ կը կառավարէ։ 4. Ի՞նչ կ'ըսէ հրամանատարը (օրտու միւշիրի)։ 5. Զօրաբաժնի հրամանատա՞րը (ֆէրիք)։ 6. Գնդապե՞տը (միրալայ)։ 7. Հազարապե՞տը (պինպաշը)։ 8. Հարիւրապե՞տը (եիւզպաշը)։ 9. Յիսնապե՞տը (գօլ աղասը)։ 10. Տասնապե՞տը (օնպաշը)։ 11. Սպայակո՞յտը (էրքեանը հարպ)։

— « Ու երբ կը չալէ իրիկուան կոչնակ՝
Աւլած , ըստըկած՝ բուխերիկ , պատատակ ,
Շէն , ծիծաղերես հարսն ու տանտիկին ,
Կը տապկեն խմթման ձուկը խընդագին ։

— « Գիշերն ալ աստղը չբըրդած լուսին ,
Քունէն արթնցած ամէնք միասին՝
Կ՚երթան ափ կ՚առնէն խումբ խումբ ժամուն դուռ ։
Մեծ հարսն ու միջնեկ , նունուկն ու կեսուր ։

— « Հոն հալւոր պառաւ , ծերունին տարէց
Տան պզտիկներով կրտսեր ու երէց ․
Մատղաշ հարսներու այն ի՜նչ խուռն երամ ,
Ի՜նչպէս փայլ կուտայ չնորհքն անթառամ ։

— « Անտեղ ի՜նչ աղուոր կը հնչէ « Զարթի՛ք »
Ի՜նչ հընհընուքով մարդ կ՚ընէ մըտիկ ,
Ու երբ կը սկըսին վեհ « Խորհուրդ խորին »
Ի՜նչ քաղցր արցունքներ դար վար կը ծորին ։

— « Ա՜խ չարականներն այն հոգեհըմայ ,
Ի՜նչպէս կը խռովեն սրտիկս , հոս հի՛մայ ,
Այն ճոխ Գանձերուն աղուո՜ր անհըման ,
Ղուրպան թող ըլլան սիրտս հոգիս լըման ։

---

**104․ ՀՐԱՀԱՆԳ**

*Սորվեցէ՛ք ու գրեցէ՛ք թէ* (Ուղեցոյց , էջ 24) (*) ։

1․ *Որո՞նք են , Օսմ․ Պետութեան մէջ , օրէնքին գործադիր իշխանութիւնները ։* 2․ *Ի՞նչ է այդ դատարաններուն անունն և իւրաքանչիւրն ի՞նչ գործեր կը տնօրինէ ։*

(*) Տես նաեւ ՆՈՐ ԴՊՐՈՑ, Է․ Գիրք, էջ 6, եւայլն ։

— «Սուրբ պատարագին այն անհեղ տեսիլ,
Ուր կ'երթայ մարդուս միտքն ամբողջ սուզիլ,
Այն ի՞նչ մղձուկներ՝ կուտան հեշտ, սիրուն՝
Արթընած ձայներն տիրացուներուն։

— «Հապա ժամէ՞ն ետք... Ջըրօրհնեաց թափո՞ր...»
Այս երազներով՝ ցընցող, հեշտօրօր՝
Ջօրթան կը հարէ աղջիկ խորոտիկ
Մինչ դուրսը կուգայ ձիւնն հատիկ հատիկ։

Մ. Թ.

(Բիւրակն, Բ. Շրջան, Թիւ 1–2)

---

## 78. ՊԶՏԻԿ ՍՏԱԽՕՍՈՒԹԵԱՆ ՄԸ ՀԵՏԵՒԱՆՔՆԵՐԸ

Տղա՛ք, մտիկ ըրէք, ձեզի պատմութիւն մը պիտի պատմեմ, որ պիտի ցուցընէ թէ, պզտիկ ստախօսութիւն մը ի՞նչ սոսկալի հետեւանքներ կրնայ ունենալ։

Արդէն շատ տարիներ անցած է որ աս դէպքը ձեր տարիքը ունեցող փոքրիկ տղու մը գլխուն եկած է։

Աս տղան հիմա մարդ եղած է, գրեթէ ծերունի մը, բայց ան երբե՛ք չէ մոռցած աս եղելութիւնը և բնաւ ալ չպիտի մոռնայ մինչև որ մեռնի։

Ցովհաննէսին ծնողքը (որովհետեւ աս էր անոր անու-

---

**105. ՀՐԱՀԱՆԳ**

Ի՞նչ ըսել է (Ուղեցոյց, էջ 43):

1. Բեւեռ, հասարակած, միջօրէական, լայնութեան գիծ, երկայնութեան գիծ, առանցք։ 2. Մոլորակ, արբանեակ, գիսաւոր, խաւարում, օդերեւոյթ, օդաքար, մթնոլորտ, տիեզերք, համաստեղութիւն։

նը) զինք մինակ ձգած էին տունը, իր դաստիարակուհիին հետ մէկտեղ, որ իրմէ մեծ՝ խեղճ և որբ մնացած աղջիկ մըն էր, և շատ ատենէ ի վեր իրենց տունը պաշտօն կը վարէր։

Յովհաննէս, որ մայրիկին խօսք տուած էր աւելի խելօք կենալու, անոր սենեակը գացած՝ կամացուկ կամացուկ կը խաղար. — խաղացած ատենը վառարանին վրայ տեսաւ ոսկի դրամ մը։ Առաւ անիկա, անհոգ, առանց միտքէն գէշ բան մը անցնելու, և կ՚զբօսնէր զարմացած անոր վրայ, որ այնքան գեղեցիկ կը ցոլանար։

Անոր աւելի աղէկ փայլիլը տեսնելու համար, բաց պատուհանին առջև գնաց ու արևուն ճառագայթներուն դէմ բռնեց։ Այս կերպով մատուըներուն մէջ այնչափ դարձնելով խաղայ՝ որ յանկարծ ձեռքէն թռաւ, ինկաւ պարտէզին մէջ։

Յովհաննէս շուտ մը սանդուխներէն վար վազելով պարտէզ իջաւ ու պատուհանին առջև, պատին տակերը շատ մը փնտռեց, բայց չգտաւ՝ ինչու որ բարձր խոտերուն մէջ չէր տեսնուեր։

Բոլորովին տրտմած՝ նորէն ներս մտաւ։ Բայց ասոր վրայ սրտին մէջ ձայն մը կը լսէր որ իրեն կ՚ըսէր. «Յանցաւո՛ր ես, ինչո՞ւ խաղացիր ոսկիին հետ, աղէկ

---

**106. ՀՐԱՀԱՆԳ**

Ի՞նչ բաներ կը կոչուին (Ուղեցոյց, էջ 44):

1. *Մեքենական արտադրութիւն (օրինակներ տուէք)*։ 2. *Ձեռարուեստական արտադրութիւն (օրինա՛կ)*։ 3. *Հողագործական արտադրութիւն (օրինա՛կ)*։ 4. *Արուեստական ջերմութիւն (օրինա՛կ)*։ 5. *Ուրկի՞ց կը բղխի բնական ջերմութիւնը*։ 6. *Շփումով ի՞նչ կը գոյանայ*։

*գիտես թէ, երբ ծնողքդ քովդ գտնուէին, թող չպիտի տային որ անոր հետ խաղաս։»*

*«Պա՜հ, կ'ըսէր ինք իրեն, մայրիկիս միտքէն շատոնց ելած է, անիկա չպիտի գիտնայ թէ ոսկին կորսուած է, և մէկուն բան մ'ալ չպիտի ըսեմ, ո՞վ պիտի գիտնայ։»*

*Երբ Յովհաննէսին մայրիկը տուն եկաւ, շիտակ վառարանին քով գնաց ու ըսաւ. «Յովհաննէ՛ս, մեր հոս չեղած ժամուն, աս տեղ խաղացած ատենդ, դեղին աղուոր դրամ մը տեսա՞ր։»*

*Պզտիկ տղան մէկէն ի մէկ կարմրեցաւ, ներսէն ձայն մը կ'ըսէր իրեն, «Յանցանքդ խոստովանէ՛. պատմէ՛ եղածը, և չպիտի պատժուիս։»*

*Ա՜հ, երանի՜ թէ Յովհաննէս մտիկ ըրած ըլլար աս ձայնին։ Բայց խեղճ տղան աս ձայնին դէմ գոցեց իր սիրտը, ու սուտ խօսեցաւ։*

*«Չէ՛, մա՛յրի՛կ, ըսաւ, չէ՛, ես բան մը չտեսայ հոդ.»*

*Ետքը, յանցանքը փոքրիկ դաստիարակուհիին վրան ինկաւ։ Չինքը կանչել տալով հարցուցին թէ ան տեղէն ո՞վ առեր է ոսկին։ Խեղճ աղջիկը «Ես չ'առի» ըսելով սկսաւ լալ։*

*Նորէն Յովհաննէսին հարցուեցաւ։ Ա՜հ, այս անգամ պիտի խոստովանէր ըրածը, բայց վախցաւ պատժուելէն, չըսաւ. այս անգամ ալ իր վախկոտութիւնը զըղ-*

---

**107. ՀՐԱՀԱՆԳ**

*Բերնուց ու գրով պատասխանեցէք* (Ուղեցոյց, էջ 44) :

1. *Ի՞նչ ըսել է աւելորդապաշտութիւն, (օրինակներ տուէք)։* 2. *Ի՞նչ ըսել է ուղղամտութիւն, (օրինակներ տուէք)։* 3. *Ի՞նչ ըսել է հաւատարմութիւն։* 4. *Ժուժկալութիւն։* 5. *Ողջախոհութիւն։* 6. *Յոռետեսութիւն։*

*Ջումէն աւելի զօրաւոր եղաւ, նորէն սուտ խօսեցաւ, ու խեղճ աղջիկը պարզապէս իբրև գող վռնտուեցաւ։*

*Ցովհաննէս գիշերը չէր կրնար քնանալ։ Իր միտքին առջևէն չէր կրնար հեռացնել դաստիարակուհիին յուսահատ և արցունքներով թրջած խեղճուկ դէմքը։*

*«Անիկա անմե՛ղ է, կ'ըսէր միտքին մէջ, և իմ տեղս ինք կը պատժուի։ Պէտք է որ յանցանքս խոստովանիմ։ Վաղը ամէնն ալ պիտի ըսեմ. այո՛, վաղը պիտի երթամ մայրիկիս ծունկերուն վրայ իյնամ եւ պիտի աղաչեմ որ զիս չծեծէ ու իմ փոքրիկ դաստիարակուհիս անիրաւ տեղը տունէն չվռնտուի։»*

*Ափսո՛ս, վաղը ա՛լ ժամանակն անցած էր, ամէն ինչ լմնցած էր։ Խեղճ աղջիկը, ինքզինքը անիրաւ կերպով՝ գողութեամբ զրպարտուած տեսնելով, գլուխն առած գացած էր, կէս գիշերին։ Առտուն, անոր մարմինը գեղացիները մեռած բերեր էին։ Մութ գիշերին մէջ խեղճը գետն ինկած էր ու խեղդուած։*

*Անկէ ետքը Ցովհաննէս ամէն ինչ պատմեց։ Բայց, ո՛չ իր հայրիկը եւ ո՛չ մայրը զինքը չծեծեցին, ինչու որ խիղճին խայթը եւ յուսահատութիւնը զինք հիւանդանկողին ձգեցին։ Շատ օրեր, շատ գիշերներ իր պզտիկ անկողինին վրայ պառկած մնաց Ցովհաննէս, եւ միշտ սոսկալի երազի մը մէջ կը տեսնէր խեղճ աղջիկին մըռ-*

---

**108. ՀԱՐՑԱՐԱՆ**

*Ի՞նչ բանի կը գործածուի (Ուղեցոյց, էջ 45)։*

1. *Սոխինձը*։ 2. *Բրքումը*։ 3. *Սանդը*։ 4. *Սնդուսը*։ 5. *Սունկը*։ 6. *Խէժը*։ 7. *Ձգախէժը*։ 8. *Սուտակը*։ 9. *Սպունգը*։ 10. *Վարսակը*։ 11. *Բեհեզը*։ 12. *Տրմուխը*։ 13. *Տօսախը*։ 14. *Քարիւղը*։ 15. *Կինամոնը*։ 16. *Քչիրը*։ 17. *Օճառը*։ 18. *Ծո՞ր* (*Բոյա*)։ 19. *Ծոպը*։ 20. *Կղմինտրը*։

*դոյն դէմքը որուն մեռնելուն՝ իր մէկ ստախօսութիւնը պատճառ եղած էր։*

*Վերջապէս շատ օրերէ ետքը, ա՛լ պզտիկ Յովհաննէս առողջացած էր իր հիւանդութենէն՝ միտքը դնելով այլ եւս երբեք սուտ չխօսիլ։*

*Այն սոսկալի օրէն ետքը, իր շրթունքները երբեք չեն ստած։ Բայց անկէ ետքը բնաւ գտած չէ առաջուան ուրախ-զուարթութիւնը։ Եւ այսօր, այնքան տարիներ անցնելէ ետքը, իր ըրած չարիքին յիշատակը դեռ ծանր բեռի մը պէս կը ճնշէ իր սրտին վրայ։*

*Տղա՛ք, եթէ փորձուիք ստել՝ յանցանքնիդ ծածկելու համար, միտքերնի՛դ բերէք այս պատմութիւնը զոր հիմա պատմեցի ձեզի՝ մտածելով որ մէկ հատիկ ստախօսութիւն մը կրնայ անդարմանելի վիշտի մը պատճառ ըլլալ։*

---

**ԱՌԱԾ**

*Կատուին դունչը միսի կտորին որ չհասաւ՝ «Այսօր Ուրբաթ է» ըսաւ։*

---

**109. ՀՐԱՀԱՆԳ.**

*Զանազանեցէք վայրի ծառերն ու պտղատու ծառերը (Ուղեցոյց, էջ 46)։*

*Կաղնի, թթենի, մրտենի, դափնի, նռնենի, սոճ, թզենի, տանձենի, կաղամախի, շագանակի, նոճի, հացի, ալորենի, զկեռի, բարտի, ցարասի, արմաւենի, դժնիկ, դղքի, խնձորենի, եղեւին, կնձնի, մրտենի, նշենի, սերկեւլի, թըմբենի, հալուէ, ծիրանի, ճագոմ, ընկուզենի, չոճի, սօսի, դեղձի, բալի, տօսախ, յունապի, բռնչի, կեռասենի, հաղարջենի, պիստակենի, մորմենի։*

# ԳԼՈՒԽ Թ.

## I. ՍԻՐԱՄԱՐԳ

*Սիրամարգը գեղեցիկ թռչուն մ'է․ իր տեսքը, կազմուածքին համաչափութիւնը, հիանալի ու նազելաշուք քալուածքը կը զմայլեցնեն մարդը․ ինքն ալ, կարծես, կը սքանչանայ իր գեղեցկութեան վրայ։ Սիրամարգին գոյնզգոյն փետուրները, որոնք գեղատեսիլ ծաղիկներէն գերազանց փայլ մ'ունին, ամէն տարի գոյն կը փոխեն ու կը թափին։ Անախորժ ձայն մը ունի, և դժուար կը թռչի։ Քնանալու համար ծառի վրայ կը թառի կամ տանիքի վրայ կը կծկտի։ Հաւնոցները շատ անգամ տակնուվրայ կ'ընէ, եւ պարտէզներն անապատ կը դարձնէ։ Եգը չունի արուին զմայլելի տեսքը, մանաւանդ երկայն ու շողշողուն տտունը։*

---

### 1. ՀՐԱՀԱՆԳ

Հետեւեալ բառերուն սկիզբը դրէ՛ ան, ապ․ տ, չ, դժ կամ տժ ժխտական մասնիկներէն մէկը (Ուղեցոյց էջ 46)։

1. **Ամօթ, տուակ, բան, բարբառ, գործ, գին։**
2. **Երախտիք, երասան, շնորհք, ուշ, օրէն։**
3. **Գէտ, գեղ, կար, մարդ։**
4. **Գոյ, տես, քահանայ։**
5. **Գոհ, բախտ, կամակ։**

Հարց․ — *Ի՞նչ իմաստ կու տան նախադաս մասնիկները* ․ ան, ապ, տ, չ, դժ։

## 2. ՆԱԽԱՊԱՇԱՐՈՒՄ

*Կան բաներ որոնց կը հաւատան մարդիկ, թէպէտ այդ բաները սուտ են։ Այսպիսի սուտ բաներուն հաւատացողին աւելորդապաշտ կ'ըսեն։*

*Օրինակի համար, երբ յանկարծ արիւնը ականջին զարնուի ու դռընչէ, աւելորդապաշտը կ'ըսէ. «Ականջս կը խօսի, զիս կը յիշեն», եւայլն։*

*Երբոր բանի մը վրայ քիչ մ'ատեն նայի. «Աչքս կը ռպաղի, կ'ըսէ, կամ հիւր պիտի գայ»։*

*Երբոր, կերակուր կերած ատեն, հացին պատառը գետինն իյնայ. «Անօթի մարդ կայ» կ'ըսէ, կամ «խեր չէ»։*

*Երբոր ափը քերուի, կը կարծէ թէ ստակ պիտի առնէ կամ նամակ եւ կամ խըրմէք պիտի գայ։*

*Երբոր սեղանի վրայ գինի կամ սուրճ թափի, աղէկ նշան կը սեպէ. եթէ եղ թափի. «Գէշ նշան է» կ'ըսէ։*

*Աւելորդապաշտը կը կարծէ թէ աղէկ օրեր ու գէշ օրեր կան. ուստի երեքշաբթի օրերը նոր գործի չի սկսիր, ճամբայ չ'ելլեր, տղան դպրոց չի ղրկեր։*

---

### Զ. ՀՐԱՀԱՆԳ

Գիտ — *Յետագայ մասնիկներն յատուկ իմաստ մը կ'ընծայեն բառերուն որոնց կը կցուին։ Դասատուները կրնան տալ անոնց վրայ հարկ եղած բացատրութիւնը* (Տե՛ս Նոր Քերականութիւն Դալբեան էջ 11 եւ 15):

*Հետեւեալ բառերը ածանցեցէք* (Ուղեցոյց, էջ 47)։

1. *Ական մասնիկով ածանցեցէ՛ք սա բառերը. — Թագաւոր, զինուոր, եկեղեցի, եղբայր, հայր, մայր, այր, վաճառ, ընկեր, որդի, ծնող, քաղաք։*

2. *Ային մասնիկով ածանցել. — Գազան, դաշտ, ծով, մաղձ, ցամաք, քաղաք, օդ, հանք, հարաւ, արեգակն, հող։*

3. *Աւէտ մասնիկով. — Ծաղիկ, խոտ, խաշն, դալար, խունկ, բուրումն, հոտ, պտուղ, այգի, ինչ, փրկութիւն, շահ, ծառ, երանութիւն։*

Ծան. — *Ուշ դնել փոփոխումի ու զեղչումի կանոններուն։*

*Ան կը կարծէ թէ կօշիկ կորսնցնելը նեղութենէ ազատելու՝ և աչքին խաղալը ցաւալի դէպքի մը նշան են. մինչդեռ առաջինը պարզ դիպուածի մը՝ իսկ երկրորդը ջղային շարժումի արդիւնք է։*

## 3. ՋՈՒԹԱԿՆ ՈՒ ԱՂԵՂԸ

*Ջութակահար մը կը նուագէր հանդէսի մը մէջ։ Ներդաշնակ ու գեղեցիկ ձայներ կը թրթռային նուագարանէն. իր ճարտար ձեռքին մէջ, գործիքը՝ կարծես շունչ ու հոգի առած՝ կը գեղգեղէր իբրև թռչնիկ, և զմայլումով կը համակէր ունկնդիրները որ անդուլ ծափերով ու «կեցցէ»ներով կը գովացնէին սրահը։ Աղեղը ըսաւ Ջութակին. «Կը լսե՞ս, ը՛նկեր, ի՜նչպէս կը զմայլին վրաս։ Կ'երթամ, կուգամ, կ'ոստոստեմ. ինծի՛ կը պատկանի այս յաջողութեան փառքն ու պատիւը։ — Ապո՜ւշ, պատասխանեց Ջութակը, ի՛մ թելերս են որ ձայն կը հանեն, իմ փո՛րս է երգողը, զի՛ս կը ծափահարեն։ — Գնա՛ բանդ, մեծ-փոր պարոն, հպարտին մէկն ես դուն։ — Դո՛ւն ալ, վտիտ մորճիկ, որ խենդի պէս կը ցատքռտես լարերուս վրայ, մնապարծի՛ն մէկն ես։»*

---

### Յ. ՀՐԱՀԱՆԳ

(Ուղեցոյց, էջ 47):

4. **Աւոր** *մասնիկով.* — *Ահ, զօր, կամք, նշան, հռչակ, շահ, փառք, կեղծ, չիք, բան, գոյն, լոյս։*

5. **Գին** *մասնիկով.* — *Ծաւ, դառն, սիրա, ողբ, ոյժ, արտում, տխուր, լալ, ողորմ։*

6. **Գոյն** (*) *մասնիկով.* — *Բաղցր, առատ, մեծ, փոքր, կրտսեր, նուազ, առաւել, լաւ, աղքատ, ճոխ։*

(*) Հոս՝ գոյն *մասնիկը չի նշանակեր* երանգ, բոյր. այլ՝ շատութիւն:

*Նուագը աւարտեցաւ. Ճարտար արուեստագէտը աղեղն ու ջութակը տեղաւորեց տուփին մէջ և փակեց զայն։ Երկու պարծենկոտները լռութեան մատնուեցան ու վիճաբանութիւնը վերջացաւ։*

*Աշխարհիս մէջ կան մարդիկ ա՛յնքան տխմար՝ որ իրենց վերադրելով՝ կը պարծին ուրիշին արժանիքովը։*

---

## 4. ԱՐՋՆ ՈՒ ԹՈԺԻՒՆԸ

*Արջ մը փոքրիկ թոժիւն մը ծնաւ, ա՛յնքան տգեղ որ բնաւ կենդանիի կերպարանք չունէր. այլանդակ ու սոսկալի զանգուած մ'էր։ Արջը՝ այսպիսի ձագ մը ունենալուն վրայ ամօթահար՝ կ'երթայ իր դրացի Որին կը գտնէ. «Ի՞նչ պիտի ընեմ, սանամա՛յր, կ'ըսէ անոր, ի՞նչ պիտի ընեմ այս հրէշը։ Խեղդե՞լս կուգայ։»*

*— Չըլլա՛յ որ ատանկ բան ընես, ըսաւ անոր՝ շաղակրատ Թռչունը, ուրիշ արջեր ալ տեսած եմ միեւնոյն մտահոգութեան մէջ. գնա՛, կամաց կամաց լզէ՛ ձագուկդ. քիչ օրէն սիրուն ու աղուոր պիտի երեւի աչքիդ, եւ անով երջանիկ պիտի ըլլաս։» Մայրը դիւրաւ հաւատաց, ընդ երկար լզեց ձագը որ վերջ ի վերջոյ աղուորնալ սկսաւ։ Արջը գնաց շնորհակալութիւն յայտ-*

---

### 4. ՀՐԱՀԱՆԳ

( Ուղեցոյց, էջ 48 ) :

7. *Եայ մասնիկով* (*). — *Ադամանդ, բեհեզ, փղոսկր, արծաթ, կապար, չղարչ, ծովեզերք, մաշկ, պղինձ։*

8. *Եան մասնիկով. — Արեւել, Բաբելոն, Ներսէս, Կորդ, Մեսրոպ, Վենետիկ։*

9. *Ալի մասնիկով. — Շնորհ, ցաւ, ողբ, զարման, տաղտուկ, գիրգ, անձուկ, ցանկութիւն, պանծ, կսկիծ։*

(*) Եայ *մասնիկին տեղ կը գործածուի նաև* է. (Ադամանդէ, ոսկիէ, արծաթէ, փայտէ, հուրէ, *եայլն*)։

*նել Որիին. «Եթէ համբերելու խորհուրդ չտայիք, ըսաւ, անգթօրէն յօշոտած պիտի ըլլայի ձագուկս, որ այժմ կեանքիս բոլոր հաճոյքն է։»*

---

## 5. «ԱՅՈ՛»

### ( ՀԼՈՒԹԻՒՆ ՈՒ ՀՆԱԶԱՆԴՈՒԹԻՒՆ )

*Երեք գիրէ բաղկացեալ կարճ բառ մը կայ, զոր տղաք պարտին սիրել ու յաճախակի գործածել։*

*Այս բառն է . . . «ԱՅՈ՛»։*

*Հլու և հնազանդ տղոց բառն է ան։*

*Հակառակն է այն տգեղ «Ո՛Չ» բառին, զոր խեռ ու անհնազանդ տղաք կը գործածեն։*

*Մտի՛կ ըրէք Մարթան, երբ մօրը հետ կը խօսի, եւ օրինա՛կ առէք անկէ։*

*«Մարթա՛, ժամը եօթն է, ելի՛ր։»*

*— Այո՛, մայրիկ, ա՛նմիջապէս։*

*«Մարթա՛, եկո՛ւր նախաճաշդ ըրէ՛։»*

*— Այո՛, մայրիկ, հի՛մա, շուտո՛վ։*

---

### 5. ՀՐԱՀԱՆԳ

( Ուղեցոյց, էջ 48 ):

10. *Ելի մասնիկով. — Սէր, ներում, պաշտում, գովութիւն, փափաք, աւաղ, խոստ, խունկ, երկրպագութիւն, նախանձ։*

11. *Եղ մասնիկով. — Ահ, զօր, համ, հիւթ, մազ, ուժ, հանճար, անձն, գոյն, ինչ, մարմին, շուք, թեկն։*

12. *Եղէն մասնիկով. — Ասր, արծաթ, բոց, բանջար, հող, քար, միրգ, ոսկի, թուղթ, ապակի, բուրդ, հուր, լոյս։*

«Մարթա՛, դասդ սերտէ՛։»

— Այո՛, մայրիկ, գիրքս ձեռք կ՚առնեմ կոր։

«Մարթա՛, դպրոց գնա։

— Այո՛, մայրիկ, կ՚երթամ կոր։

Ձեզի՛ հարցնեմ, աղէկ չէ՞ աս։

Կարճ բառով մը տղաք սիրելի կ՚ըլլան եւ պատժուելէ վախ չեն ունենար։

Անոնց տեղ եթէ ես ըլլայի միշտ պիտի ըսէի. «Այո՛, այո՛»։ Կանուխէն սորվեցէք յօժարութեամբ հնազանդիլ. հլութիւնը ամենաթանկագին յատկութիւններէ մէկն է։

---

## 6. ԱՐԵՒՆ ՈՒ ԼՈՒՍԻՆԸ

Արեւն ու լուսինը երկու փայլուն աստղեր են որոնք կարծես աշխարհի շուրջը կը դառնան եւ փոխն ի փոխ կ՚երեւան ու կը կորսուին։ Արեւն ալ, լուսինն ալ կրնան անտես ըլլալ՝ ամպերէն ծածկուելով ու խաւարելով։

Արեւը աւելի փայլուն է քան լուսինը. լոյսի ու ջերմութեան հնոց մ՚է ան. իր արձակած լոյսը իրեն յատուկ է, եւ այդ լոյսով կը գոյանայ աշխարհի վրայ ցորեկ։ Արեգակն է միշտ բոլորակ։

---

### Զ. ՀՐԱՀԱՆԳ

(Ուղեցոյց, էջ 48-49)

13. Եւի մասնիկով. — Հայր, մայր, խոզ, վարդ, խնձոր, թութ, խունկ, ձէթ, նուշ, մոր, վայր, քաղաք, այծ։

14. Ի մասնիկով. — Դեղձ, ծիրան, բալ, սերկեւիլ, կաղին, խողկաղին, աղ, արժան, վայր, հաց։

15. Իկ մասնիկով. — Փոքր, հայր, մայր, մամ, անտուն, թաշուն, ձուկ, մուկ, թուշ, նուշ, փուշ, փոր, խուց։

Լուսինը նուազ լուսաւոր է, լոյս կուտայ առանց ջերմութեան. իր լոյսը արեւուն ցոլացումն է։ Լուսինը այլ եւ այլ ձեւեր կ՚առնէ. շատ անգամ մահիկի ձեւով կ՚երեւայ։

---

## 7. ՍՏԱԽՕՍԻՆ ՊԱՏԻԺԸ

Փոքրիկ հովիւ մըն էր Միհրան,
Որ ամէն օր դաշտին վըրան
Արածելու կ՚երթար առտուն
Հօտն իր գեղին ոչխարներուն։

Օր մը նեղուած հոն մինաւոր՝
Ըսաւ. «Խաղ մը խաղանք աղուոր.»
Եւ ըսկըսաւ պոռալ ուժով.
«Գա՛յլ կայ, գա՛յլ կայ, հասէ՛ք շուտով։»

Գեղացիներ եկան հասան,
Ո՛չ գայլ գըտան, ո՛չ ալ գազան.
Քահ քահ խնդաց լաճն աներես
Ըսաւ անոնց. «Խաբեցի՜ ձեզ։»

---

### Դ. ՀՐԱՀԱՆԳ

(Ուղեցոյց, էջ 49):

16. Ակ մասնիկով. — Գետ, լեզու, լիճ, ծով նաւ, ծիծեռն, դաշն, որդի (*). հոգի, աղաւնի, պատանի, հիւղ, ձոր, դաստ, դաս։

17. Ուկ մասնիկով. — Տաք, պաղ, եռ, պատառ, շընորհ, անմեղ, աչ, դառն, հորթ, ձագ, հարսն, կարմիր, ճերմակ, սեւ, խեւ։

18. Իչ մասնիկով. — Գիր, բիր, նեղ, երգ, ցոյց, կաքաւ, խափան, սուրբ, կափար։

---

(*) Բարդութեան մէջ ի գիրը ե կ՚ըլլայ։

Որ մ'ալ գայլեր եկան իրաւ.
Մարդ իր ձայնին մտիկ չըրաւ,
Մէկը չեկաւ օգնել անոր,
Հովիւն եղաւ կտոր կտոր։

---

## 8. ՆԱԽԱՊԱՇԱՐՈՒՄ (Տար.)

*Պակաս չեն մարդիկ որ կը հաւատան թէ ոգիներ ու ճիւաղներ կան, եւ երբ գիշերը մութ տեղ մը գտնուին, կը դողան՝ վախնալով որ ոգին կամ ճիւաղը իրենց չերեւի։*

*Խեղճ Օհան կը հաւատայ այս բաներուն։ Անգամ մը քնանալու ատեն յանկարծ արթնցաւ եւ սկսաւ պոռալ։ Ի՞նչ կար։ Երազին մէջ տեսած էր որ ճիւաղներն եկեր՝ քովը նստեր են եղեր։ Խեղճը չէր գիտեր թէ այդ ստուերը կամ ուրուականները սնոտի բաներ են՝ իր երեւակայութեան մէջ հնարուած։ Կ'երեւի թէ շատ կերակուր կերած էր, եւ անմարսողութենէն անհանգիստ քուն մը ունեցեր ու այլանդակ բաներ երեւակայեր էր։ Արդէն երազներն ի՞նչ են, եթէ ոչ՝ անորոշ ու չփոթ մտածումներ։ Երբեմն երազատեսներ զանոնք կը մեկնեն՝ միամիտները խաբելու եւ ստակ առնելու համար։*

---

### 8. ՀՐԱՀԱՆԳ

(Ուղեցոյց, էջ 49—50)։

19. *Ող մասնիկով.* — *Սէր* (*), *չէն, տունկ, շահ, բեր, ծին, կատար, տես, քնին։*

20. *Ած մասնիկով.* — *Գութ, ողորմ, ցաւ, մաշիլ, գիր, անց, խորշում, կատար, հան, ման, կար, շահ, աղ։*

21. *Ոյթ մասնիկով.* — *Ծածուկ, բուն, սովոր, ձանձիր, ճաս, երեկ, հաւաք, տես։*

---

(*) Ուշադրութիւն՝ գիրերու փոփոխման։

Կիներ կան որ թուղթ կը բանան, բակլայ կը նե-տեն, ասոր անոր փափաքը գիտնալու և բախ-տը գուշակելու համար. վհուկներ կամ կախարդներ՝ որոնք այլ և այլ հմայեկներ կ'ընեն, մարդ կը կապեն եւ այսպիսի հազար տեսակ խաբեբայութիւններ կ'ընեն։ Կը գտնուին նաեւ մարդիկ որ հիւանդ բժշկելու համար գիրքեր կը կարդան եւ որոնք բժշկելու տեղ կը սպաննեն։

Աններելի յանցանք է՝ այսպիսի խաբեբաներու հաւտալ։ Խելացի ու կրթեալ մարդը կը զգուշանայ նախապաշարումներէ։

---

## 9. ԱՌԱՋԻՆ ՄՐՑԱՆԱԿՍ

Որքա՜ն դողացի առաջին մրցանակի մը համար։ Ահա ստացայ զայն, ծնողքս գոհ եւ ուրախ են, եւ ես եր-ջանիկ եմ վասն զի կը վայելեմ քրտինքիս պտուղը։ Լաւ հոգ պիտի տանիմ, մաքուր պիտի պահեմ մրցանակս։ Թաւաքարտէ կողք մը կայ վրան, հաստատուն ու փայ-լուն՝ ոսկեզօծ նկարներով։ Մէջը 200 էջ կայ, ճիշդ ու ճիշդ գիրք մը, աղուոր ու օգտակար գիրք մը, կ'ուզեմ կարդալ անոր մէջի պատմութիւնները. պիտի ջանամ

---

**Թ. ՀՐԱՀԱՆԳ**

(Ուղեցոյց, էջ 50)

22. *Ուն մասնիկով.* — Եռանդ, երեր, սող, շարժ, խօս, շող, հաս, կանգ, թռիչ, հաստատ, պարար։

23. *Ուտ մասնիկով.* — Ապառաժ, աւազ, թաւ, յորձան, ոսկր, ջիղ, քար, տիղմ, ժայռ, վէմ, եղէգն, վախ, խախ-տել, մացառ։

24. *Ոտ մասնիկով.* — Արիւն, բոր, քոս, եռանդ, ժանգ, կասկած, խոց, փոթ, ոջիլ, միս, վաւաշ, լակ։

հասկնալ թէ ի՛նչ կը ներկայացընեն այն պատկերները որ գրեթէ ամէն էջի վրայ կը տեսնուին: Պիտի հասկընամ ու քրոջս ալ պիտի հասկցնեմ: Եւ երբ լաւ մը հասկնամ, իրիկունները անոր մէջէն գեղեցկագոյն հատուածները պիտի կարդամ հօրս ու մօրս: Ասով՝ թէ՛ անոնք եւ թէ՛ ես հաճոյք պիտի զգանք: Իրաւ որ շատ հաճելի բան է մրցանակ առնել, պիտի ջանամ գալ տարի ալ մրցանակներ շահիլ:

## 10. ՅՈՌԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

Զատկի տօնին առթիւ, բարեկամի մը տուն շնորհաւորութեան գացած ըլլալով՝ տեսայ չարագործ մանկիկ մը, որուն չարութեան պատճառ՝ բո՛ւն իսկ իր հայրն ու մայրն էին: Երբ ան իր մամիկին մազերը քաշէր, կը քաջալերէին զինք՝ ըսելով. «Քաշէ՛, քաշէ՛, մանկիկս:» Երբ կատուն ձեռքին մէջ առած կը չարչարէր, հաճոյք կը զգային ու կ՚ըսէին. «Ոտքէ՛ն քաշէ, մա՛նկիկ, ականջէ՛ն, պոչէ՛ն քաշէ:» Այսպէս չարութեան վարժեցուցին զայն իր մատաղ հասակէն: Երբ իր թոթով լեզուով հայհոյանքներ ու հաճելի խօսքեր կ՚ըսէր, կ՚ուրախանային, կը խնդային ու կը փափաքէին որ նորէն կրկնէ: Երբ իր

---

**10. ՀՐԱՀԱՆԳ**

(Ուղեցոյց, էջ 50):

25. *Կոտ մասնիկով.* — *Վախ, նուազ, ամչնալ, խպնիլ, մոռացում, մսիլ, դեդեւիլ, դանդաղ, պարծենալ:*

26. *Որդ մասնիկով.* — *Նախ, ձախ, սայլ, ժառանգ, նաւ, կաճառ, յաճախ, առաջին, քանի, հանապազ, անց, որս, լուծ:*

27. *Ուրդ մասնիկով.* — *Խորհիլ, յագ, նուազ, աճիլ, պարապ, արձակ:*

կամքը կատարել ուզէր, կը կատարէին, ասով զօրացուցին զայն յամառութեան մէջ։ Երբ մանուկը վեց տարեկան եղաւ, ծնողքը ա՛լ չէին համբերեր՝ անոր ծայրայեղ ու անտանելի վարմունքին. զինքը վախցնելու եւ հանդարտեցնելու համար կ՚ըսէին. «Ահա պայիկն եկաւ՝ քեզ պիտի տանի. ահա շունն ալ եկաւ՝ քեզ պիտի խածնէ. ահա՛ մուրիկն եկաւ՝ քեզ պիտի առնէ. ահա՛ կայծակը զարկաւ՝ քեզ պիտի այրէ. ահա՛ մութը հասաւ՝ քեզ պիտի գողնայ։ Այս ու այսպիսի խօսքեր տղուն մատաղ սրտին վրայ ա՛յնքան գէշ ու ծանր տպաւորութիւն ըրին, որ ամէն անգամուն, երբ շունը հաջէր կամ կայծակը զարնէր, սաստիկ կը վախնար, եւ այդ վախումն էր որ խեղճ տղան մեռաւ։

---

Ամէն հաչան շուն խածան չէ։
Լայնին ճար կայ, նեղին ճար չկայ։
Խօսքը մեծին՝ ջուրը պզտիկին։

---

## 11. ՀՐԱՀԱՆԳ

(Ուղեցոյց, էջ 51):

28. *Ոց մասնիկով.* — *Դպիր, խտիր, գործ, ամուլ, ճարտել, հովանի, մատն, ձեռն, փող, դարբին, փուք, հալիլ, քամել, ակն։*

29. *Անոց մասնիկով.* — *Ամառ, ձմեռ. որբ, աղքատ, հիւանդ, յիմար, ծեր, արուեստ, հիւր, մթեր, օտար, վաճառ, խոհ, գիշեր։*

30. *Արան մասնիկով.* — *Կրակ, վառ, հիւանդ, հանգիստ, վարժ, նաւ, բնակ, տաղ, երգ, խօս, նիստ, գործ, տիպ, դաս, լուաց։*

## 2. ՆԱԽԱՊԱՇԱՐՈՒՄ

Կան բաներ որոնց կը հաւատան մարդիկ, թէպէտ այդ բաները սուտ են։ Այսպիսի սուտ բաներուն հաւատացողին աւելորդապաշտ կ'ըսեն։

Օրինակի համար, երբ յանկարծ արիւնը ականջին զարնուի ու դռընչէ, աւելորդապաշտը կ'ըսէ. «Անկանչս կը խօսի, զիս կը յիշեն», եւայլն։

Երբոր բանի մը վրայ քիչ մ'ատեն նայի. «Աչքս կը ջպաղի, կ'ըսէ, կամ հիւր պիտի գայ»։

Երբոր, կերակուր կերած ատեն, հացին պատառը գետինն իյնայ. «Անօթի մարդ կայ» կ'ըսէ, կամ «խեր չէ»։

Երբոր ափը քերուի, կը կարծէ թէ ստակ պիտի առնէ կամ նամակ եւ կամ խըսմեթ պիտի գայ։

Երբոր սեղանի վրայ գինի կամ սուրճ թափի, աղէկ նշան կը սեպէ. եթէ եղ թափի. «Գէշ նշան է» կ'ըսէ։

Աւելորդապաշտը կը կարծէ թէ աղէկ օրեր ու գէշ օրեր կան. ուստի երեքշաբթի օրերը նոր գործի չի սկսիր, ճամբայ չ'ելլեր, տղան դպրոց չի ղրկեր։

---

### Ց. ՀՐԱՀԱՆԳ

Գիտ — *Յետագայ մասնիկներն յատուկ իմաստ մը կ'ընծայեն բառերուն որոնց կը կցուին։ Դասատուները կրնան տալ անոնց վրայ հարկ եղած բացատրութիւնը* (Տե՛ս Նոր Քերականութիւն Դուրեան էջ 11 եւ 15)։

*Հետեւեալ բառերը ածանցեցէք* (Ուղեցոյց, էջ 47)։

1. *Ական մասնիկով ածանցեցէ՛ք սա բառերը. — Թագաւոր, զինուոր, եկեղեցի, եղբայր, հայր, մայր, այր, վաճառ, ընկեր, որդի, ծնող, քաղաք։*

2. *Ային մասնիկով ածանցել. — Գաղան, դաշտ, ծով, մաղձ, ցամաք, քաղաք, օդ, հանք, հարաւ, արեգակն, հող։*

3. *Աւէտ մասնիկով. — Ծաղիկ, խոտ, խաշն, դալար, խունկ, բուրում, հոտ, պտուղ, այգի, ինչ, փրկութիւն, շահ, ծառ, երանութիւն։*

Ծան. — *Ուշ դնել փոփոխումի ու զեղչումի կանոններուն։*

*Ան կը կարծէ թէ կօշիկ կորսնցնելը նեղութենէ ազատելու՝ և աչքին խաղաղը ցաւալի դէպքի մը նշան են. մինչդեռ առաջինը պարզ դիպուածի մը՝ իսկ երկրորդը ջղային չարժումի արդիւնք է։*

---

## 3. ՋՈՒԹԱԿՆ ՈՒ ԱՂԵՂԸ

*Ջութակահար մը կը նուագէր հանդէսի մը մէջ։ Ներդաշնակ ու գեղեցիկ ձայներ կը թրթռային նուագարանէն. իր ճարտար ձեռքին մէջ, գործիքը՝ կարծես շունչ ու հոգի առած՝ կը գեղգեղէր իբրև թռչնիկ, և զմայլումով կը համակէր ունկնդիրները որ անզուսպ ծափերով ու «կեցցէ»ներով կը գոռացնէին սրահը։ Աղեղը ըսաւ Ջութակին. «Կը լսե՞ս, ը՛նկեր, ի՛նչպէս կը զմայլին վրաս։ Կ'երթամ, կուգամ, կ'ոստոստեմ. ինծի՛ կը պատկանի այս յաջողութեան փառքն ու պատիւը։ — Ապո՜ւշ, պատասխանեց Ջութակը, ի՛մ թելերս են որ ձայն կը հանեն, իմ փո՛րս է երգողը, զի՛ս կը ծափահարեն։ — Գնա՛ բանդ, մեծ-փոր պարոն, հպարտին մէկն ես դուն։ — Դո՛ւն ալ, վտիտ մորճիկ, որ խենդի պէս կը ցատքռտես լարերուս վրայ, սնապարծի՛ն մէկն ես։»*

---

**Յ. ՀՐԱՀԱՆԳ**

(Ուղեցոյց, էջ 47):

4. *Աւոր մասնիկով. — Ահ, զօր, կամք, նշան, հռչակ, շահ, փառք, կեղծ, չիք, բան, գոյն, լոյս։*

5. **Գին** *մասնիկով. — Ծաւ, դառն, սիրտ, ողբ, ոյժ, արտաւմ, տխուր, լալ, ողորմ։*

6. **Գոյն** (*) *մասնիկով. — Բաղցր, առատ, մեծ, փոքր, կրտսեր, նուազ, առաւել, լաւ, աղքատ, ճոխ։*

(*) Հոս՝ գոյն *մասնիկը չի նշանակեր* երանգ, թոյր. այլ՝ սաստութիւն:

Նուագը աւարտեցաւ. ճարտար արուեստագէտը աղեղն ու ջութակը տեղաւորեց տուփին մէջ և փակեց զայն։ Երկու պարծենկոտները լռութեան մատնուեցան ու վիճաբանութիւնը վերջացաւ։

Աշխարհիս մէջ կան մարդիկ ա՛յնքան տխմար՝ որ իրենց վերադրելով՝ կը պարծին ուրիշին արժանիքովը։

## 4. ԱՐՋՆ ՈՒ ԹՈԺԻՒՆԸ

Արջ մը փոքրիկ թոժիւն մը ծնաւ, ա՛յնքան տգեղ որ բնաւ կենդանիի կերպարանք չունէր. այլանդակ ու սոսկալի զանգուած մ՚էր։ Արջը՝ այսպիսի ձագ մը ունենալուն վրայ ամօթահար՝ կ՚երթայ իր դրացի Որին կը գտնէ. «Ի՞նչ պիտի ընեմ, սանամա՛յր, կ՚ըսէ անոր, ի՞նչ պիտի ընեմ այս հրէշը։ Խեղդե՞լս կուգայ։»

— Չըլլա՛յ որ ատանկ բան ընես, ըսաւ անոր՝ շաղակրատ Թռչունը, ուրիշ արջեր ալ տեսած եմ միեւնոյն մտահոգութեան մէջ. գնա՛, կամաց կամաց լզէ՛ ձագուկդ. քիչ օրէն սիրուն ու աղուոր պիտի երեւի աչքիդ, եւ անով երջանիկ պիտի ըլլաս։» Մայրը դիւրաւ հաւատաց, ընդ երկար լզեց ձագը որ վերջ ի վերջոյ աղուորնալ սկսաւ։ Արջը գնաց շնորհակալութիւն յայտ-

---

### 4. ՀՐԱՀԱՆԳ

(Ուղեցոյց, էջ 48):

7. *Եայ մասնիկով* (*). — *Ադամանդ, բեհեզ, փղոսկր, արծաթ, կապար, շղարշ, ծովեզերք, մաշկ, պղինձ։*

8. *Եան մասնիկով.* — *Արեւել, Բաբելոն, Ներսէս, Կորդ, Մեսրոպ, Վենետիկ։*

9. *Աշի մասնիկով.* — *Շնորհ, ցաւ, ողբ, զարման, տաղտուկ, գիրգ, անձուկ, ցանկութիւն, պանծ, կսկիծ։*

(*) Եայ մասնիկին տեղ կը գործածուի նաև է. (Ադամանդէ, ոսկիէ, արծաթէ, փայտէ, քարէ, ևայլն)։

*նել Որիին. « Եթէ համբերելու խորհուրդ չտայիք, ըսաւ, անգլթօրէն յօշոտած պիտի ըլլայի ձագուկս, որ այժմ կեանքիս բոլոր հաճոյքն է։»*

---

## 5. « ԱՅՈ՛ »

( ՀԼՈՒԹԻՒՆ ՈՒ ՀՆԱԶԱՆԴՈՒԹԻՒՆ )

*Երեք գիրէ բաղկացեալ կարճ բառ մը կայ, զոր տղաք պարտին սիրել ու յաճախակի գործածել։*

*Այս բառն է . . . « ԱՅՈ՛ »։*

*Հլու և հնազանդ տղոց բառն է ան։*

*Հակառակն է այն տգեղ « Ո՛Չ » բառին, զոր խեռ ու անհնազանդ տղաք կը գործածեն։*

*Մտի՛կ ըրէք Մարթան, երբ մօրը հետ կը խօսի, եւ օրինա՛կ առէք անկէ։*

*« Մարթա՛, ժամը եօթն է, ելի՛ր։ »*

*— Այո՛, մայրիկ, ա՛նմիջապէս։*

*« Մարթա՛, եկո՛ւր նախաճաշդ ըրէ՛։ »*

*— Այո՛, մայրիկ, հի՛մա, շուտո՛վ։*

---

### Ե. ՀՐԱՀԱՆԳ

( Ուղեցոյց, էջ 48 ) :

10. *Եղի մասնիկով. — Սէր, նուրում, պաշտում, գովութիւն, փափաք, աւաղ, խոտ, խունկ, երկրպագութիւն, նախանձ։*

11. *Եղ մասնիկով. — Ահ, զօր, համ, հիւթ, մաղ, ուժ, հանճար, անձն, գոյն, ինչ, մարմին, շուք, թեկն։*

12. *Եղէն մասնիկով. — Ասր, արծաթ, բոց, բանջար, հող, քար, միրգ, ոսկի, թուղթ, ապակի, բուրդ, հուր, լոյս։*

*«Մարթա՛, դասդ սերտէ՛:»*

*— Այո՛, մայրիկ, գիրքս ձեռք կ՚առնեմ կոր:*

*«Մարթա՛, դպրոց գնա:*

*— Այո՛, մայրիկ, կ՚երթամ կոր:*

*Ձեզի՛ հարցնեմ, աղէկ չէ՞ աս:*

*Կարճ բառով մը տղաք սիրելի կ՚ըլլան եւ պատժուելէ վախ չեն ունենար:*

*Անոնց տեղ եթէ ես ըլլայի միշտ պիտի ըսէի. «Այո՛, այո՛: Կանուխէն սորվեցէք յօժարութեամբ հնազանդիլ. հլութիւնը ամենաթանկագին յատկութիւններէ մէկն է:*

---

## 6. ԱՐԵՒՆ ՈՒ ԼՈՒՍԻՆԸ

*Արեւն ու լուսինը երկու փայլուն աստղեր են որոնք կարծես աշխարհի շուրջը կը դառնան եւ փոխն ի փոխ կ՚երեւան ու կը կորսուին: Արեւն ալ, լուսինն ալ կրնան անտես ըլլալ՝ ամպերէն ծածկուելով ու խաւարելով:*

*Արեւը աւելի փայլուն է քան լուսինը. լոյսի ու ջերմութեան հնոց մ՚է ան. իր արձակած լոյսը իրեն յատուկ է, եւ այդ լոյսով կը գոյանայ աշխարհի վրայ ցորեկ: Արեգակն է միշտ բոլորակ:*

---

### 6. ՀՐԱՀԱՆԳ

(Ուղեցոյց, էջ 48-49)

13. *Ենի մասնիկով. — Հայր, մայր, խոզ, վարդ, խնձոր, թութ, խունկ, ձէթ, նուշ, մոր, վայր, քաղաք, այծ:*

14. *Ի մասնիկով. — Դեղձ, ծիրան, բալ, սերկեւիլ, կաղին, խողկաղին, աղ, արժան, վայր, հաց:*

15. *Իկ մասնիկով. — Փոքր, հայր, մայր, մասն, անտուն, թռչուն, ձուկ, մուկ, թուշ, նուշ, փուշ, փոր, խուց:*

*Լուսինը նուազ լուսաւոր է, լոյս կուտայ առանց ջերմութեան. իր լոյսը արեւուն ցոլացումն է։ Լուսինը այլ եւ այլ ձեւեր կ'առնէ. շատ անգամ մահիկի ձեւով կ'երեւայ։*

---

## 7. ՍՏԱԽՕՍԻՆ ՊԱՏԻԺԸ

*Փոքրիկ հովիւ մըն էր Միհրան,*
*Որ ամէն օր դաշտին վըրան*
*Արածելու կ'երթար առտուն*
*Հօտն իր գեղին ոչխարներուն։*

*Օր մը նեղուած հոն մինաւոր՝*
*Ըսաւ. «Խաղ մը խաղանք աղուոր.»*
*Եւ ըսկըսաւ պոռալ ուժով.*
*«Գա՛յլ կայ, գա՛յլ կայ, հասէ՛ք շուտով։»*

*Գեղացիներ եկան հասան,*
*Ո՛չ գայլ գըտան, ո՛չ ալ գաղան.*
*Քահ քահ խնդաց լաճն աներես*
*Ըսաւ անոնց. «Խաբեցի՜ ձեզ։»*

---

### Դ. ՀՐԱՀԱՆԳ

(Աւելցոյց, էջ 49):

16. *Ակ մասնիկով. — Գետ, լեզու, լիճ, ծով նաւ, ծիծեռն, դաշն, որդի* (*). *հոգի, աղաւնի, պատանի, հիւղ, ձոր, դաշտ, դաս։*

17. *Ուկ մասնիկով. — Տաք, պաղ, եռ, պատառ, չընորհ, անմեղ, աչ, գառն, հորթ, ձագ, հարսն, կարմիր, ճերմակ, սեւ, խեւ։*

18. *Իչ մասնիկով. — Գիր, բիր, նեղ, երգ, ցոյց, կաքաւ, խափան, սուրբ, կափար։*

---

(*) Բարդութեան մէջ ի գիրը ե կ'ըլլայ։

Որ մ՚ալ գայլեր եկան իրաւ.
Մարդ իր ձայնին մտիկ չըրաւ,
Մէկը չեկաւ օգնել անոր,
Հովիւն եղաւ կտոր կտոր։

---

## 8. ՆԱԽԱՊԱՇԱՐՈՒՄ (Ծար.)

*Պակաս չեն մարդիկ որ կը հաւատան թէ ոգիներ ու ճիւաղներ կան, եւ երբ գիշերը մութ տեղ մը գտնուին, կը դողան՝ վախնալով որ ոգին կամ ճիւաղը իրենց չերեւի։*

*Խեղճ Օհան կը հաւատայ այս բաներուն։ Անգամ մը քնանալու ատեն յանկարծ արթնցաւ եւ սկսաւ պոռալ։ Ի՞նչ կար։ Երազին մէջ տեսած էր որ ճիւաղներն եկեր՝ քովը նստեր են եղեր։ Խեղճը չ՚էր գիտեր թէ այդ ստուերը կամ ուրուականները սնոտի բաներ են՝ իր երեւակայութեան մէջ հնարուած։ Կ՚երեւի թէ շատ կերակուր կերած էր, եւ անմարսողութենէն անհանգիստ քուն մը ունեցեր ու այլանդակ բաներ երեւակայեր էր։ Արդէն երազներն ի՞նչ են, եթէ ոչ՝ անորոշ ու չփոթ մտածումներ։ Երբեմն երազատեսներ զանոնք կը մեկնեն՝ միամիտները խաբելու եւ ստակ առնելու համար։*

---

### 8. ՀՐԱՀԱՆԳ

(Ուղեցոյց, էջ 49—50)։

19. **Ող մասնիկով.** — Սէր (*), շէն, տունկ, շահ, բեր, ծին, կատար, տես, քնին։

20. **Ած մասնիկով.** — Գութ, ողորմ, ցաւ, մաշիլ, գիր, անց, խորշոմ, կատար, հան, ման, կար, շահ, աղ։

21. **Ոյթ մասնիկով.** — Ծածուկ, բուն, սովոր, ձանձիր, ճաս, երեկ, հաւաք, տես։

---

(*) Ուշադրութիւն՝ գիրերու փոփոխման։

Կիներ կան որ թուղթ կը բանան, բակլայ կը նետեն, եւայլն՝ ասոր անոր փափաքը գիտնալու եւ բախտը գուշակելու համար. վհուկներ կամ կախարդներ՝ որոնք այլ եւ այլ հմայեկներ կ՚ընեն, մարդ կը կապեն եւ այսպիսի հազար տեսակ խաբեբայութիւններ կ՚ընեն։ Կը գտնուին նաեւ մարդիկ որ հիւանդ բժշկելու համար գիրքեր կը կարդան եւ որոնք բժշկելու տեղ կը սպաննեն։

Աններելի յանցանք է՝ այսպիսի խաբեբաներու հաւատալ։ Խելացի ու կրթեալ մարդը կը զգուշանայ նախապաշարումներէ։

---

## 9. ԱՌԱՋԻՆ ՄՐՑԱՆԱԿՍ

Որքա՜ն դողացի առաջին մրցանակի մը համար։ Ահա ստացայ զայն, ծնողքս գոհ եւ ուրախ են, եւ ես երջանիկ եմ վասն զի կը վայելեմ քրտինքիս պտուղը։ Լաւ հոգ պիտի տանիմ, մաքուր պիտի պահեմ մրցանակս։ Թաւաքարտէ կողք մը կայ վրան, հաստատուն ու փայլուն՝ ոսկեզօծ նկարներով։ Մէջը 200 էջ կայ, ճիշդ ու ճիշդ գիրք մը, աղուոր ու օգտակար գիրք մը, կ՚ուզեմ կարդալ անոր մէջի պատմութիւնները. պիտի ջանամ

---

**Թ. ՀՐԱՀԱՆԳ**

(Ուղեցոյց, էջ 50)

22. *Ուն մասնիկով.* — Եռանդ, երեր, սող, շարժ, խօս, շող, հաս, կանգ, Թռիչ, հաստատ, պարապ։

23. *Ուտ մասնիկով.* — Ապառաժ, աւազ, Թաւ, յորձան, ոսկր, ջիղ, քար, տիղմ, ժայռ, վէմ, եղէգն, վախ, խախտել, մացառ։

24. *Ոտ մասնիկով.* — Արիւն, բոր, քոս, եռանդ, ժանգ, կասկած, խոց, փոթ, ոջիլ, միս, վաւաշ, լակ։

հասկնալ թէ ի՛նչ կը ներկայացընեն այն պատկերները որ գրեթէ ամէն էջի վրայ կը տեսնուին։ Պիտի հասկընամ ու քրոջս ալ պիտի հասկցնեմ։ Եւ երբ լաւ մը հասկնամ, իրիկունները անոր մէջէն գեղեցկագոյն հատուածները պիտի կարդամ հօրս ու մօրս։ Ասով՝ թէ՛ անոնք եւ թէ՛ ես հաճոյք պիտի զգանք։ Իրաւ որ շատ հաճելի բան է մրցանակ առնել, պիտի ջանամ գալ տարի ալ մրցանակներ շահիլ։

---

## 10. ՅՈՌԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Զատկի տօնին առթիւ, բարեկամի մը տուն շնորհաւորութեան գացած ըլլալով՝ տեսայ չարագործ մանկիկ մը, որուն չարութեան պատճառ՝ բո՛ւն իսկ իր հայրն ու մայրն էին։ Երբ ան իր մամիկին մազերը քաշէր, կը քաջալերէին զինք՝ ըսելով. «Քաշէ՛, քաշէ՛, մանկիկս։» Երբ կատուն ձեռքին մէջ առած կը չարչարէր, հաճոյք կը զգային ու կ'ըսէին. «Ոտքէ՛ն քաշէ, մա՛նկիկ, ականջէ՛ն, պոչէ՛ն քաշէ։» Այսպէս չարութեան վարժեցուցին զայն իր մատաղ հասակէն։ Երբ իր թոթով լեզուով հայհոյանքներ ու հաճելի խօսքեր կ'ընէր, կ'ուրախանային, կը խնդային ու կը փափաքէին որ նորէն կրկնէ։ Երբ իր*

---

**10. ՀՐԱՀԱՆԳ**

(Ուղեցոյց, էջ 50)։

25. **Կոտ մասնիկով.** — *Վախ, նուաղ, ամչնալ, խպնիլ, մոռացում, մսիլ, դեդեւիլ, դանդաղ, պարծենալ։*

26. **Որդ մասնիկով.** — *Նախ, ձախ, սայլ, ժառանգ, նաւ, կաճառ, յաճախ, առաջին, քանի, հանապազ, անց, որս, լուծ։*

27. **Ուրդ մասնիկով.** — *Խորհիլ, յագ, նուազ, աճիլ, պարապ, արձակ։*

*կամքը կատարել ուզէր, կը կատարէին, ասով զօրացուցին զայն յամառութեան մէջ։ Երբ մանուկը վեց տարեկան եղաւ, ծնողքը ա՛լ չէին համբերեր՝ անոր ծայրայեղ ու անտանելի վարմունքին. զինքը վախցնելու եւ հանդարտեցնելու համար կ'ըսէին. «Ահա պայիկն եկաւ՝ քեզ պիտի տանի. ահա շունն ալ եկաւ՝ քեզ պիտի խածնէ. ահա՛ մուրիկն եկաւ՝ քեզ պիտի առնէ. ահա՛ կայծակը զարկաւ՝ քեզ պիտի այրէ. ահա՛ մութը հասաւ՝ քեզ պիտի գողնայ։ Այս ու այսպիսի խօսքեր տղուն մատաղ սիրտին վրայ ա՛յնքան գէշ ու ծանր տպաւորութիւն ըրին, որ ամէն անգամուն, երբ շունը հաջէր կամ կայծակը զարնէր, սաստիկ կը վախնար, եւ այդ վախումն էր որ խեղճ տղան մեռաւ։*

---

*Ամէն հաջան շուն խածան չէ։*
*Լայնին ճար կայ, նեղին ճար չկայ։*
*Խօսքը մեծին՝ ջուրը պզտիկին։*

---

## 11. ՀՐԱՀԱՆԳ

(Ուղեցոյց, էջ 51):

28. *Ոց մասնիկով. — Դպիր, խտիր, գործ, ամուր, խարտել, հովանի, մատն, ձեռն, փող, դարբին, փուք, հալիլ, քամել, ակն։*

29. *Անոց մասնիկով. — Ամառ, ձմեռ, որբ, աղքատ, հիւանդ, յիմար, ծեր, արուեստ, հիւր, մթեր, օտար, վաճառ, խոհ, գիշեր։*

30. *Արան մասնիկով. — Կրակ, վառ, հիւանդ, հանդիստ, վարժ, նաւ, բնակ, տաղ, երգ, խօս, նիստ, գործ, տիպ, դաս, լուաց։*

## 11. ԹԷ Ի՛ՆՉՊԷՍ ԴԱՍ ԿԸ ՍՈՐՎԻՆ

*Վարժուհին առակ մը տուած է սորվելու՝ իր փոքրիկ աշակերտուհիներուն։*

*Առակին վերնագիրն է Գայլն ու Գառնուկը:*

*Գիտէ՞ք թէ ի՛նչ պատահած է։ Աւա՜ղ, չար Գայլը լափած է խե՜ղճ Գառնուկը։*

*Թագուհի գիրքը ձեռք կ'առնէ եւ որոշեալ երեսը կը բանայ, շատ անգամներ ետեւէ ետեւ կը կարդայ առաջին երեք տողերը, եւ յետոյ ցած ձայնով կ'արտասանէ, առանց գիրքին նայելու։*

*Երբ աղէկ մը սորվի, ուրիշ երեք տող ալ կը կարդայ, զանոնք ալ կը կրկնէ մինչեւ որ գոց սորվի։ Այն ատեն՝ առաջին տողերը նորէն ձեռք կ'առնէ եւ վերջիններուն հետ կ'արտասանէ։*

*Այս կերպով մինչեւ առակին վերջը կը շարունակէ, եւ երբ վարժուհին դասը ըսել կուտայ, Թագուհի անսխալ գիտէ եւ բարենիշ կը շահի։*

*Դժուար բան մը չէ դասը գոց սորվիլը, միայն ուշադրութիւն ու յօժարութիւն պէտք է։*

*Տղայ մը որ դասերը չի գիտեր կամ քիչ գիտէ, միշտ տգէտ պիտի մնայ։*

---

### 12. ՀՐԱՀԱՆԳ

(Ուղեցոյց, էջ 51):

31. Աստան *մասնիկով. — Ծառ, միրգ, անդ, Թուզ, Պարսիկ, Բաբել, Մարք, Վիրք, Հնդիկ, Հապէշ։*

32. Ապան *մասնիկով. — Պահ, դուռն, բար, ուղտ, էշ, ձի, ախոռ, փուռ։ — Պարտէզ, այգի, ջորի, ջուր։*

33. Ցի *մասնիկով. — Անգղիա, Զմիւռնիա, Ռուսիա, Ֆրանսա, Ամասիա, Ասիա, Եւրոպա, լեռն, Բերա, Սամաթիա, Գաղատիա, Երուսաղէմ, Ակն։*

## 12. ԳԱՅԼՆ ՈՒ ՈՉԽԱՐԸ

*Ոչխարները ապահով տեղ մը մակաղած էին, շուները կը քնանային և հովիւը, մեծ կնձնիի մը շուքին տակ, սրինգ կ'ածէր դրացի հովիւներու հետ։ Անօթի գայլ մը ցանկէն ներս մտաւ գաղտագողի՝ հօտին վիճակը զննելու համար։ Փոքրիկ, անփորձ ոչխար մը խօսքի սկսաւ անոր հետ. «Ի՞նչ կը փնտռես հոս, ըսաւ որկորաժէտին։ — Փափուկ ու դալար խոտ, պատասխանեց գայլը։ Գիտէք թէ չկայ աւելի քաղցր բան մը՝ քան ճարակիլ ծաղկաւէտ արօտավայր մը՝ իր անօթութիւնը յագեցնելու համար, և վճիտ առուակէ մը ջուր խմել՝ ծարաւն անցընելու համար. հոս երկուքն ալ դտայ ա՛լ ի՞նչ պէտք է ինծի. կը սիրեմ այն փիլիսոփայութիւնը որ կ'ուսուցանէ քիչով գոհանալ։ — Իրա՞ւ, հարցուց մատղաշ ոչխարը, իրա՞ւ կենդանիներուն միսը չես ուտեր դուն, եւ քիչ մը խոտով կը բաւականաս։ Եթէ այդպէս է, եկո՛ւր եղբօր պէս ապրինք եւ միասին ճարակենք»։*

*Իսկոյն ոչխարը փարախէն դուրս ելաւ. սակաւապետ փիլիսոփան յօշոտեց ու կերաւ զայն։*

---

### 13. ՀՐԱՀԱՆԳ

(Ուղեցոյց, էջ 52)։

34. *Եցի մասնիկով. — Պոլիս, Կարին, Վան, Բաղէշ, Ակն, Աշտարակ, Թաղ, Ձոր, Մուշ։*

35. *Ացի մասնիկով. — Նարեկ, Բիւզանդ, Բաբելոն, խել, միտ, գեղ, քաղաք, Եգիպտոս, Խորէն, Լամբրոն։*

36. *Ցու մասնիկով. — Տէր, քահանայ, վարդապետ, հարսն, փեսայ, մահ, չապիկ, ձաւար, ապրիլ, կերակուր.*

*Զգուշացէ՛ք իրենց առաքինութեամբ պարծեցող մարդոց խօսքերէն։ Աւելի՛ անոնց գործերո՛ւն հաւատք ընծայեցէ՛ք՝ քան թէ խօսքերուն։*

## 13. ՑՈՐԵԿ ՈՒ ԳԻՇԵՐ

*Ցորեկն ու գիշերը ժամանակի բաժանումներ են՝ գրեթէ հաւասար տեւողութեամբ. իրարու կը յաջորդեն քսան եւ չորս ժամուան մէջ, առտուընէ մինչեւ միւս առտու։*

*Ցորեկը պայծառ է, արեւէն կը լուսաւորուի. արթնութեան, աշխատութեան, շարժումի ու աղմուկի՝ վերջապէս գործի ու կենդանութեան ժամանակ է։*

*Գիշերը մութ է, միայն լուսինն ու աստղերը կը փայլին։ Տուներուն մէջ ճրագ կը վառուի։ Քունի, հանգիստի եւ լռութեան ժամանակն է ան։*

### ԱՌԱԾ

*Լաւ տանձը արջը կ'ուտէ։*

### 14. ՀՐԱՀԱՆԳ

(Ուղեցոյց, էջ 52):

37. ***Ատ** մասնիկով.* — *Պոչ, ունչք, լեզու, ձեռն, ճիւղ, հուր, քուն։*

38. ***Ուհի** մասնիկով.* — *Կոմս, քուրմ, ընկեր, դրացի, Հելլեն, աշակերտ, գեղջուկ, դեսպան, Հայ։*

39. ***Անոյշ** մասնիկով.* — *Վարդ, քուրմ, սէր։*

40. ***Դուխտ** մասնիկով.* — *Խոսրով, Զարման, Շահան, Սան։*

Գիտ. — *Ուհի, անոյշ, դուխտ մասնիկները իգական անուն կը շինեն։*

## 14. ՏՂՈՒ ՀԱՐՑՈՒՄ

Հայրե՛կ, ո՞վ կ'անցնի ամէնէն արագ,
Հովե՞րը արդեօք, գե՞տը սրընթաց,
Արդեօք ասո՞ւպն որ կ'իյնայ վայրահակ
Առկայծ ակօսով՝ բոցի պէս վառուած։

— Արդեօք ամպե՞րը, ծո՞ւխն եթերային,
Եւ կամ օդապար ծիծե՞ռն ուղեւոր,
Բոցածաւալ փո՞ւնջն արդեօք հրթիռին,
Երկինքին շա՞նթը թէ փայլա՞կն անոր։

— Աւա՞զը՝ խըլուած եզերքէն ծովուն,
Ճերմակ օճառին պղպջա՞կն ոսկին,
Օդապարի՞կը, տերե՞ւն ազազուն,
Երա՞զը, արդեօք դերձա՞նը կոյսին։

---

### 15. ՀՐԱՀԱՆԳ

*Սա արմատ բառերով բարդութիւններ կազմեցէք:* (Ուղեցոյց, էջ 52-53):

*Գիր գրող, Աստուած սիրող, ծնողքը սիրող, ոսկիով օծուած (զօծ), արծաթ պաշտող, միտքը ուղիղ, բարի կամեցող, սիրտը բարի, հոգի զմայլեցնող, ոգիով լեցուած, միշտ դալար, ձայնը քաղցր, աղքատ սիրող, ուսմունք սիրող, ջանք սիրող, մարմինը մարզող, ծաղիկով զարդարուած, հոգիի գալուստ, Աստուած ծնող, սիրտը մեծ, միտքը մեծ, որդին կորսնցնող, աղիք խարշող, մեղրի համով, լեզուն քաղցր, ճակատի գիր, արեւէն այրած (կէզ), աղերսի գիր, դպիրի պետ, ոսկիով ձուլուած, լուսով փայլող, լուսով շողացող, գետի բերան, լեռան շղթայ, սիրտը խիստ, աղօթք սիրող, միտքը թանձր, դէմքը գեղեցիկ, արագ հոսող, խիտ ոստով։*

— Իցի՜ւ թէ անգէ՛տ մընաս միշտ, ո՛րդեակ,
Անուշ ու տխուր սա փորձառութեան
Թէ ի՛նչ որ կ՚անցնի ամէնէն արագ՝
Մեր երջանկութեան օրերն են միայն։

## 15. ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

Ժամանակով, Լիգուրկոս անունով մարդ մը կար որ իր երկրին օրէնքներ դրաւ։ Այս մարդը, օր մը, միեւնոյն ցեղէ երկու շուն առաւ ու զանոնք տարբեր կերպով մեծցուց։ Մէկը փափկութեան վարժեցուց ու համեղ կերակուրներով սնցուց, իսկ միւսը որսորդութեան վարժեցուց։ Երբ մեծցան ու զօրացան մարմինով ու բնութեամբ, Լիգուրկոս զանոնք տարաւ հրապարակ մը, անոնց առջեւ ախորժահամ կերակուրներ դնել տուաւ եւ ապա նապաստակ մը արձակեց։ Իսկոյն, շուներէն մէկը

---

### 16. ՀՐԱՀԱՆԳ

Հետեւեալ արմատ բառերով բարդութիւններ կազմեցէք եւ տուէք անոնց նշանակութիւնը (Ուղեցոյց, էջ 53):

Գանձի պետ, գետի եզր, ծովի եզր, գիրք ծախող, ատինք տուող, լոյս մտնելու տեղ, խաչի փայտ, խունկի աման, հարսի եղբայր, հողի բլուր, ձիւնի ծաղիկ, նամակի տուփ, նամակի տուն, նաւի խումբ, վանքի հայր, որթի տունկ, գանձը մեծ, տունը մեծ, ձայնը մեծ, բազուկը երկայն, հասակը բարձր, մազը սեւ, շուրթը լայն, մարդը բազում, համը քաղցր, ոտքը արագ, լեզուն թանձր, ոտքը մաշկով, բեռը ծանր, քալուածքը թեթեւ, հաւատքը թերի, մորթը թոյլ, գլուխը կոր, թելը ոսկի, պատիւը հաւասար, սիրտը նեղ, փետուրը նոր, միտքը նուրբ, ձեռքը ունայն, միտքը թեթեւ, անունը մեծ, փորը մեծ։

*փախչեցաւ իր սովորական կերակուրներուն քով, եւ միւսը՝ աշխոյժով՝ նապաստակին ետեւէն, եւ բռնեց։ Ժողովուրդը կը ծափահարէր անոր վարժ յաջողակութեան։*

*Այն ատեն, իմաստուն Լիգուրկոս ժողովուրդին դառնալով ըսաւ. «Երկու շուներն ալ մի եւ նոյն ցեղէ են. սակայն տեսէ՛ք ի՞նչ տարբերութիւն դրած է անոնց մէջ դաստիարակութիւնը։*

## 16. ՇԵՐԱՄ

*Շերամը միջատ մ'է թիթեռներու խումբէն։ Ուրեմն միջատին կազմութիւնն ունի, անոր պէս թեւաւոր է։ Շերամը կերպարանափոխութիւն կը կրէ. Նախ թրթուր մ'է, երբ հաւկիթէն դուրս գայ. այն ատեն ճերմակ թութի տերեւներ ուտելով շուտ շուտ կ'աճի։*

---

## 17. ՀՐԱՀԱՆԳ

*Հետեւեալ խօսքերով բարդ բառեր կազմէ* (Ուղեց. էջ 53-54)։

***Բեռը կրող, երկինքը բնակող, լեռը բնակող, պտուղ բերող, անձրեւ բերող, հուր բղխող, անտառը բնակող, ձեռքի գործ, անձն գովող, այգի գործող, երկիրը գործող, եղեան գործող, հողը գործող, նաւ շինող, պղինձը գործող, չար գործող, բարի գործող, ոճիր գործող, երդումը զանց ընող, օրէնքը զանց ընող, աստղով զարդարուած, նետ ձգող (նետող), քար ձգող, սովէ լլկուած, ծաղիկով լեցուն, պտղով լեցուն, դիակ (գէշ) ուտող (կեր), չորս ոտք ունեցող, երկու ոտքով, երեք ոտքով, վրէժ խնդրող, նախանձով խնդրող, բարի խօսող, չար խօսող, առակ խօսող, որովայնէն խօսող, երկրէ ծնած, չար կամեցող, ալիքներով կոծուած, վիշտ կրող, միտքը մեծ, կէս մեռած, վաղ (կանուխ) մեռած, նոր ծնած, սաստիկ փչող (շնչող), ուղիղ խօսող, ունայն խօսող, սիրտը խիստ, երախտիք գիտցող։***

օր մ՚ալ իր վրայ կը շինէ մետաքսէ պատեան մը որուն մէջ կը բանտարկուի։ Մետաքսէ պատեանը խոզակ կը կոչուի. անկէ կը քակեն մետաքսի թելը որ հիւսելի նիւթ մը կ՚ըլլայ։ Թրթուրը իր բերնին մօտ գտնուող երկու մանր ծակերէ դուրս կը հանէ մետաքսը։ Խոզակին մէջ քանի մը օրեր մնալէ ետք, շերամը կը ծակէ զայն ու թիթեռնիկ եղած՝ դուրս կուգայ. անկէ ետքը կը սկսի շատ մը հաւկիթներ ածել, եւ քանի մը օր վերջը կը մեռնի։

Յաջորդ գարնան, այդ հաւկիթներէն նոր թրթուրներ կ՚ելլեն։

Մետաքսը քակելու համար, տակաւին կենդանին դուրս չելած՝ խոզակը կը ձգեն տաք ջուրի մէջ. այն ատեն մետաքսը կը կակղնայ ու դիւրաւ կը քակուի։ Քակուած թելը կը մանեն, այսինքն մէկ քանին մէկանց

---

## 18. ՀՐԱՀԱՆԳ.

Հետեւեալներով բարդ բառեր կազմեցէք ( Ուղեցոյց, էջ 54)։

Եռանդով լեցուած, ժիր ջանքով, սիրտ մաշող, պատկեր հանող, թեւէ զրկուած, խաղ սիրող, պարգեւ տուող, յոյսը հատած, քունը հատած, օրինք հարկանող (զարնող), փող հարկանող, դեւէ հարեալ (զարնուած), շանթէ հարեալ, արծաթէ ձուլուած, երկաթով կռուած (ծեծուած), խորը մխուող, մէջը մխուող, տուն շինող, աշխարհ շինող, ծուխ շնչող, բոց շնչող, մահ շնչող, Աստուծմէ շնչուած, խոտ ուտող, կուռք պաշտող, արծաթ պաշտող, ընտանիքը սիրող, բութ մատ, ցորեն վաճառող, կառք վարող, նաւ վարող, ձի վարժող, մանուկ վարժող, ուղի ցուցնող, տօն ցուցնող, օր ցուցընող, արծաթով օծուած, ննջելու սենեակ, հիւրերը մեծարող, զէնք կրող, վարժելու տուն, միտքը սուր, մեծ համբաւ ունեցող, երկար պատմող, միտքը չար, փոշիով լեցուն։

զատելով՝ հաստ թելերու կը վերածեն, յետոյ կը ներկեն ու կերպասներ կը հիւսեն:

---

## 17. ԱՆՄԵՂ ՍՏԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*Կոյր ծերունի մը և իր թոռնիկը մխ մինակ մնացած էին աշխարհիս վրայ: Ծերունին չէ՛ր կրնար աշխատիլ ու ապրուստ ճարել, վասն զի կոյր էր. իսկ մանկիկը դեռ շատ փոքր էր ու ծանր աշխատութեան տոկալու անկարող: Միասին կը թափառէին դուռէ դուռ եւ կը մուրային:*

*Օր մը, յոգնած, նստան ճամբու մը եզրը: «Անօթի եմ, որդեա՛կ, ըսաւ ծերունին, հաց ունե՞նք: — Այո՛, սիրելի պապս, ունե՛նք:» Եւ թոռնիկը հանեց պայուսակէն՝ ինչ որ կար մէջը. — աւա՜ղ, միայն պատառ մը չոր հաց: Մանկիկը, ինք ալ, շատ անօթի էր, սակայն ամբողջ հացի պատառը ծերունիին ափին մէջ դրաւ:*

*— «Դուն ալ բաժինդ առի՞ր, հարցուց ծերը:*

*— Այո՛, սիրելի՛ պապս, ատ քու բաժինդ է»:*

*Եւ ծերունին կերաւ՝ անկասկած այդ անմեղ ստախօսութենէն:*

---

### 19. ՀՐԱՀԱՆԳ

**Սա տրւած բառերէն ի՞նչ բառեր կրնան ծագիլ (Ուղեցոյց, էջ 54-55):**

**Ծեր, սառ, կազմ, մայր, պտուղ, վախ, լոյս, փառք, բախտ, Աստուած, բարի, ուսմունք, խելք, արեւ, չէն, երգ, սէր, սուրբ, չող, առողջ, կարծր, փորձ, լուր, հոտ, համբերութիւն, արի, ազնիւ, զոյգ, կանոն, քար, սուտ, երախտիք:**

ՕՐԻՆԱԿ. — **Ծեր, ծերունի, ծերութիւն, ծերանալ, ծերակոյտ, եւայլն:**

Ճամբան ամայի էր. ո՛չ ոք տեսաւ մանուկին ըրած զոհողութիւնը, բայց սիրտին մէջ ձայն մը լսեց, շատ քաղցր ձայն մը որ կ'ըսէր.
«Ապրի՛ս, տղաս, շա՛տ լաւ ըրիր»։

---

## 18. ԵՐԿԱԹ ՈՒ ԱՐՃԱԹ

*Երկուքն ալ մետաղ են՝ հողին տակէն հանուած ու մարդուն աշխատութեամբ պատրաստուած. անոնցմով կը շինուին գործիքներ ու տեսակ տեսակ առարկաներ։*

*Երկաթը աւելի շատ է բնութեան մէջ, աւելի կարծր ու աւելի թեթեւ քան արծաթը. սեւ է ու հաստատուն, եւ կոշտ գործիքներ շինելու կը գործածուի։*

*Արծաթը երկաթէն աւելի հազուագիւտ է, ճերմակ է. եւ՝ որովհետեւ քիչ կը գտնուի ու աչքի հաճելի է՝ անով զարդեր ալ կը շինեն։*

### ԱՌԱԾ

*Մարդուս փողն որ աւելնայ, տանը սիւնը ծուռ կ'երեւայ։*

*Խենթը քար մը նետեց հորը, հազար խելօք չկրցան հանել։*

---

### 20. ՀՐԱՀԱՆԳ

Ինչ բառեր կրնաս շինել սա արմատ բառերով (Ուղեցոյց, էջ 56):

**Պատիւ, ուղի, ուղիղ, միտք, խորհուրդ, բարձր, մարդ, բաժին, մաս, պատիժ, պաշտպան, դէմ, անուն, կենդանի, տաք, ցաւ, վստահ, երջանիկ։**

Ծան. — Այս վարժութիւնները յոյժ հրահանգիչ կ'ըլլան ուսանողին համար՝ ածանցմանց ու բարդութեանց մասին անոր հետաքրքրութիւնը շարժելով։ Դասատուն կուտայ մէկ մի բառի մեկնութիւնը կամ սահմանը և ըստ այնմ կը պահանջէ տրուած արմատէն ծագող բառերը (ածական, գոյական, բայ, մակբայ և միւտական), ի հարկին օգնելով անոր։

## 19. ԱԶԱՏԱՐԱՐ ՇՈՒՆԵՐ

*Այո՛, տղաքս, շուներն ալ ազատարարի պաշտօն կը կատարեն զարմանալի ուշիմութեամբ։ Եւրոպայի մէջ կայ Սէն Պէրնար անուն բարձրաբերձ լեռը որ շարունակ ձիւնով պատած է, փոթորիկ ու բուք անպակաս են հոն, և ձմրան եղանակին մէջ մեծամեծ վտանգներու ենթակայ են ուղեւորները։ Շատեր կը մնան ահագին հիւսերու տակ, որոնք լեռան գագաթէն կը գլորին կամ կը կորսնցնեն իրենց ճամբան, և կամ սաստիկ ցուրտին ու բուքին չկրնալով տոկալ՝ կը սառին կը մնան ձիւներուն մէջտեղ։*

*Բայց լեռան վրայ կը գտնուի վանք մը՝ ուր կրօնաւորներ կը բնակին՝ յատկապէս օգնութեան հասնելու համար այդ մոլորած կամ սառած ճամբորդներուն։ Իսկ այս փրկարար գործին գլխաւոր օժանդակներն են խումբ մը շուներ որոնք մեծ համբերութեամբ ու վարժութեամբ պատրաստուած են իրենց պաշտօնին։ Ասոնք կը պտըտին լեռան այլ և այլ կողմերը, և եթէ պատահին մարդկային էակի մը որ օգնութեան կը կարօտի,*

---

### 21. ՀՐԱՀԱՆԳ

**Տրուած արմատներն ծագող բառերը գտնել եւ տալ անոնց նշանակութիւնը** (Ուղեցոյց, էջ 57-58)։

*Բուն, արդար, բախտ, մեղք, պարտք, փայլ, սուտ, իշխան, հոտ, ազգ, հայր, թերի, շող, թիւ, ջուր, կնիք, պատմութիւն, ճոխ, զարմանք, փառք, զարդ, կեանք, վարժ, միտք, ներում, կարգ, նշան, դատ, ճառ։*

*որ սառելու վրայ է կամ ձիւներուն մէջ թաղուած՝ իսկոյն կը գտնեն զայն՝ իրենց սուր հոտառութեան· շնորհիւ, կը սկսին փորել ձիւնը իրենց հուժկու թաթերով, իրենց շունչով ու մարմնով կը տաքցընեն հէգ ուղեւորը և կուտան անոր ջեռուցիչ ըմպելիէն, որ իրենց վիզէն կախուած է տակառաձև ամանով մը։*

*Նոյն իսկ, ուտելիք ու հագուստ կը կրեն իրենց հետ որպէսզի անսուաղ ուղեւորը, ըմպելիքով քիչ մը ուշաբերելէ ետքը, կարենայ սնունդ ալ առնել, կազդուրիլ և՝ հագուստով պատսպարուելով ցուրտէն՝ երթալ մինչեւ վանքը։*

*Շատ անգամ, երբ ուղեւորը անկարող է շարունակել իր ընթացքը, այդ խելացի շուները կա՛մ կուգան իմացնել վանականներուն եւ կ'առաջնորդեն անոնց մինչեւ արկածեալ ճամբորդին քով, եւ կա՛մ երկու երեքը միանալով՝ կը բռնեն կը տանին զայն դէպի վանքը։*

*Որքա՜ն ճամբորդներ առ յաւէտ պիտի կորսուէին, եթէ այս ազատարար շուները չհասնէին անոնց օգնութեան։*

---

**ԱՌԱԾ**

*Մէկ ծաղիկով գարուն չի գար։*

---

## 22. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ բառեր կրնաս կազմել սա արմատներով* (Ուղեցոյց, էջ 58):

***Խօսք, խոստում, բան, գիր, դաս, միտք, ճառ, ծուխ, սէր, տես, լուր, լոյս, ուղի, սկիզբ, պատիւ, շնորհ, թիւ, առակ, մշակ, բերք, ելք, տունկ, բոյս, ծառ, արծաթ։***

## 20. ՄԱՐՄԻՆԻ ԱՆԴԱՄՆԵՐՈՒՆ ՎԷՃԸ

*Օր մը մարդուն անդամները իրարու ծառայելէ ձանձրանալով՝ ա՛լ իրենց պաշտօնը կատարել չուզեցին։*

*Ոտուըները կ'ըսէին. — «Ինչո՞ւ միայն մենք պիտի կրենք ուրիշներուն բեռը. ձեզի համար ոտուըներ գտէ՛ք, եթէ քալել կ'ուզէք»։*

*Ձեռուըները կ'ըսէին. — «Ինչո՞ւ ուրիշներուն համար միայն մենք աշխատինք. եթէ ձեզի ձեռք պէտք է, դուք ձեզի ձեռք շինեցէք»։*

*Բերանը մրմռաց. — «Իրաւ, ես շատ խենդ եմ եղեր որ ստամոքսին համար սնունդ կը ծամեմ, որպէս զի հանգիստ հանգիստ մարսէ, այն որ բերանի պէտք ունի, թող բերան գտնէ»։*

*Աչուըներն ալ չուզեցին ամբողջ մարմինին վրայ հսկել։ Միւս անդամներն ալ այսպէս խօսեցան եւ ա՛լ իրենց պաշտօնը չկատարեցին։*

*Ի՞նչ եղաւ հետեւանքը։*

*Ամբողջ մարմինը հետզհետէ սկսաւ տկարանալ մաշիլ։*

*Անդամները, տեսնելով որ իրենց կորուստը մօտ է, յանցանքնին ճանչցան եւ առաջուան պէս իրարու ծառայել սկսան։*

Տան. — *Բացատրեցէք մարմինի անդամներուն պաշտօնը։*

---

### 23. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ բառեր կրնաս կազմել սա արմատներով* (Ուղեցոյց, էջ 59-60)։

*Արար, կից, տու, բեր, բուղխ, գործ, հար, գոչ, ձայն, շէն, ընթացք, աղաց, սէր, կեաց, բնակ, գլուխ, պան, պետ, կեր։*

(*) Օրինակ. — *Կեն-արար, ժամ-արար, խոհ-արար, եայլն։*

## 23. «ՀԱՅՐ ՄԵՐ»

«Հայր մե՛րն, ըսած չե՞մ որ ամէն առտըն
Ծայրէ ծայր ու շուտ կ'ըսեն, կ'աւարտեն.
Ինչո՞ւ կ'ընդհատես զայն, փո՛քր անըզգամ,
Ըսկսէ՛ տեսնենք, մի՛տ դիր այս անգամ...։

— Հա՛յր մեր, որ յերկինս ես, որպէս յերկրի,
Սուրբ եղիցի միշտ անուն քո բարի,
Արքայութիւն քո եկեսցէ. քո կամք
Եղիցին յերկինս եւ յերկրի ուր կանք։
Տո՛ւր մեզ այսօր...։
— Տո՛ւր մեզ այսօր ըզհաց...
— Ըզհաց...։
— Բայց ինչո՞ւ մըռըլտաս կամաց։
Ծիշտ մէջտեղն ինչո՞ւ կանգ կ'առնես նորէն,
Բան չեմ հասկընար ես այդ բառերէն։
— Մա՛յր, մի՛ բարկանար։ հացն որ ամէն օր
Աստուած կուտայ մեզ՝ է ցամաք ու չոր.
... Երբ «Հայր մեր» կ'ըսեմ՝ կը խնդրեմ արագ
Որ մեզ՝ հացին հետ՝ տայ քիչ մ'ալ... կարագ»։

---

### 24. ՀՐԱՀԱՆԳ

Գտէք եւ գրեցէք (Ուղեցոյց, էջ 60)։
1. Գոյն կամ ձայն ցուցնող բառեր։
2. Բարձրութիւն » »
3. Ուրախութիւն » »
4. Մարդկային բարոյական յատկութիւններ ցուցնող բառեր
5. » » թերութիւններ » »
6. Մրցակցութիւն ցուցնող բառեր (ինչպէս պայքար, կագ, ըմբշամարտ, եւայլն)։

## 22. ԼՈՅՍԻՆ ԿԱՐԵՒՈՐՈՒԹԻՒՆԸ

*Մարդուն պէտք եղած բանը միայն ազատ ու մաքուր օդ չէ։ Ան՝ ինչպէս որ տունկն ալ՝ պէտք ունի նաեւ արեւուն լոյսին, որ կեանք կուտայ։ Թէ՛ մարդը, թէ՛ բոյսը՝ արեւէն զրկուելով՝ մի եւ նոյն հիւանդութեամբ կը տառապին, կը գունատին, կը ծիւրին։ Բոյսը անպտուղ կ'ըլլայ, իր երփներանգ գոյնը, ձեւը կը կորսնցընէ, կը ծիւրի կը ծնգի։ Դրէ՛ք զայն մութ տեղ մը, որուն մէջ լուսաւոր ճառագայթ մը միայն թափանցէ, եւ ահա նոյն բոյսը, տեսակ մը բնազդումով, դէպ ի այն նեղ բացուածքը կ'ուղղուի, ճիշտ այնպէս, ինչպէս որ բանտարկեալ մը իր բանտին վանդակներէն կը կախուի, գաղտուկ դիտելու համար Արարչութեան սոյն առաջին սքանչելիքը, լոյսը, առանց որու բնաւ ո՛չ մէկ կենսաւոր պիտի կրնար ապրիլ։*

---

### 25. ՀՐԱՀԱՆԳ

*Հետեւեալ մասնիկներով վերջացող երկերկու բառ գտէք* (Ուղեցոյց, էջ 60—61)։

***Եղի, ին, ակի, ծու, նակ, անի, ոտի, ու, ուկ, որակ, ունի, ոլի, ունակ, ուց, ուք, չէք կամ չեայ, ածք, ացք, անք, ան, ուստ։***

Ծան. — *Առաջին նոյն մասնիկներով վերջացող բառերէն մէկմէկ օրինակ.* — Աղեկցի, խորին, ճեպակի, ընծու, կոչնակ, հովանի, մեռելոտի, ահարկու, գեղջուկ, բլրակ, ծերունի, ազգալի, շնորհունակ, սեւուց, տաճուք, կաղանդչէք, նաւորդչեայ, խնդրուածք, ջաղացք, մաղթանք, իշխան, ապրուստ։

## 23. ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹԻՒՆ

*Երբ դպրոց երթալու ժամը կը հնչէ, Սօֆի իր սենեակը կ'ելլէ։ Հոն, առանց դժուարութեան կը գտնէ կանոնաւորապէս շարուած ու իրիկուընէ պատրաստուած իր գիրքերը։ Սենեակը մաքուր ու կոկիկ է, այն աստիճան որ տեսնելն անգամ հաճոյք կ'ազդէ. — ամէն բան իր տեղն է, և խնամոտ ձեռք մը զանոնք միշտ կարգի կանոնի մէջ կը պահէ։ Սօֆի հանդարտիկ կ'իջնէ վար, մօրը ձեռքը կը պագնէ և կ'երթայ։ Ժամանակին կը հասնի դպրոց եւ երբեք բան մը մոռցած չէ։*

*Երբ Հրանտ դպրոց երթալու կը պատրաստուի, ամէն բան տակնուվրայ կ'ըլլայ. «Մա՛յրիկ, Աշխարհագրութիւնս տեսա՞ր։» Աշխարհագրութիւնը գետինն է, անկիւն մը ձգուած։ «Հապա Քերականութի՞ւնս։ Հա՛, կարծեմ սենեակս է։» Եւ Հրանտ վերի յարկը կ'ելլէ։ «Ո՛չ, ո՛չ, Քերականութիւնս վարը՝ ճաշարանն ըլլալու է։» Հրանտ նորէն վար կ'իջնէ։ «Վա՜յ չարաճճի, գըլխա՛րկս հապա, գլխա՞րկս ուր դրեր էք։ Հա՛ կարծեմ պարտէզն եմ մոռցեր իրիկունը։» Գլխարկը գիշերուան ցօղէն թրջեր է։ Հրանտ կ'երթայ կ'առնէ։ Վազելով հեւալով դպրոց կ'երթայ, առանց մօրը ձեռքը համբուրելու, վասն զի ուշ մնացեր է։ Ուշ մնալուն համար կը պատժուի, եւ գիրքի դասը սկսած ատեն, կը տեսնէ որ գրիչին կոթը տունը մոռցեր է։*

*Ամէն բանի համար տեղ մը որոշեցէք եւ ամէն բան իր տեղը դրէք։*

---

### 23. ՀՐԱՀԱՆԳ

Հարցումներուն պատասխանելով ըսէք (Ուղեցոյց, էջ 61)։

Ի՞նչ համեմներ և ի՞նչ ոգելից ըմպելիներ կը ճանչնաք։

## 24. ԽՆՁՈՐՆ ՈՒ ՏԱՆՁԸ

*Խնձորն ու տանձը կուտաւոր պտուղներ են. անոնց ձեւը գրեթէ կլոր է. երբ խակ են, կանաչ գոյն ունին, կեղեւ ու միս ունին. աշունը կը հասուննան։ Շատ համեղ են եւ տանտիկինը զանոնք չորցնելով կը պահէ՝ ձմեռը ուտելու կամ կերակուր ու անուշեղէն շինելու համար։*

*Խնձորը բոլորշի է, շատ անգամ կարմրագոյն. իր կուտը թթուխ է, համը՝ աւելի թթու։*

*Տանձը աւելի երկայն է, յաճախ դեղին ու կանաչ գոյն ունի, կուտը սեւ է, աւելի անուշ համ ունի։*

---

## 25. ՕԴԸ ԱՇԽԱՐՀ ԿԸ ՊԱՏԷ

*Օդ տեսա՞ծ ես դուն։ Միշտ մօտդ է ան, եւ դուն չես տեսներ։ Բայց կարելի է ըսել թէ ի՛նչպէս ձայն կը հանէ։ Տեսնե՛նք. ահա քամին կը շնչէ խողովակներու մէջ, եւ սուլելով ներս կը մտնէ տունին բացուածքներէն։ Պատուհաններն ու դռները կը դղրդէ եւ սաստիկ փոշի կ'ըլլայ ճամբուն վրայ։ Բայց քամի՞ն ինչ է։ Օդն է որ կը շարժի, տեղէ մը ուրիշ տեղ կը փախչի, փախած ատեն առարկայի մը կը զարնուի, եւ կը լսուի աղաղակ ու սուլմունք։ Երբ փող հնչեցնես կամ մորակ շառաչեցընես, ձայն կը լսուի. այնպէս չէ՞։ Այդ ձայնն է օդը։ Փորձի համար թուղթէ պարկ մը շինէ և փոքրիկ*

---

**27. ՀՐԱՀԱՆԳ**

Հարցումներուն պատասխանեցէք ( Ուղեցոյց , էջ 61 ):

*Ի՞նչ ըսել է մոլորակ. — Որո՞նք են արեւին չուրջը դարձող երկնային մարմինները (մոլորակ)։*

*ծակ մը թողելով՝ փչէ՛, ուռեցո՛ւր զայն. յետոյ ափովդ խփէ՛ այդ փչած պարկդ. սաստիկ ճայթիւն կը հանէ եւ կը պատռի։ Այդ ճայթիւնը օ՛դն է որ պարկին ծակէն դուրս կը ժայթքէ։ Վազած ատենդ կը զգաս թէ ի՛նչպէս օդը երեսիդ կը զարնուի։*

*Կը նշանակէ թէ միշտ քեզի հետ է ան, եւ դուն անով շունչ կ'առնես։ Առանց օդի, րոպէ մը անգամ ապրիլ կարելի չէ։ Երբ ջուրին տակը կը լողաս, ջուրը չորս կողմդ կը պատէ։ Օդն ալ այսպէս կը շրջապատէ զքեզ ցամաքին վրայ, և դուն զայն չես տեսներ, սա պատճառով որ շատ նուրբ ու թափանցիկ է ան։ Օդը մինչեւ անգամ քու ներսդ կը մտնէ։*

---

## 26. ԹԱԳԱՒՈՐՆ ՈՒ ՊԱՆԴՈԿԱՊԵՏԸ

*Թագաւոր մը, որ կառքով ճամբորդութիւն կ'ընէր, գիւղի մը մէջ կանգ առաւ՝ ձիերը փոխելու համար։ Մինչդեռ կայարանին մարդիկը ձիերը փոխելու ետեւէ էին, Նորին Վեհափառութիւնը պանդոկ մտաւ եւ՝ շուտ մը երկու հաւկիթ բերել տալով՝ կերաւ։ Մեկնելու վրայ էին, երբ մանկլաւիկ մը, խռովայոյզ երեւոյթով, եկաւ դռնակին առջեւ. «Տէ՛ր իմ, սա անպիտան պանդոկապետը քսան ոսկի կ'ուզէ երկու հաւկիթին համար զոր պատիւ ունեցաւ Ձեր Վեհափառութեան հրամցը-*

---

**28. ՀՐԱՀԱՆԳ**

*Հարցումներուն պատասխանեցէ՛ք* (Ուղեցոյց, էջ 61—62)։

***Որո՞նք են մշակութեան գործիքները — Ըսէ՛ք թէ ի՞նչ կ'ընենք նոյն գործիքներով։***

նելու ։ — Հո՛ս կանչէ այդ չարաճճին , ըսաւ Թագաւորը ։» Պանդոկապետը կուգայ , գլխարկը ձեռքը եւ խոնարհ դիրքով ։ «Պարոն պանդոկապետ , կ՚ըսէ Թագաւորը , կ՚երեւի թէ հաւկիթը հազուագիւտ բան մ՚է ձեր գիւղին մէջ , քանի որ այդչափ սուղ կը ծախէք ։ — Ո՛չ , Վեհափառ Տէր , կ՚ըսէ պանդոկապետը զուարթ դէմքով մը , ընդհակառակն հաւկիթը առատ է , բայց թագաւորներն հազուագիւտ են. ուստի , երբ բարեպատեհ դէպքն հոս բերէ Ձեզ նման թագաւոր մը , հարկ է որ առիթէն օգուտ քաղենք» ։ Թագաւորը ժպտելով՝ հրամայեց որ քսան ոսկի տրուի ։

---

## 26. ՍՈՂՈՄՈՆ ԻՄԱՍՏՈՒՆ

Տասներկու տարեկան էր ան երբ գահն ելաւ ։ Գաբաւոն գնաց , ուր Վկայութեան Խորանը կը գտնուէր , Աստուծոյ ողջակէզ ըրաւ , եւ փառաւոր իշխանութիւն մը վարեց ։ Աստուծմէ իմաստութիւն խնդրեց , ստացաւ եւ առոր նշանը ցուցուց զարմանալի դատաստան մը ընելով երկու մայրերու միջեւ ։ Երկուքն ալ մի եւ նոյն սենեակը կը բնակէին , երկուքն ալ մէկ մէկ ծծկեր երախաներ ունէին . մէկուն որդին կը մեռնի գիշերանց եւ միւսինը առնելով՝ դիակը անոր տեղ կը դնէ ։ Երբ մայրը կ՚արթննայ , կը դիտէ որ մեռած մանկիկը իրենը չէ եւ փոփոխութիւն եղած է ։ Կը բողոքէ Թագա-

---

**29. ՀՐԱՀԱՆԳ**

Հարցումներուն պատասխանեցէ՛ք (Ուղեցոյց , էջ 62) ։

Ի՞նչ ըսել է Համաստեղութիւն և որո՞նք են կենդանակամարի տասներկու համաստեղութիւնները ։

*տուրին, մինչդեռ, միւսը կը պնդէ թէ կենդանի մանկիկը իրն է։ Սողոմոն հրաման կ'ընէ որ մանկիկը երկու կտոր ընեն, եւ երկու մայրերու միջեւ բաժնեն։ Այն ատեն ճշմարիտ մայրը կը գոչէ. — «Տէ՛ր արքայ, տուէ՛ք մանկիկն ամբողջ այս չար կնիկին։ Աւելի լաւ կը համարիմ թողել զայն, քան թէ անոր մահը տեսնել»։*

Վարժ. — *Բացատրել. — Ո՞վ է Սողոմոն, ի՞նչ է Գաբաւոն, Վկայութեան խորան, ողջակէզ։ — Պատմեցէք Սողոմոնի Դատաստանը։*

---

## 28. ՄԱՅՐԻ՛Կ ՄԱՅՐԻ՛Կ...

*Ցոյսերըս մարեց կեանքի մրրիկը,*
*Օտա՜ր են մարդիկ, բոլո՜րը օտար։*
*Սիրելի՛ մայրիկ, ո՞ւր է քու գիրկը,*
*Ա՜խ, ես յոգնած եմ, մա՛յր, եկո՛ւր խստա՛ր...։*

*Մրտերիմ չունիմ, մինա՜կ եմ դարձեալ,*
*Իս կեանքէն խլեց հզօր ալիքը,*
*Այս յոգնած գլխուս կ'ուզեմ հանգիստ տալ,*
*Ա՜խ, մայրի՛կ, մայրի՛կ, ո՞ւր է քու գիրկը...։*

*Ո՜հ, լուռ է չուրջս, հեռո՜ւ է ինձմէն՝*
*Մայրիկըս՝ հեռո՜ւ... խուլ է տընակը...*
*Մէկըն ալ չկայ որ յոյս տայ նորէն,*
*Ա՜խ, անգի՛ն մայրիկ, ո՞ւր է քու գիրկը...։*

Ապրիլ, 1899 — Մ. ՄԻՍԱՔԵԱՆՑ

---

## 30. ՀՐԱՀԱՆԳ

(Ուղեցոյց, էջ 62—63):

*Գրեցէ՛ք այլ եւ այլ ուսումներու, գիտութիւններու անունը:*

## 29. ԱԴԱՄԱՆԴ

*Ադամանդը մաքուր՝ բիւրեղացած ածուխ է. ամէն մարմիններէ աւելի կարծր է, իր փոշիով միայն կը մաշուի: Կոշտ ադամանդը կը տաշեն փոշիովը եւ անոր այլ եւ այլ երեսներ կուտան: Ադամանդը սովորաբար գոյն չունի, բայց սեւ, դեղին, կանաչ ու վարդագոյն քարեր ալ կը գտնուին ու շատ յարգի են: Ադամանդը մեծ արժէք կ'ունենայ երբոր մէջը բիծ չունի, մաքուր է եւ պայծառ ցոլքերով:*

*Ադամանդը Հնդկաստանի քանի մը գետերուն մէջ կը գտնուի: Նոյնպէս Ուրալ լեռներն ու Պրէզիլ: Միշտ հողով ծածկուած է եւ գայլախազէ տարբերութիւն չունի: Գետին ջուրը կը դարձնեն, աւազը կը հանեն և փայտէ ակօսաւոր տախտակներու կամ մաղոտ կաշիներու մէջ կը լուան: Ադամանդները ակօսներուն կամ մաղերուն մէջ կը մնան եւ ապա մարդիկ առնելով՝ անոնց հողը կը հանեն: Ադամանդը կերատով կը ծախեն: Երբ ադամանդ մը 7 էն մինչեւ 8 կերատ ծանր է, գինը սահման չունի:*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ. — Ի՞նչ է ադամանդը: — Ինչո՞վ կը կտրեն ապակին: — Ի՞նչ բաներու կը գործածեն ադամանդը: — Ուրիշ բանկագին քարեր ալ գիտէ՞ք: — Ի՞նչ է բիւրեղը, եւ ի՞նչ բաներ բիւրեղէ կը շինուին: — Եկեղեցիին ջահերը ին-

---

### 31. ՀՐԱՀԱՆԳ

*Ըսէ* (Ուղեցոյց, էջ 63):

*1. Կենդանային մարմիններու անուններ: 2. Բուսային մարմիններու: 3. Հանքային մարմիններու:*

*Այս երեք դասակարգերուն տարբերութիւնը ի՞նչ է:*

չո՞վ շինուած են: — Ո՞ւր կը գտնուի ադամանդը: — Իսկ մարգարի՞տը: — Աշխարհագրական քարտէսին վրայ ցոյց տուէք Հնդկաստանը, Ուրալ լեռը, Պրազիլը: — Ո՞վ կը ծախէ ադամանդը:

## 30. ՁԵՌՔ ՈՒ ՈՏՔ

*Մարդը ունի երկու ձեռք եւ երկու ոտք. ասոնք մարմինին մասերն են, երկուքն ալ բունին կցուած, եւ երբ գործիք կը ծառայեն մարդուն։ Այս երկու գործիքը հինգական մատերու բաժնուած են որոնց ծայրն եղունգ կը բուսնի։ Երբ մանուկը դեռ ոտք ելած չէ, ձեռքերն ալ կը գործածէ քալելու։*

*Ձեռքը ունի բութամատ մը որ միւս մատերուն դէմ կը գտնուի եւ անոնց հետ միանալով՝ բան մը բռնելու կը ծառայէ։ Ձեռքի մատերը երկայն են ու ճապուկ, անով մարդ շատ փափուկ շարժումներ կ՚ընէ եւ ամէնէն նուրբ գործերը կրնայ կատարել։*

*Ոտքի մատերը մէկ կարգի վրայ շարուած են և անոնցմով բան մը բռնել կարելի չէ. միայն անկարեւոր շարժումներ կրնան ընել և չեն կրնար ո՛ր և է գործ կատարել, ինչպէս են գիր գրել, կար կարել, եւն. եւն.։*

ՀԱՐՑ. — Ի՞նչ կը կոչուին ձեռքին հինգ մատերը:

## 32. ՀՐԱՀԱՆԳ

*Հարցումներուն պատասխանեցէք* (Ուղեցոյց, էջ 63—64):

1. *Ի՞նչ է տառ մը։* 2. *Մեր ազգին մէջ որո՞նք են ծանօթ տառակախօսները (հին թէ նոր)։* 3. *Գրեցէ՛ք նաեւ ուրիշ ազգերու տառակախօսներուն անունը։*

## 31. ԲԱՐԿՈՒԹԻՒՆ

Կը ճանչնամ պզտիկ աղուոր տղայ մը՝ խնձոր երեսներով ու կրակոտ՝ անուշ աչուըներով։

Անցեալ օր զինքը տեսայ երբ իր քրոջը կը բարկանար, ինչու որ ան չէր ուզեր՝ իր դասը չսորված՝ խաղալ իրեն հետ։ Բարկութիւնը ա՛յնքան տգեղցուցած էր զինքը՝ որ հազիւ կրցայ ճանչնալ։

Իր աչուըները, որ միշտ այնքան անուշ էին, կրակներ կը ցատքեցնէին։ Իր վարդագոյն երեսները դեղնած էին։ Ճակատը փոթ փոթ եղած ու յօնքերը կծկուած, շրթունքները դողդոջուն, կատաղի գազանի մը կերպարանքը առած էր։ Ի՜նչ ցաւալի բան էր։ Թէ որ անգամ մը կարող ըլլար նայիլ հայելիին մէջ, ի՛նք ալ իր դէմքէն պիտի սոսկար։

Գիտէ՞ք, բարկութիւնը ո՜րքան կը տգեղցնէ։ Անիկայ սիրտը քէնով, չարութիւնով ու անգթութիւնով կը լեցնէ, սոսկալի զգացումներ կը նկարուին իր դէմքին վրայ։ Փախէ՛ք բարկութենէն, սիրելի տղաք։ Ան կը տգեղցնէ ձեր պզտիկ սիրտերը, ինչպէս ձեր դէմքերը։ Ան տխրութեամբ կը լեցընէ ձեր ծնողքները, և սոսկում կ՚ազդէ ամէն ձեզ մօտեցողներուն։

Ամէնուն հետ քաղցրութեամբ վարուեցէ՛ք։ Թէ որ քաղցր ու բարի ըլլաք, պիտի սիրուիք ամէնէն ու երջանիկ պիտի ըլլաք։

---

## 33. ՀՐԱՀԱՆԳ

Հարցումներուն պատասխանեցէք (Ուղեցոյց, էջ 64):

Որո՞նք են գլխաւոր արհեստները, արուեստները և գեղարուեստները։

## 32. ՇՓԱՑԱԾ ԺԱՌԱՆԳՈՐԴՆԵՐ

*Հարուստ մարդ մը, իր մահուան ժամանակ, կը թողու իր ընտանիքին՝ մեծագումար ստացուածք։ Երէց որդին, որ իր հօրը գործակից եղած էր, փորձառաբար գիտէ ստակին արժէքը, և իր ժառանգութիւնը իմաստութեամբ գործածելով՝ կ'աւելցնէ։ Փոքրիկ եղբայրներուն ինկած մասը տոկոսի կը դրուի, և իրենք կը սիրուին ու կը փայփայուին. օրը տասն անգամ կը կրկնուի. «Դուն հարուստ ես, դուն բնաւ պիտի չաշխատիս, ի՛նչ որ ուզես կրնաս ունենալ, դուն բերանդ ոսկի դգալով ծնած ես»։ Պատանի ժառանգորդը շուտով կը հասկընայ այս տեսակ խօսքերու նշանակութիւնը. կ'ուզէ և կ'ունենայ գեղեցիկ ու ոսկեճամուկ հանդերձներ, խաղալիկ, և այլն։ Շաքարեղէններ կոկորդն ի վար կը լեցուին, և գուրգուրանքով կը սպանուի։ Կ'անցնի մէկ դպրոցէն միւսը, միշտ շողոքորթուելով ու փայփայուելով, որով կ'ըլլայ գոռոզ ու ամբարտաւան. կ'արհամարհէ իր ուսուցիչները, ամէն բանի մէջ իր կամքը կը կատարէ, երբեմն բռնութեամբ, երբեմն առատաձեռնութեամբ։ Ստակը ինք վաստկած չըլլալով՝ անոր իսկական արժէքը չի գիտեր. բոլոր գիտցածը իր բերնին ոսկի դգալն է։*

*Այն երիտասարդներ որոնց գրպանը ուրիշին շահած դրամով լեցուած է, գրեթէ ստոյգ է որ բոլոր ունեցածնին կը կորսնցընեն և փոխարէն կը ստանան յոռի ունակութիւններ, որոնք իրենց առողջութիւնն ու պատիւը միանգամայն կը սպառեն։*

---

### 34. ՀՐԱՀԱՆԳ

Պատասխանելով ըստ (Ուղեցոյց, էջ 65):

**Քանի՞ մասէ կը բաղկանայ մարսողութեան գործարանը։ Այսինքն սնունդ մը ո՞ր գործարաններէ անցնելու է։**

## 33. ՓՈՔՐԻԿ ՄՈՒՐԱՑԻԿԸ

*Կիրակի օր մը, շատ պզտիկ աղջիկներ կը խաղային հրապարակին վրայ, ծառերուն շուքին տակ։ Ոմանք չուան կը ցատքէին, ոմանք ժուռ կուգային, ուրիշներ շրջանակ կը դարձընէին։*

*Յանկարծ, հին լաթերով՝ տխրադէմ աղջիկ մը խաղացողներուն մօտեցաւ։ Ծառերը նայեցան, արհամարհոտ շարժումներ ըրին ու ըսին. «Մուրացկա՛ն է։»*

*— Աւա՜ղ, ճշմարիտ է, ըսաւ հեզ աղջիկը, մուրալու ստիպուած եմ. մենք աղքատ ենք, և մայրս հիւանդ է. բայց մի՛ մեղադրէք զիս, օրիորդներ. եթէ ստակ կ՚ուզեմ, հաց գնելու համար է։ Հա՜ց գնելու։ Որկրամոլ չեմ։ Ա՜խ, մի՛ մերժէք, անօթի եմ։»*

*Եւ այս խօսքերը արտասանելով՝ խեղճ աղջիկը կուլար։ Պզտիկ աղջիկները յուզուեցան ու շրջապատեցին զայն։*

*Հարուստները արծաթ դրամներ տուին, ուրիշներ ալ տասնոցներ։ Ծառերն ալ, որ ստակ չունէին, անոր մխիթարական խօսքեր ըրին։ — Ասիկա ալ ողորմիլ է, սրտին ողորմութիւնն է։*

*Մատաղ մուրացիկը հեռացաւ ուրախ զուարթ։ Ամբողջ շաբաթը հաց գնելու ստակ ունէր. մխիթարուած էր։*

*Ողորմութիւն տուող աղջիկները երբեք այնքան հաճոյքով խաղացած չէին, որքան այս բարի գործէն ետքը։*

*Երբ մարդ բարիք գործէ, սիրտը զուարթ կ՚ըլլայ։*

---

### 35. ՀՐԱՀԱՆԳ

*Հարցումներուն պատասխանեցէ՛ք* (Ուղեցոյց, էջ 65):

1. *Ի՞նչ ըսել է բանաստեղծութիւն։* 2. *Ի՞նչ ըսել է արձակ։* 3. *Ոտանաւո՞ր։* 4. *Որո՞նք են քեզի ծանօթ հայ բանաստեղծները։*

## 34. ԵԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

*Մարմինները ունին զօրութիւն մը որով ուրիշ թեթեւ մարմինները իրենց կը քաշեն, լոյս կ'արձակեն ու կենդանիներուն մէջ ջղային ցնցում կը պատճառեն։ Այդ զօրութիւնը կը կոչուի Ելեկտրականութիւն։*

*Քրիստոսէ 700 տարի առաջ կ'ապրէր Թալէս փիլիսոփան։ Ա'ն գտաւ մարմինին այդ զօրութիւնը՝ սաթի միջոցաւ (սաթոյն)։*

*Շփումը ելեկտրականութիւն առաջ կը բերէ։ Ինչպէս՝ մութ սենեակի մը մէջ՝ երբ կատուին կռնակը շփենք, իսկոյն կը նշմարուին փոքրիկ կայծեր. ա'ս է Ելեկտրականութիւնը,*

*Կնքամոմով չուխայի վրայ շփելէ ետքը, երբ չիւղ մը մօտեցնենք, կնքամոմը զայն իրեն կը քաշէ։*

*Նոյնպէս մագնիսն ու սաթը շփուելով փոքրիկ չիւղեր, ասեղներ, եւայլն իրենց կրնան քաշել, վասն զի ելեկտրական զօրութիւն կը պարունակեն։*

## 35. ԼԵՒՈՆԻՍ

*Աչքն է սեւուկ, դէմքը սիրուն*
*Դեռափթիթ իմ Լեւոնիս,*
*Փափկիկ ու վարդ իր այտերուն*
*Չես դիմանար թէ սիրտ ունիս։*

### 36. ՀՐԱՀԱՆԳ

**Պատասխանեցէ՛ք զրոյցի ու քերականութեան (Ուղեցոյց, էջ 66)։**

**1. Քերականութեան մէջ թիւը քանի՞ է։ 2. Հոլո՞վը. 3. Սեռն քանի՞ն։ 4. Գոյականը քանի՞ տեսակ է։ 5. Ածականնե՞րը։ 6. Բա՞յը։ 7. Շաղկա՞պը։ 8. Դերբա՞յը։ 9. Մակբա՞յը։ 10. Միջարկութի՞ւնը։**

**(Տե՛ս Նոր Քերականութիւն Դաւթեան)։**

Շուշան մարմինն ամբողջ ճապուկ
Բոյնն է անուշ համբոյրներու․
Ծիծաղներուն ձայնը փափուկ
Կը ցրուեն ցաւն հոգւոյդ հեռու։

Ճերմակ թեւերն երբ կը բացուին,
Կարծես հրեշտակ մ'է մարմնացեալ,
Մազերն ոսկի թոյլ թոյլ հովին՝
Որ կ'ուզէ վե՜ր թռչիլ դարձեալ։

Թարմ ու ժպտուն ինչպէս մայիս,
Հոտն անուշիկ, գոյնը կաթի,
Երբ աչքերուն մէջ կը նայիս
Հոգին հոգւոյդ մէջ կը կաթի։

Արցունքներու մարգրիտ հատեր
Երբ թարթիչներն իր կ'ողողեն
Դուն կը կարծես վարդի թերթեր
Թրջած այգուն ոսկի ցօղէն։

Ան ի՜նչ շընորհ, ան ի՜նչ հրապոյր,
Կը լեցուին աչքդ արցունքներով,
Երբ իր բոյնին մէջ քաղցրաբոյր
Կը դիտես քունն իր անխռով։

---

### 37. ՀՐԱՀԱՆԳ

Պատասխանելով ըսէք (Ուղեցոյց, էջ 66):
Ի՞նչ ոսկորներ կը պարունակէ մարդկային կմախքը։

*Ա՛լ մի՛ նայիր դուն վարդերուն ,*
*Ամբողջ հրեշտակ , ամբողջ հոգի ,*
*Ամենաքանչ վարդը ցօղուն ,*
*Հոն , օրրոցին մէջ կը պառկի ։*

(Բիւրակն , 1899) Ա. Ռ.

---

## 36. ԽՈՀԱՆՈՑ ՈՒ ՄԱՌԱՆ

*Խոհանոցն ու մառանը , երկուքն ալ , տան մասեր են . հաստ պատեր , դուռ ու պատուհան ունին ։ Երկուքն ալ տան ետեւի կամ տակի կողմը կը չինուին սենեակներէն հեռու ։*

*Խոհանոցը աւելի լուսաւոր կ'ըլլայ . հոն կը գտնուի ծխան ուր կրակ կը վառեն կերակուր եփելու համար ։ Հոն կը պահուին ամաններ ու զանազան առարկաներ . հոն կրնայ գտնուիլ նաեւ լուացարան , ինչպէս և փայտանոց եւ ածխանոց ։*

*Մառանը մութ կ'ըլլայ , հոն կրակ չի վառուիր եւ անոր օդը յաճախ փոխելու պէտք չիկայ . հոն կը պահուին սնունդներ՝ միս , գինի ու ընդեղէններ , զատ զատ կարասներու մէջ ։ Մառանին մօտ կ'ըլլայ նաեւ չտեմարան մը ։*

ՀԱՐՑՈՒՄՆԵՐ . — Ո՞րն են խոհանոցի առարկաները : — Ի՞նչ կրնայ գտնուիլ մառանի մը մէջ :

---

### 38. ՃՐԱՀԱՆԳ

**Պատասխանելով ըսէք** ( Ուղեցոյց , էջ 66-67 ):

1 . *Ի՞նչ գիտէք Շերամին վրայ ։* — 2 . *Ըսէ՛ք՝ ի՞նչ կերպարանափոխութիւններ կը կրէ , ի՞նչո՞վ կը սնանի , ի՞նչ օգուտ ունի , եւայլն ։*

## 37. ՄԱՐՄԻՆԻ ԿՐԹԱՆՔ ՈՒ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆ

*Մարդկային մեքենային ամէն մէկ շարժումը զօրութիւն կը պահանջէ։ Արդ՝ այդ զօրութիւնը նոյն մեքենային և ո՛չ մէկ տեղը բոլորովին պատրաստ կը գտնուի. պէտք է մե՛նք արտադրենք զայն, այսինքն մեքենային մէջ բան մը գործածենք։ Շոգեշարժ մեքենային մէջ ածուխ կը վառենք, որուն այրումը մեքենական զօրութեան կը փոխուի։ Լաւ կազմակերպուած մեքենայի մը մէջ ստացուած զօրութիւնը՝ գործածուած այրելի նիւթին ծանրութեան հետ համեմատական է։ Մարդկային մեքենային մէջ ալ զօրութեան արտադրութիւնը այրելուն հետեւանքն է, բայց սա՛ տարբերութեամբ որ հոս՝ այրելի նիւթը մարդկային մեքենային մարմինին կը խառնուի, այնպէս որ, մեր մարմինին ամէն մէկ մասին մէջ, գործիքն է որ իր գործելուն չափով կը մաշի. բայց այս գործիքը, արհեստանոցներու գործիքներուն պէս, միայն երեսէն չի մաշիր. անոր ամբողջ գոյութիւնը, զանգուածը կը քայքայի՝ կ՚այրի։*

*Մարդկային մամինին մէջը, աշխատութենէ առաջ եկած այս մաշումը ուրիշ բան չէ, բայց եթէ նոյն իսկ իր գոյութեան ժամանակ մաշումը։ Արդէն գիտենք թէ ապրիլը մաշիլ, այրիլ է. իսկ աշխատիլը, մարմինին գործարանները կրթելը՝ աւելի ուժգնութեամբ ապրիլ, աւելի շուտ մաշիլ, աւելի փութով այրիլ է։*

---

### 38. ՀՐԱՀԱՆԳ

*Բերնով ու գրով պատասխանեցէք* (Ուղեցոյց, էջ 67—68)։

*Ի՞նչ առածներ գիտէք, գրեցէ՛ք և տուէ՛ք անոնց բացատրութիւնը։*

## 38. ԻՆՉՈ՞Ւ ԿԸ ՍԻՐԵՄ ԳԵՂՍ

*Մեր գեղը գեղեցիկ չէ․ գրեթէ բոլոր տուները աղիւսէ, յարդէ ու հողէ շինուած են, հազիւ քանի մը տուներու ճակատը քարաշէն է։ Փողոցները սալարկուած ու մաքուր չեն․ պարզ ճամբաներ են ուր, անձրեւոտ օրեր, ցեխէն անցուդարձն անգամ կը դժուարանայ։ Եւ սակայն կը սիրեմ մեր գեղը։ Կը սիրեմ՝ վասն զի ես հոն ծնած եմ, վասն զի կեանքիս առաջին օրերը հոն անցուցած եմ, ծնողքիս քովիկը, բարի ընկերներու՝ ծանօթ, սրտակից, սիրելի էակներու հետ։ Մեր գեղը միշտ քաղցր յիշատակներ կ'արթնցընէ միտքիս մէջ։ Գուցէ օր մը ստիպուիմ անկէ հեռանալ, օտար երկիր երթալ՝ ապրուստ ճարելու համար, վասնզի մեր գեղին մէջ ապրուստ ճարելու միջոցներ կը պակսին։ Հեռու տեղեր կան, ուր մարդ կրնայ գործ գտնել, ստակ շահիլ։ Կ'ըսեն նաեւ թէ ճամբորդութիւնը շատ բան կը սորվեցընէ։ Աղէկ է որ սորվինք թէ ուրիշ տեղեր ի՞նչ կ'ընեն եւ ի՞նչպէս կ'ընեն, որպէս զի անոնց օրինակին հետեւինք։ Բայց երբ գեղէս հեռու ալ գտնուիմ, միշտ պիտի յիշեմ զայն։ Անոր սէրն ու կարօտը միշտ պիտի տածեմ եւ հոն պիտի դառնամ նորէն, կեանքիս վերջին օրերն անցընելու համար։ Կ'ուզեմ հոն մեռնիլ եւ թաղուիլ այն անշուք գերեզմանատան մէջ ուր կը հանգչին նախահայրերուս ոսկորները։*

---

**40. ՀՐԱՀԱՆԳ**

*Հարցումներուն պատասխանեցէ՛ք (Ուղեցոյց, էջ 68)։*

*Ո՞րոնք են առողջապահութեան գլխաւոր պայմանները։*

## 39. ԱՆՏԱՌ

*Անտառը ընդարձակ տեղ մ'է ուր խիտ առ խիտ կ'աճին ու կը բազմանան վայրի ծառեր ու մացառներ։ Հոն կը գտնուին նաեւ շատ տեսակ որսի չորքոտանիներ ու թռչուններ։*

*Անտառին բարձր ծառերը կը կտրենք սղոցներով՝ փայտէ գերաններ ու տախտակներ շինելու համար։ Անտառի ծառերէն կը հանենք նաեւ վառելու փայտ ու կը շինենք ածուխ։*

*Ածխագործը կը մանրէ փայտերը, կը շարէ գետնի վրայ ու դէզ մը կը կազմէ։ Այս դէզը կը ծածկէ հողով. գագաթէն ծակ մը կը բանայ եւ անկէ ներս կը նետէ վառած փայտեր ու կրակ՝ դէզը բռնկեցնելու համար։ Երբ դէզին գագաթէն մխալը դադրի, կը մարի կրակը, ածուխ եղած փայտերը կը զատէ ու ծախու կը հանէ։*

*Որսորդները կը զբաղին անտառին մէջ որսի կենդանիներ բռնելով, ինչպէս են եղջերու, այծեամ, նապաստակ, լորամարգ, կաքաւ։ Որսորդը բռնած որսերը կը ծախէ, որովհետեւ այս կենդանիներուն միսը կ'ուտուի։*

---

**ԱՌԱԾ**

*Մարդուն փորը հորի նման է, որչափ ուտէ՝ չ'երեւար։*
*Փորձուած սատանան անփորձ հրեշտակէն լաւ է։*

---

**41. ՀՐԱՀԱՆԳ**

*Ըսէք եւ գրեցէք* (Ուղեցոյց, էջ 68—69):

*Ի՞նչ տուակներ գոց սորված էք, գրեցէ՛ք խորագիրները եւ նոյն տուակներէն բղխող բարոյական խրատը։*

## 40. ՎԱՐՁԱՏՐՈՒԱԾ ՊԱՐԿԵՇՏՈՒԹԻՒՆ

*Հարուստ կալուածատէր մը ընկերներու հետ որսի ելած ըլլալով՝ իր վարձականներէ մէկուն արտը կոխոտած ու աւրշտկած էր։ Ագարակապանը եկաւ այս վնասին համար գանգատեցաւ։ «Ո՞րչափի կը հանի քեզի պատճառած վնասս, հարցուց կալուածատէրը։ — Առնուազն քսան ոսկիի։ — Ա՛ռ ահա քսան ոսկի։ Անիրաւութիւն մ'է որ ես ու մարդիկս, զուարճութեան համար, քեզ վնասի ենթարկենք»։ Արդ՝ հունձքի եղանակը դեռ չէր անցած, որով կոխոտուած ցորենը նորէն բուսաւ, այնպէս որ արտհունձի ատեն բնաւ յայտնի չէր կոխոտուած ըլլալը։ Նոյն իսկ ուրիշ արտերէ աւելի ցորեն տուաւ։ «Արդարութիւն չէ, մտածեց ագարակապանը, որ պահեմ ինծի տրուած գումարը, քանի որ հունձքերս կոխոտուելէ չվնասուեցան։» Եւ տարաւ քսան ոսկին ետ տալու։ Այսքան պարկեշտութեան համար, կալուածատէրը զգածուելով՝ ուզեց վարձատրել ագարակապանը։ «Ազնիւ և ուղղամիտ մարդ մ'ես, ըսաւ անոր. այդ քսան ոսկին քեզի՛ թող ըլլայ, անկէ զատ քսան ոսկի ալ կուտամ արդարամտութեանդ համար. աս քառասուն ոսկին իմ կողմէս տո՛ւր զաւկիդ որ քիչ օրէն պիտի ամուսնանայ, հարսնիքի նուէրս է ան, բայց ըսէ՛ զաւկիդ թէ հօրը պարկեշտութեամբ կը շահի զայն։»*

---

### 4Ձ. ՀՐԱՀԱՆԳ

Հարցումներուն պատասխանեցէք (Ուղեցոյց, էջ 69—70)

1. Ի՞նչ է ջերմաչափը և ինչէ՞ն կազմուած է։ 2. Ի՞նչ է օդապարիկը և ո՞վ է հնարիչը։

## 41. ԱՊԱԿԻ

*Ապակիէն կը շինեն տեսակ տեսակ շիշեր, ջուրի գաւաթներ, ապակեփեղկեր ու հայելիներ։ Շիշերու եւ գաւաթներու ապակին դիւրաւ մաքրուելու խիստ յարմար նիւթ մ'է, իր մէջ դրուած հեղուկները կը պահպանէ՝ առանց փոխելու անոնց համը։*

*Ապակափեղկերուն մէջէն լոյսն ու տաքութիւնը կրնան թափանցել, անոնք են որ մեզ կը պահպանեն ցուրտէն, հովէն ու անձրեւէն։*

*Հայելիին մէջ ցոլացած կը տեսնենք մեր պատկերը. մեր արդուզարդն ըրած ատեն՝ անոր մէջ կը նայինք, տեսնելու համար թէ պէտք եղածին պէս մաքո՛ւր է մեր վրան գլուխը։ Եթէ սենեակի մը մէջ՝ վառարանին կամ սեղանին վրայ՝ խոշոր հայելի մը գտնուի, սենեակը աւելի մեծ ու աւելի զուարթ կ'երեւայ։*

*Ժամացոյցներու ապակին թոյլ չիտար որ անոնց մէջ փոշի մտնէ ու կասեցնէ անոնց ընթացքը։ Ապակին թափանցիկ ըլլալով՝ կրնանք նաեւ տեսնել թէ ժամը քանի՛ն է։*

*Պատկերներու վրայ ալ ապակիի կտոր մը կը դնենք որպէս զի փոշիէ ու խոնաւութենէ չվնասուին ու ճանճերը չկրնան աղտոտել զանոնք։*

---

## 43. ՀՐԱՀԱՆԳ

*Հարցումներուն պատասխանեցէք* (Ուղեցոյց, էջ 70—71)։

1. ***Որո՞նք են ժխտական չինող նախադաս մասնիկները. օրինակներ տուէք***։ 2. ***Ի՞նչ ըսել է ածանցական մասնիկ. օրինակներ***։ 3. ***Ի՞նչ ըսել է բարդ ու ածանցեալ բառ***։ 4. ***Քանի՞ տեսակ և որո՞նք են յետադաս ածանցական մասնիկները***։

## 42. ՈՐԲՈՒՀԻՆ

Գըտի՛կ աղջիկ, աղու՛ր աղջիկ,
Ինչո՞ւ երեսդ այսպէս կախեր,
Կը մտմըտաս, տխուր լուիկ՝
Գետինն յառած քու աչուկներ

Որոնք փափաք ունին, կարծես,
Արցունք՝ արցո՛ւնք միշտ թափելու,
Քու փոքրը սիրտդ ի՞նչ վիշտ՝ այդպէս
Կը կրծէ, ի՞նչ վիշտ մահացու։

Տեսէ՛ք, տեսէ՛ք, երեսն ի վար
Ի՞նչպէս մազերը ցիրուցան,
Չը սանտրուած, անցած իրար՝
Թափթըփեր են ուսերուն վրան։

Անզարդ, պզտիկ ու շատ բարակ
Խեղճ շրջազգեստ մ'է նա հագեր
Որ ո՛չ փայլուն ունի կոճակ
Ո՛չ գոյնզգոյն ժապաւէններ։

Վիզն ու թեւերն ամբողջ մերկ են,
Ո՛չ մանեակ կայ, ո՛չ ապրանջան,
Ո՛չ մազերուն վրայ ժապաւէն
Եւ ո՛չ մատնի մատերուն վրան։

Եւ ո՞վ գիտէ, ո՞վ է տուեր
Ո՞րն իր բուխ—սիրտ դըրացիներէն,
Այն նոր կօշիկն ու գուլպաներ
Որ իր ոտքերը կը ծածկեն։

Իր պզտըտիկ թաթիկներով
Բռներ է կարժ մ'ահա երկայն
Ձոր կը փաթթէ՝ նստած իր քով՝
Խոշոր կընիկ մ'աչքով դաժան ։

Գիտէ՞ք, այդ կինն ո՞վ է, գիտէ՞ք,
Հարցուցէ՛ք այդ փոքր աղջըկան,
Եւ հառաչով մը որբը հէք
Պիտի ձեզի տայ պատասխան ։

Տեսէ՛ք, յօնքերն է պըռըստեր,
Երեսն է կոշտ ինչպէս կաշի,
Սըրածայր քիթ, ցըցուած այտեր՝
Չարութիւնը դէմքէն կաթի ։

Փաթթէ փաթթէ կարժն անհատում,
Կըծիկը միշտ կ'երթայ կուգայ,
Եւ աղջիկը՝ տըխուր տրտում՝
Նայի գետինն ու մոմըռայ ։

Վըրան ա՛լ ուժ չէ մընացեր,
Բարակ մատներն ալ դողդըղան՝
Ա՛լ յոգնեցան խեղճին թեւեր
Վըտիտ ծունկերն ալ կոտրեցան ։

Ուրախ զըւարթ խաղի ձայներ
Երբեմն երբեմն կուգան դըրսէն,
Փողոցներու մէջ վար ու վեր
Պզտիկ տղաք կը վազվըտեն ։

Վանդակի մէջ բանտարկըւած
Անբաղդ թռչնիկ՝ միմիայն ինք

Այդ խաղերէն է զրկըւած
Խամրի իր տան մէջ միայնիկ ։

Եւ այդ տըղոց ճիչերէն վերջ
Անցեալէն ալ կուգան ձայներ,
Եւ կ՚արթննան իր միտքին մէջ
Անուշ անուշ յիշատակներ ։

Այն երջանիկ անցած օրերն
Յիշէ՝ երբ ցաւ դեռ չէր զգացած,
Եւ իր մօրկան քաղցըր պատկեր,
Աչքին առջեւ կուգայ յանկարծ ։

Եւ մտմըտայ միշտ, մտմըտայ
Տարաբախտիկ այն Որբուհին
Մութ քօղ մ՚իջնէ դէմքին վըրայ
Սեւ աչուկները կը լեցուին ։

Լա՜լ կ՚ուզէ, յո՛րդ թափել արցունք,
Այլ չէ կարող, զի այն ատեն
Կամիթ, կըռուփ, հայհոյութիւն
Եւ ապտակներ սպառնան իրեն ։

Այսպէս կ՚անցնի իր կեանքն ահա
Դըժոխք մ՚է տունն իրեն համար,
Մօր մ՚անունով մէկ սատանայ
Կը կեղեքէ զինքն անդադար ։

* * *

Ա՜լ մի՛ երեսդ այդպէս կախեր,
Աղուո՛ր աղջիկ, պզտի՛կ աղջիկ,
Կ՚ուզե՞ս անցնին այս սեւ օրեր,
Կ՚ուզե՞ս ըլլալ դուն երջանիկ ։

Աղօթք ըրէ ամէն ատեն
Քու Պահապան Հրեշտակիդ
Որ քեզ առնէ այն աշխարհէն . . .
Տանի անուշ քու մայրիկիդ . . . ։

# ԳԼՈՒԽ Գ.

## I. ՈՍԿԻ ՇԻՆԵԼՈՒ ՄԻՋՈՑԸ

Թեպէրա, երեւելի նկարիչը, սիրելի էր Նաբոլիի փոխարքային, որով շատ հարստացաւ ու ազնուականներու և իշխաններու բարեկամացաւ։ Կը պատմուի թէ երկու Սպանիացի պաշտօնակալներ Աֆրիկիայի հրաշքներէն յափշտակուած, Թեպէրայի գալով կ'ուզէին զանիկա մասնակից ընել իրենց ապագայ հարստութեան, եթէ յանձն առնէր փիլիսոփայական քար փնտռելու համար պէտք եղած ծախքը վճարել։ «Ես ալ ոսկի կը շինեմ, ըսաւ Թեպէրա, վաղը եկէք և յայտնեմ ձեզի գաղտնիքը»:

Երկու պաշտօնակալները հետեւեալ օր Թեպէրայի բնակարանը գալով՝ զանիկա գտան իր սենեակին մէջ, ուր պատկերի մը վրայէն վերջին անգամ կ'անցնէր վրձինով։ Սպասաւորը կանչելով՝ հրամայեց պատկերը տանիլ վաճառականի մը, որ, փոխարէն, 400 տուգատ պիտի տար։ Եւ երբ սպասաւորը դրամներով դարձաւ, նկարիչը նետեց զանոնք սեղանին վրայ, ըսելով, «Պարո՛ններ, այս ոսկիներն ահա իմ բովէս են, ոսկի շինելու համար, աշխատութենէ զատ ուրիշ միջոց չեմ գիտեր:

Ֆրանքլին փիլիսոփան ալ կ'ըսէր, «Մարդ հարուստ ըլլալու համար իր արուեստին կամ իր գործին յարած մնալու է»։ Ո՛ւր էր թէ մեր երիտասարդները ըմբռնէին աս խօսքին ճշմարտութիւնը, և, փոխանակ անգործ նստելով բախտին սպասելու, ո՛ր և է գործի կամ արհեստի տէր ըլլային և անոր յարէին ՅԱՐԱՏԵՒՈՒԹԵԱՄԲ։

### 1· ՀՐԱՀԱՆԳ

*Յարմար բացարձակ կամ դասականը դի՛ր գիծերուն տեղ* (Ուղեցոյց, էջ 71)[1]:

1. *Մէկ տարիին մէջ կայ — ամիս, — շաբաթ, — օր։* 2. *Մէկ օրը կ'ընէ — ժամ, մէկ ժամը — վայրկեան ու մէկ վայրկեանը — երկվայրկեան. ուրեմն մէկ ժամն է օրուան — մասը, մէկ վայրկեանը* 1 *ժամին — մասը, և երկվայրկեանն ալ վայրկեանին — մասը։* 3. *Ս. Ծնունդի տօնը կուգայ Յունուարի — օրը։* 4. *— բերան ունինք, — ականջ — աչք, — ձեռք. մէն մի ձեռք կազմուած է — մատերէ։* 5. *— մահացու մեղքեր կան և — առաքինութիւն։* 6. *Երաժշտութեան մէջ — ձայնանիշ կայ։* 7. *Ուրբաթը շաբթուան — օրն է։* 8. *Թուաբանութեան մէջ — հիմնական գործողութիւն կայ։* 9. *Միջինքը մեծ-պահքի — օրն է։* 10. *— մասն բանի կայ Քերականութեան մէջ։* 11. *Ածականը — մասն բանին է։* 12. *— ձայնաւոր գիր կայ այբուբենին մէջ և — բաղաձայն։* 13. *Մէկ ֆրանքը կ'արժէ — սանդիմ։* 14. *Բենիամին Յակոբ նահապետի — որդին էր։*

Ծան. — *Խօսիլ Թուական Ածականներուն վրայ։* ( Տե՛ս Տարրական Քերականութիւն, էջ 17 ):

---

## 2. ԲԱՐԵՍԻՐՏ ԲԺԻՇԿԸ

*Աղքատ գործաւորի մը կինը, օր մը, իր հիւանդ տղան կը տանի տօքթոր Գ.ին որ անուանի բժիշկ մ'էր։ Տօքթօրը քննելով հիւանդը՝ կ'ապահովէ մայրը թէ հիւանդութիւնը ծանր չէ, և կը խոստանայ զայն դարմանել։ Խորհրդակցութիւնը վերջանալէն ետքը՝ կինը գրպանէն հանեց մէճիտիյէ մը զոր շատ նեղութիւններով վաստկած էր։ Այդ մեծ ու շքեղ սենեակին ճոխ զարդերը դիտելով՝ խորհեցաւ թէ այսքան համբաւաւոր բժիշկի մը խորհրդակցութեան համար լիաբուռն ոսկիներ կը վճարեն հարուստները, և վարանեցաւ,*

ակնածեցաւ այնչափ դոյզն գումար մը տալու։ Բայց, աւելի չունէր, և՝ երկչոտ ու ամօթխած՝ մէճիտիյէն սեղանին եզերքը դրաւ կամաց մը, խոնարհութիւն ըրաւ ու հեռացաւ։ «Տիկի՛ն, տիկի՛ն» ըսաւ բժիշկը։ Կինը ետ դարձաւ՝ ամօթէն կասկարմիր եղած։ Անշուշտ՝ բժիշկը աւելի սատակ պիտի պահանջէր։ Բայց ազնուասիրտ բժիշկը՝ ինք ալ աղքատութիւն քաշած էր երբեմն, և՝ կռահելով կնոջ շփոթութեան պատճառը՝ գութը շարժեր էր։ «Տիկի՛ն, ըսաւ, սատակդ հոս մոռցար,» և կնոջ ձեռքը չորս ոսկի սահեցնելով՝ «Երթաք բարո՛վ» ըսաւ։ Եւ, ա՛լ խօսք մտիկ ընել չուզելով՝ մեղմօրէն դէպի դուռը մղեց հէգ կինը որ, յուզուած ու խռովված, բառեր կը թոթովէր՝ չընդունելու համար բարեսիրտ բժիշկին մարդասիրական նպաստը։

## Զ. ՀՐԱՀԱՆԳ

Սա գոյականներում յարմար ածականներ տո՛ւր (Ուղեցոյց, էջ 72):

Տղայ, գլուխ, գլխարկ, թաշկինակ, գեղ, աղուէս, դաս, մարդ, կօշիկ, դանակ, տուն, գագաթ, բնութիւն, աշակերտ, բժիշկ, մայր, վարդ, լուսին, արեգակ, պատմութիւն, ադամանդ, կրակ, առիւծ, օդ, տանձ, հայ, բանտ, հով, ճակատ, նայուածք, պարտէզ, ծով, գետ, ջուր, մելան, երկաթ, ձի, էշ, հող, ծառ։

---

## 3. ՓԻՂ

Փիղէն աւելի խոշոր կենդանի չի կայ։ Գլուխն ու ականջները մեծ են. երկու ժանիք ունի, որ է փղոսկր, և երկայն քիթ մը, պատիճ, զոր ուզած կողմը կը դարձընէ և ամէնէն փոքր բաները անգամ, մինչև իսկ ասեղ մը, գետնէն կը վերցընէ։ Այս պատիճը անոր ձեռքն է. անով իր կերակուրը բերանը կը տանի, ծաղիկներ կը քաղէ, դուռեր կը բանայ ու կը գոցէ բանալիով։ Պատիճն ա՛յնքան ուժով է որ կրնայ անով

ձի մը, առիւծ մը ճզմել ու ծառը արմատէն հանել։

Փիղերը Հնդկաստանի մէջ խումբ խումբ կ'ապրին, առջեւէն ծերերը կ'երթան, մէջտեղէն պզտիկներն ու տկարները։ Կը սիրեն գետերուն եզերքն ու հովիտները։

Մարդիկ կ'որսան փիղն ու կ'ընտելացնեն։ Այն ատեն շատ խելօք, հլու և օգտակար կենդանի մը կ'ըլլայ։ Բեռ կը կրէ, փայտ կը շարէ, ծառայի պէս՝ տունի և շուկայի գործեր կ'ընէ։

Հին ատենը փիղին կռնակը աշտարակներ կը շինէին և անոր մէջ զինուորներ լեցնելով՝ պատերազմի կ'երթային։

Փիղն իր տէրը կը սիրէ, երբոր իրեն աղէկ նայի, խնամք տանի. բայց երբոր զարնէ կամ ծեծէ, ոխ կը պահէ։ Փիղը կը սիրէ երաժշտութիւն, անուշ հոտեր ու պտուղներ։

### 3. ՀՐԱՀԱՆԳ

1. Հետեւեալ Ածականներուն քով դնել Գոյական մը:

2. Յետոյ նոյն երկու բառերով խօսք մը շինել:

(Ուղեցոյց, էջ 72—73):

Անկեղծ, ծանր, գեղեցիկ, կակուղ, վայրենի, կանաչ, փայլուն, փոքր, մաքուր, թաց, խիստ, մեղմ, աշխատասէր, չոր, կարծր, սրածայր, ուղիղ, խոր, գոհ, համեղ, ծոյլ, կոր, անհամ, ախորժելի, ապերախտ, թուխ, գիտուն, աղէկ, կարմիր, խարտեաշ, ընտիր, սիրելի, հաստ, ճերմակ, հեզ, խուլ, կլոր, օգտակար, խորամանկ, ահարկու, խոնաւ, անշարժ, հանդարտ, ճարտար, թթու, նիհար, գաղտնի, ուրախ, առատ, ստախօս, հասուն, թարմ, դառն, քառակուսի։

---

## 4. ՄԱՏՂԱՇ ԾԱՌԸ

Անտառին մէջ ծառ մը կար՝
Երկայն, բարակ ու տրձեւ.
Սա, օր մը, մարդ տեսնելով
Մէջքը՝ սրած կացինով՝

— « Ըրէ՛, ըսաւ, ինձ մըտիկ՝
« Բաներ ունիմ ըսելիք.
« Հոգի՛դ սիրես, շընո՛րհք մ՚ըրէ
« Եւ սա չորս կողմըս մաքրէ,
« Կըտրէ՛, վերցո՛ւր այդ ծառեր
« Որ կը նեղեն իմ ճիւղեր,
« Թո՛ղ որ անգամ մ՚արեւ տեսնեմ,
« Կապոյտ երկինքը վայելեմ:
« Տարին անցնի թէ զիս տեսնաս
« Հովտիս բոլորը չը տիրած՝
« Այն ատեն զա՛րկ զիս կըտրէ
« Ու տար կրակը ձգէ: »
Մարդը մըտիկ ըրաւ ծառին,
Ինչպէս իր հին բարեկամին.
Քաշեց մէջքի կացինն հանեց,
Քովի ծառերն ամէն ջարդեց:

Երբ մինակուկ ծառը մընաց՝
Խելքը կարծես գըլխէն գընաց,

— « Բան մը, ըսաւ, փոյթըս չ՚է,
Աշխարհիս կեանք՝ ա՛լ իմս է: » —
Ուժին տըւաւ որչափ կըրցաւ,
Լաւ մը չորս դին տարածուեցաւ,
Անցնող տարձող երբ զինք տեսնար՝
— « Ի՜նչ շըքեղ է, կ՚ըսէր, սա ծառ: » —
Տեսակ տեսակ թռչուններ
Եկան դրին հոն բուներ,
Անուշ հովիկն ալ այս ծառին
Կարծես զմայլած էր տեսքին: —

Բայց, եկո՛ւ տե՛ս թէ ի՛նչ դիպուած՝
Դեռ այն տարին չը բոլորած՝
Լաւ ճըշմարտեց այն հին առած
Թէ — « Խընդումին յաջորդէ լաց, » —

Աշնան օրեր փոփոխական
Մեկ ժամ միւսին չ'է նըման.
Որ մ'արեւ ծագեր պայծառ,
Փոթորկի նըշան չըկար,
    Մեկ մ'ալ յանկարծ
    Ամպը գոռաց,
    Կայծակ ցոլաց,
    Հովը պոռթկաց,
Զարկաւ ծառին այնպէս ուժով
Որ վեր խըլեց ճողով մողով:
Ծառն իյնալով ի գետին
Հառաչեց այս խօսք յետին,
— « Հովը միտքէս անցած չ'է՞ր,
« Կորսուեցա՜յ անընկեր : » —

## 5· ՍԿԻՒՌՆ ՈՒ ԸՆՁԱՌԻՒԾԸ

Սկիւռ մը ծառին վրայէն ինկաւ ընձառիւծի մը թաթերուն մէջտեղ։ Ընձառիւծը՝ տեսնելով որ խեղճ անասնիկը վախէն կը դողդղայ՝ գթաց անոր ու ըսաւ. «Կեանքդ կը շնորհեմ, բայց պայման մ'ունիմ. ըսէ՛ տեսնեմ, ինչո՞ւ այդքան զուարթ ես դուն, մինչ ես տրտում տխուր եմ միշտ։ — Ձեր կամքին հնազանդելու պատրաստ եմ, ըսաւ սկիւռը, բայց նախ ներեցէ՛ք որ սա ծառին գագաթը ելլեմ։ — Մագիլներէս կը վախնա՞ս, յարեց ընձառիւծը։ Լա՛ւ, գնա՛, ելի՛ր»։ Սկիւռը ճարտարօրէն մագլցեցաւ ծառն ի վեր։ — «Տեղաւորուեցա՞ր։ — Այո՛։ — Խօսէ՛ ուրեմն։ — Զուարթ եմ, վասն զի մարդու գէշութիւն չեմ ըներ։ Ծառերուն վրայ պտտած ատենս, թռչունները կ'ըսեն իրարու. «Մեր բարեկամ Սկիւռըն է։» Այս խօսքը կ'ուրախացնէ զիս, վասն զի կը զգամ թէ կը սիրուիմ։ Սակայն դուք, տէ՛ր իմ, կենդանիները կը հալածէք, կը սպաննէք ու կ'ուտէք։ Ձեզմէ կը վախնան ու կը փախչին։ Դուք տրտում էք, վասն զի կը զգաք թէ ատելի էք։ Չարերը բնաւ երջանիկ չեն։ »

### 4. ՀՐԱՀԱՆԳ

Հետեւեալ ածականներուն քով դիր երկերկու յարմար գոյականներ (Ուղեցոյց, էջ 73—74):

Ազնիւ, կարծր, կանաչ, խիստ, դաժան, անպատիւ, նուիրական, ուժգին, թարմ, համր, շնորհալից, խոր, քաղցր, փափուկ, հաւատարիմ, ապերախտ, զուտ, սաստիկ, դառն, տկար, երկչոտ, առատ, վսեմ, ցուրտ:

ՕՐԻՆԱԿ. — Ազնիւ սիրտ, ազնիւ ծառայ:
Կարծր քար, կարծր մարմին:

---

## 6. ՄԱՐԴՈՒՆ ՍՆՈՒՆԴԸ

Մարդէն զատ, ամէն կենդանի իր կերակուրը հում կ'ուտէ: Կովն ու ոչխարը դաշտին վրայ կ'արածուին խոտով, և գիշակեր անասունները իրենց սպաննած կենդանիներուն միսը անմիջապէս կ'ուտեն: Նոյնպէս, թռչունները թաելու տեղ մանր ճճիներ կը բռնեն, կը կլլեն: Մարդիկ թարմ բոյսերով կամ հում միսով չեն կրնար ապրիլ, մինակ՝ հասուն պտուղներ կամ հասած բոյսեր կ'ուտեն առանց մշակուելու: Իսկ իրենց սովորական կերակուրը կը պատրաստեն, կ'եփեն ու կ'ուտեն երբոր իրենց ճաշակին յարմար ու սննդարար է: Մարդիկ կ'եփեն ու կ'ուտեն կովու միս, հորթու միս, ոչխարի միս, խոզի միս, նապաստակի, ճագարի, սագի, հնդկահաւի, վառեկի, ազաւնիի և ուրիշ ցամաքային կենդանիներու միս: Նոյնպէս, մարդ կ'եփէ ու կ'ուտէ ձուկ: Մեր գըլխաւոր սնունդն է հաց որ ցորենի ալիւրէ շինուած է:

### 5. ՀՐԱՀԱՆԳ

Առարկայի անունները փոխէ՛ եակի անուններու (Ուղեցոյց, էջ 74):

Թանկագին ժամանակ, օգտակար գործ, երկչոտ բնաւորութիւն, վտանգաւոր վէրք, անաչառ քննութիւն, առաւօտեան աստղ, լուրջ դէմք, առաքինի գործ, կարճ խօսք, ճեր-

*մակ հաց, կասկածոտ ընթացք, ճարտար շինուածք, հեռաւոր վայր, կարմիր գինի, սուտ խօսք, զուարթ տեսակցութիւն, քաղցր պտուղ, սիրուն նայուածք, լուռ ու խաղաղ գիշեր, նշանաւոր դար։*

ՕՐԻՆԱԿ. — *Թանկագին* գոհար = *թանկագին* բարեկամ:
*Օգտակար* գործ = *օգտակար* միջատ:

---

## 7. ԹՂԹԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

*Դիտէ՛ք, ինչո՛վ շինուած է այս գիրքին ու ձեր տետրակներուն ճերմակ թուղթը։ — Հին քուրջերով կամ յարդով կամ փայտով ու չոր տունկերով։ Թղթագործը զանոնք կը մանրէ, կը փշրէ, կը թրջէ, խմոր կը շինէ. այդ խմորը կը զտէ, կը ճերմկցնէ կիրով, և՝ գլաններով՝ բարակ թերթեր կը շինէ, ապա մամուլի տակ կը ճնշէ և անոնց վրայ տեսակ մը խէժ կը սփռէ որ թուղթը չպաղի՝ վրան գրուած ատեն։ Թերթերը չորնալով՝ կ'ըլլան թուղթ զոր ուզուած մեծութեամբ կը կտրեն, թերթ կը շինեն և այդ թերթերը տետրակ կը կարեն կամ տպագրութեան մեքենաներով անոնց վըրայ կը տպեն այն սեւ տառերն ու բառերը զորս դուք կը կարդաք ձեր գիրքին մէջ։ Քսանըչորս թերթը մէկ ձեռք կամ տրցակ է, քսան տրցակը մէկ պրակ է։ Եթէ թուղթ չ'ըլլար, մենք ալ հին ատենի պէս գիր պիտի գրէինք կեղեւի (պապիւրոս), մագաղաթի, կաշիի և քարի վրայ։*

### Ե. ՀՐԱՀԱՆԳ

*Էակի անունները փոխէ՛ առարկայի անուններու* (Ուղեցոյց, էջ 74)։

*Սուտ վկայ. կեղծաւոր մարդ, սպիտակ աղաւնի, տժգոյն ոճրագործ, կրակոտ ձի, հաւատարիմ շուն, գեղեցիկ Յովսէփ, պարկեշտ աղջիկ, աշխոյժ նաւաստի, հեռաւոր ազգական, անկեղծ բարեկամ, առաքինի քրիստոնեայ, կարմիր կով, խաբեբայ տղայ, զուարթ ընկեր։*

ՕՐԻՆԱԿ. — *Սուտ* վկայ = *սուտ* աշխարհ:

## 8. ՄԱՆՈՒԿԸ՝ ԾԱՂԻԿԻՆ

Խոշոր ու մեծ ժայռերո՛ւն տակ
Ըստուերներու մէջ շարունակ
Կը սպասես որ քովիկըդ գան
Մեղուն, ճնճղուկն ու թիթեռնակ։

Ինչո՞ւ ագռաւն ու ծոյլ տըղան
Կը թռչըտին ասդին անդին,
Ու դուն, ծաղի՛կ ամայութեան,
Սիրես կեանքը շուքին, մութին։

Ինչո՞ւ երգեն սեւ թռչուններ,
Ծիծեռնակներ ամսէ ամիս,
Ու դուն մրմունջ մը չե՛ս հաներ,
Հողերուն մէջ լուռ կը հալիս։

Մացառներէ, քարերէ զատ,
Չունիս մէկը. չունիս ընկեր,
Ա՜խ, անուշիկ Աստուած պապայդ,
Ինչո՞ւ ըզքեզ հո՛ս է ձըգեր…։

Մօրըդ ծոցէն սերմդ՝ հեռուէն՝
Խըլեց ու հոս բերաւ մէկ հով
Մինա՛կ, հեռո՛ւ ընկերներէն,
Ուր մին չիկայ հետըդ բուրող…։

Եկո՛ւր տանիմ արեւին տակ,
Թաղարիս մէջ պահեմ ըզքեզ,
Քովըդ կ'ըլլամ, գոնէ մինակ
Չես հալիր հոս, ծաղիկ… մե՛ղք ես։

---

## 9. ՄԱՐԴՈՒՍ ՄԱՐՄԻՆԸ

*Մարդուս մարմինը, հոգիին այն հրաշալի գործիքը, կազմուած է հաստատուն և հեղուկ մասերով։ Այս այլեւայլ մասերը ա՛յնպիսի ճարտարութեամբ իրարու հետ միացած են և ա՛յնպէս անվրէպ ճշդութեամբ իրենց պաշտօնը կը կատարեն, որ, եթէ քիչ մը ուշադիր ըլլանք, չենք կրնար Արարչին անզուգական իմաստութեանն ու կարողութեան վրայ չհիանալ ու չբարեբանել զայն։*

*Մարմինին հաստատուն մասերն են ոսկորները որ իրարու կցուած են յօդերով (կապ), աճառներով կամ կռճիկներով։ Ոսկորներէն շատերուն մէջը ծուծով լեցուն է։ Մարդուս ոսկորները՝ ամբողջը միասին առնելով՝ կը կոչուին կմախք։ Ակռաները կամ ատամներն ալ մասն են ոսկորներուն։ Մեր երեսը երկու ծնօտ կամ ծամելի ունի. իւրաքանչիւր ծնօտ ունի տասնըվեց ակռայ։*

*Տղայութեան ժամանակ ոսկորները կակուղ են և աճառային։ Հետզհետէ կը պնդանան, կը կարծրանան և հազիւ տասնըհինգերորդ կամ քսաներորդ տարին իրենց կատարեալ կարծրութեան կը հասնին։ Ծերութեան ատեն, կարծես կը պարպուին կը թեթեւնան. ակռաները կը փտին, կը թափին և լինդերը կը սկսին անոնց պաշտօնը կատարել։*

*Մարմինը մկաններով կ'ընէ իր ամէն շարժումները. Ջիղերը մեր կամքին համեմատ կ'երկննան ու կը կարճընան։*

### Յ. ՀՐԱՀԱՆԳ

*Ութիւն մասնիկը ջնջեցէք* (Ուղեցոյց, էջ 74—75)։

*Առաքինութիւն, մանկութիւն, յաղթութիւն, պարտութիւն, զգաստութիւն, շռայլութիւն, հպարտութիւն, ծանրութիւն, իշխանութիւն, դառնութիւն, նրբութիւն, սրբութիւն, քրիստոնէութիւն, հերետիկոսութիւն, բողոքականութիւն, կաթոլիկութիւն, յայտարարութիւն, պատգամաւորութիւն, խայտառակութիւն, շահախնդրութիւն, ծերութիւն-*

*երանութիւն, պարզութիւն, մեծութիւն, ազնուութիւն, շըլութիւն, խլութիւն, գժութիւն, կծծութիւն, ագահութիւն, երկրամոլութիւն, ողջախոհութիւն, բղջախոհութիւն։*

---

## 10. ԹՂԹԱՊԱՆԱԿԸ

*Օր մը, Մատթէոս անուն պատանին շուկայէն տուն եկած ատեն, ճամբուն վրայ գտաւ թղթապանակ մը որ կը պարունակէր շատ մը ոսկեդրամ ու թղթադրամ։ Սիրտը ուրախութեամբ լեցուած այս անակնկալ հարստութեան վրայ, թղթապանակը գրպանեց և՝ «Գտածս գտած է» ըսելով՝ գընաց տուն։ Մարդու բան չըսաւ, այլ միայն խնամով պահեց թղթապանակը գաղտուկ տեղ մը։ Քանի մը օր ետքը, իրենց գիւղի հրապարակին վրայ, մունետիկ մը թղթապանակին կորուստը ծանուցանելով՝ կը յայտնէր թէ անոր տէրը, վաճառական մը, գոհացուցիչ պարգև մը կը խոստանար թղթապանակը գտնողին, եթէ բերէր։ Մատթէոս խորհեցաւ թէ այս ազդարարութիւնը հասարակաց էր, և թէ, քանի որ մարդ չէր գիտեր թէ ինքը՝ Մատթէոսն է գտնողը և քանի որ իրմէ չէին պահանջեր, կրնար հանդարտ խիղճով պահել գտած գանձը։ Գնաց բազմութեան մէջ խառնուեցաւ։ Բայց, հոն լսեց որ գէշ խօսքեր կը զրուցուէին անոնց որ գտածնին կը պահեն. այնպիսիները գող են, կ'ըսուէր։ Այն ատեն սարսուռ մը ըզգաց Մատթէոս։ Խղճի խայթը սկսաւ զինք տագնապել ու տանջել. Թուեցաւ իրեն տեսնել, իբրև երազի մէջ, ոստիկաններ, դատարան, բանտ, և վախցաւ։ Արտորնօք տուն գնաց, թղթապանակը պահած տեղէն առաւ և իրիկուան մութը վրայ հասնելուն՝ վազեց տարաւ իր տանուերէց քահանային, խնդրելով որ յանձնէ զայն տիրոջը։*

*Մատթէոս այն գիշեր միայն կրցաւ խաղաղ քուն մը քնանալ և հասկցաւ թէ ուրիշին ինչքը իւրացնել գողութիւն է։*

### Ը· ՀՐԱՀԱՆԳ

*Սա բառերուն կցէ՛ ութիւն մասնիկը (Ուղեցոյց, էջ 75)։*

*Անմիտ ; անպատեհ, փայլուն, չքեղ, չփոթ, վտանգաւոր, գոռոզ, հպարտ, մեծանձն, պարկեշտ, տգեղ, տկար, յաջող, քրիստոնեայ, հրեայ, առաքեալ, առաքինի, հանճարեղ, քերական, պաշտօնեայ, պատշաճ, ստոյգ, իրական, Աստուած, դառն, զուարթ, ժիր, բարի, զանազան, արդար, ճիշդ, եկեղեցական, կրօնաւոր, պատրիարք, եպիսկոպոս, կաթողիկոս, պերճ, պետ, հաստատ, է, հարսն, փեսայ, քուն, ազնիւ, հաւատարիմ։*

---

## 11· ՍՊՈՒՆԳ

*Ամէն ոք կը ճանչնայ սպունգը որ կակուղ ու չեչոտ առարկայ մըն է և ջուրը կը ծծէ։ Բայց շատերը չեն գիտեր թէ սպունգը ծովային կենդանի մ'է, ծովուն յատակը ժայռերու փակած։ Ծովուն մէջ կ'ապրի ան, և իր չօշափուկներով ջուրէն կ'ընդունի իր սնունդը։ Երբ զայն կը հանեն ծովէն, դեռ կենդանութեան նշաններ ցոյց կուտայ, այսինքն կը շարժի։ Ջուրէն հանելէ ետքը, երկար ատեն կը լուան, որպէս զի անոր անախորժահոտ լորձը մաքրուի և երևան ելլէ անոր ծակոտկէն մասը։ Դիւրաւ կը ծծէ ջուրը կամ ուրիշ հեղուկներ։ Բայց, ճմլուելուն պէս, դուրս թող կուտայ։*

*Սպունգը կը գործածուի մարմին մաքրելու, տախտակ սրբելու, ևայլն, և կ'որսացուի Յունաստանի արքիպեղագոսէն (կղզիներէն), Գարամանի և Սուրիայի ծովեզերքէն։ Պէյրութէն մինչև Աղէքսանդրիա աւելի առատ ու նուրբ տեսակները կը գտնուին։*

### Թ. ՀՐԱՀԱՆԳ

*Հետեւեալ խօսքերուն մէջ Ածականը Գոյականի փոխէ եւ փոխադարձաբար (Ուղեցոյց, էջ 75)։*

*Սիրելի եղբայր, ճշմարիտ յաւիտենականութիւն, խնա-*

*մող մայր, մարդկային յանցանք, խաղասէր մանուկ, մթին գիշեր, անմեղ տղայ, վրէժխնդիր կրակ, ծեր հայր, բարեսիրտ մայր, քացախային թթուուտ, շնորհալի եղբայր, կապոյտ երկինք, դիւական չարութիւն, գեղեցիկ հրաշք, տաճկական հիւրասիրութիւն, կեդրոնական կառավարութիւն, ազնիւ կին, աղջկական փափկութիւն, գեղջկական պարզութիւն, համեստ ընտանիք։*

---

## 12. ՎԱՐԴՆ ՈՒ ՓՈՒՇԸ

(ԿԵԱՆՔԻ ՊԱՏԿԵՐ)

«Տրտո՛ւմ ես հոգւով, ըսիր ինծի դուն,
Զի փուշով պատած են վարդին թերթեր»։
Իսկ ես՝ բերկրութիւն մը կը զգամ անհուն
Ի տես փուշերուն որ ունին վարդեր։

Աշխարհի վրայ կա՞յ հանոյք անխառն,
Կա՞յ երջանկութիւն առանց սեւ սուգի։
Աւա՜ղ, թախիծը՝ մորմոքիչ ու դառն՝
Յաճախ բերկրութեան հետը կը զուգի։

Արցունքն ու ծիծաղ՝ անբաժա՛ն ընկեր՝
Ինչպէս վարդն ու փուշ նոյն արմատն ունին,
Թէ՛ ժպտին, թէ՛ լան միեւնոյն աչքեր.
Խինդն ու վիշտ կազմեն աղբիւրը կեանքին։

(*Բիւրակն*, 1899, *էջ* 281) — *Ս. ՊԱՐԹԵԱՆ*

---

## 13. ՄՈՒՐԱՑԿԱՆԸ

*Ծեր ու կոյր մուրացկան մը՝ ցնցոտիներ հագած՝ պատերուն քովէն քալելով կ'երթար, մէկ ձեռքը գաւազան մը, իսկ միւսով բռնած էր կապ մը որ զինք առաջնորդող շան վիզը կապուած էր։ Փոքրիկ Մարկոս որ դրան առջեւ կը խաղար, հաճոյք կը զգայ, կամացուկ մը մօտենալու եւ կապը կտրելու։ Կոյրը՝ ապշած՝ կանգ առաւ։ Գետին ծռեցաւ, դողդողջուն ձեռքը կարկառեց շուանին ծայրը փնտռելու, մինչդեռ քիչ մը անդին, չարամիտ Մարկոս կը խնդար։ Մարկոսին հայրը որ տան մէջ, պատուհանին առջեւ կ'աշխատէր, այս ամէնը տեսած էր։ Դուրս ելաւ ու Մարկոսին թեւէն բռնելով՝ «Եկո՛ւր, ըսաւ խստութեամբ, եկո՛ւր ըրած անվայել գործդ ուղղէ։» Յետոյ բերաւ ծերունիին մօտ. «Կապէ՛ նայիմ, սա շուանը։» Տղան հնազանդեցաւ։ «Բարեկա՛մ, ըսաւ հայրը ծերունիին՝ յարգական ձայնով, կը խնդրեմ, ներեցէք որդիիս եւ ընդունեցէք այս փոքրիկ փոխարինութիւնը», եւ կոյրին ձեռքին մէջ ոսկի մը դրաւ։ «Հոգ չէ, պարոն, կ'ըսէր ծերունին, գիտէք որ պզտիկ տղաք անգիտութեամբ կ'ընեն այս տեսակ բաներ»։ «Կը լսե՞ս, Մարկո՛ս, ըսաւ հայրը, կը ներէ քեզի. ասոր համար, ես ալ չեմ պատժեր։ Տուն գնա՛, սենեա՛կդ մտիր եւ ըրած չարութեանդ վրայ խորհրդածէ՛։» Այնուհետեւ Մարկոս, երբ ծերուկին անցնիլը տեսնէր, կը վազէր անոր քով, ասոր փարա կուտար եւ շնորհալի ձայնով կ'ըսէր. «Բարե՛ւ, ազնի՛ւ ծերունի։»*

### 10. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ ձևով կրնաս դնել փակագծեալ դերանունները* (Ուղեցոյց, էջ 76)։

*Հայրս (դուն) կը սիրէ։ — Տղան (ես) կը վախնայ։ — Եղբայրս (անոնք) հրաւիրեց։ — Քոյրս (դուն) մեր տունը կը հրաւիրէ։ — Վիզս պլլուեցաւ ու կը համբուրէր (ես)։ — Դուք մոռցաք (մենք)։ — (Դուք) հիւանդ կը կարծէի։ — (Անոնք) մխիթարելու գացի։ — (Դուն) հոն տեսայ։ — Աղէկ*

ընդունեցինք (անոնք)։ — (Դուք) գիրք մը պիտի ուզեմ։ — Եղբայրդ ծեծեց (ես)։ — Գիրքերը կը զուարճացնեն (մենք)։ — Ես (այն) չառի։ — Քրիստոս ազատեց (մենք)։ — Ան բաժնուեցաւ (ես)։ — Հօրաքոյրս սրդողեցաւ (ես) դէմ։ — Մի՛ վախնար (ես)։

---

# 14. ԼԵԶՈՒ

*Երկնատուր ձիրք մ'է լեզուն, որով մարդ իր միտքն ու զգացումները իր նմաններուն բացատրելու կարող կ'ըլլայ։ Աստուած տուաւ մարդուն՝ կատարեալ կարողութիւններ, ինչպէս նաեւ խօսելու ձիրքը որպէս զի զայն մշակէ, ծաղկեցընէ։ Լեզուի մը չինութեան պատճառներն են մարդկային պէտոյքը, թէ՛ բնական եւ թէ՛ բարոյական (անօթութիւն, վիշտ, սէր), կիրք եւ ուրիշ պարագաներ, իսկ զարգացումի պայմաններն են ժամանակը, ընկերական յարաբերութիւններ, կրթութիւն, արուեստ ու գիտութիւններ, որոնց օր ըստ օրէ մշակումովը՝ կը մշակուի նաեւ լեզուն։ Ուստի, կարելի է հին ու նոր ժողովուրդի մը քաղաքակըրթութեան աստիճանը չափել իր լեզուէն որ հարուստ, ճոխ եւ ընտիր կրնայ սեպուիլ, երբ կարող ըլլայ ամէն դիւրութեամբ արտայայտել ամէն բնական, իմաստասիրական ու գիտական գաղափարներ իրենց բոլոր նուրբ գոյներով։*

*Մարդ իր միտքը բացատրելու համար երեք տեսակ նըշաններ կրնայ գործածել, շարժում, յօդաւոր ձայն, գիր, Առաջինը խօսելու պարզագոյն ձեւն է, իսկ խօսքն ու գիրը կարող են ամէնէն վերացեալ գաղափարներ անգամ բացատրել։ Այս կարողութեամբ ալ մարդ անասուններէն վեր է։*

## 11. ՀՐԱՀԱՆԳ

Ցոյցակիր վերածեցէք սա խօսքերը (Ուղեցոյց, էջ 76)։

*Գառնուկը կը մայէ։ — Կովը կը բառաչէ։ — Ձին կը վրնջէ։ — Էշը կը զռայ։ — Շունը կը հաչէ։ — Կատուն կը*

նուայ։ — Դեղձանիկը կը դայլայլէ։ — Սոխակը կը դեղգեղէ։ — Գայլը կ'ոռնայ։ — Առիւծը կը մռնչէ։ — Օձը կը սուլէ։ — Ճանճը կը բզզայ։ — Դրօշը կը փողփողէ։ — Կրակը կը վառի, կը փայլի եւ կը մարի։ — Առուակը կը դդչէ։ — Պայտարը կը լուանէ ձին։ — Դուն կը զարմանայիր։ — Ես կը խօսէի ու դուն կը լսէիր։ — Ան կը խաղայ ու դուն կ'աշխատիս. — Կը փափաքիմ որ փորձես այս գրիչը։ — Պիտի նուաղի։ — Պիտի խեղդուէիր, եւ ես փորձեցի ըզքեզ ազատել։ — Կ'աղաչեմ, կ'աղաչէի, աղաչեցի, պիտի աղաչեմ մօրս որ մեզի հրաման տայ պտտելու։ — Սպասուհին կ'աւլէ սանդուխները։ — Պահապանը թող լաւ հսկէ։

---

## 15. ԵՐԿՐԱԳՈՐԾՆ ՈՒ ԻՐ ՏՂԱՔԸ

*Երկրագործ մը իր տղաքը մահուան անկողինին քով կանչելով՝ ըսաւ. «Սիրելի՛ տղաքս, ա՛լ քիչ ատենէն այս անցաւոր աշխարհէս պիտի մեկնիմ. բայց կ'ուզեմ ձեզի հաղորդել գաղտնիք մը։ Մտի՛կ ըրէք։ Զըլլա՛յ որ ծախէք մեր պապերէն մնացած սա վերի արտը. անոր մէջ գա՛նձ մը թաղուած է։ Տեղը չեմ գիտեր, բայց ապահով եղէք որ եթէ քիչ մը աշխատիք, պիտի կրնաք գտնել։ Ուստի արտհունձ ընելնուդ պէս, սկսեցէ՛ք փորել, փնտռել, հողը տակնուվրայ ընել, վերջապէս ամէն կողմը ձեռքէ անցընել՝ մինչեւ որ գտնէք։»*

*Հայրը մեռաւ. տղաքը սկսան անոր պատուէրին համեմատ փորել, հերկել, վարել իրենց արտը։ Կը փորէին, կը քրէին, կը փնտռէին ամէն կողմ, բայց գանձը չէին կրնար գտնել։ «Հոգ չէ, ըսին, եկէ՛ք ցանենք արտերնիս, քանի որ այսչափ լաւ հերկեցինք։» Ցանք ըրին, եւ նոյն տարին մէկին տեղը տասը հունձք քաղեցին։ Այն ատեն միտքերնին եկաւ իրենց իմաստուն հօր խրատը թէ Աշխատութիւնը գանձ մ'է։*

## 12. ՀՐԱՀԱՆԳ

*Եզակիի փոխանցէք հետեւեալ խօսքերը (Ուղեցոյց, էջ 77)։*

*Գործաւորները կը սրեն իրենց գործիքները։ — Աքաղաղները կը խօսին։ — Սպասուհիները կոտրեցին պնակները։ — Խոհարարները կը համեմեն աղցանները։ — Ծոյլ աշակերտները կը սիրեն խաղը եւ կ'ատեն ուսումը։ — Կը սիրենք ու կը մշակենք ծաղիկները։ — Սիրուն՝ փոքրի՛կ ծաղիկներ, ի՞նչ ալ անուշ կը բուրէք։ — Այս շուները զձեզ կը սիրեն և դուք կը ծեծէք զանոնք։ — Տղա՛քս, ո՛ն, խաղացէ՛ք, վազեցէ՛ք, բայց շատ աղմուկ մի՛ հանէք։ — Մարդիկ կը կարեն, կը տաշեն, կ'աղան, կը թրեն, կ'եփեն, բայց չեն ստեղծեր ու բնաւ չպիտի ստեղծեն. ամէնէն մեծ հանճարները ճանճ մը անգամ չեն կրնար ստեղծել։ — Մի՛ վստահիր անոնց որոնք չեն վստահիր մարդու։*

---

## ԱՌՈՒԱԿԸ

(ՄԱՆԿԱԿԱՆ ՈՏԱՆԱՒՈՐ)

Գըլգըլ գըլգըլ սահելով՝
Առուակը հեզիկ,
Դալարուտես ափն ի վար
Մըղէ իր ալիք։

Ծաղկին, խոտին՝ համբոյրներ
Կուտայ ծտայով,
Անուշ գեղգեղ կը լըսուի
Իր ափերուն քով։

Գըլգըլ գըլգըլ կը սուրայ
Ջուրը պաղպաջուն,
Եզերքներուն խոտին վրայ
Տղաքը կը զբօսնուն։

Խիտ ոստերն են ծառերուն
Անոնց հովանի,
Եւ ձայնակից երգերուն՝
Զովացուցիչ քամի :

Չունին անոնք ո՛չ նախանձ,
Ո՛չ հոգը կեանքին,
Վայրկեանները ոսկեզօծ
Զըւարթ կը սահին :

Ջինջ վըտակին ալիքներ
Անոնց կեանքին հետ,
Արագ արագ կը փախչին
Ու չեն դառնար ետ :

Զըւարթ ու խօ՛լ քըրքիջներ
Տըղոց են բաժին,
Եւ մըրմունջներ հեզասահ՝
Երգն են առուակին :

Մին կը վազէ դէպ ի ծով
Անէ՛զր, անսահման,
Որ մ'ալ տի գայ որ դադրին
Երգերը մանկան :

(Բիւրակն, 1898 շրջան, էջ 147) Ս. Պ.

## 17. ԳԻՐՔԵՐԸ

*Այսօր ամէն դպրոցական գիրքեր ունի և կրնայ քիչ մը ստակով իրեն պէտք եղած գիրքերը գնել. բայց ժամանակով այսպէս չէր. գիրքերը ձեռքով կը գրուէին, և ատոր համար շա՜տ քիչ կը գտնուէին և շա՜տ ալ սուղ էին։ Միայն հարուստնե՛րը կրնային ձեռագիր գնել, և կրթութիւնը ոմանց առանձնաշնորհումն էր պարզապէս։ Տասնըհինգերորդ դարուն էր որ Յովհաննէս Կիւթէնպէրկ, Մայանս քաղաքէն, հնարեց տպագրութիւնը. Նախ՝ այս երեսներուն մեծութեամբ տօսախ փայտի վրայ փորագրեց գիրերը և ատոր վրայ բազմաթիւ օրինակներ տպեց, յետոյ շարժական (հատիկ հատիկ ա բ գ եայլն) տառերը հնարեց, զորս սկսաւ շարել հիմակուան դրութեամբ։ Այս գիրերը սեղանի մը վրայ շարեց, այնպէս որ բառեր ու խօսքեր կազմեն, իւղոտ մելան քսեց ու թեթեւապէս թրջած թուղթ մը տարածեց վրան. յետոյ այս ամէնը ուժով մը սեղմեց. այն ատեն գիրերը արտատպուեցան թուղթին վրայ։ Տպագրութիւնը հնարուած էր։*

### 13. ՀՐԱՀԱՆԳ

Հետեւեալ խօսքերն ամբողջացուր առաջինին համեմատ (Ուղեցոյց, էջ 77—78)։

1. *Մարդ կը քալէ, կը վազէ, կ'ելլէ, կ'իջնէ, կը մագլցի, կը սահի, կը սողայ, կը լողայ, կը խոյանայ, կ'ուտէ, կը խմէ, կ'երթայ, կու գայ, կ'ապրի, կը մեռնի։*
2. *Ո՛վ մարդ, դուն միշտ քալած ես...*
3. » » » » *պիտի քալես...*
4. *Սկիզբէն ի վեր քալեցիր...*
5. *Ո՛վ մարդ, քալէ՛...*
6. *Ո՞վ չի գիտեր թէ ես պիտի քալեմ...։*

## 18. ՄԵՌԵԼՆԵՐՈՒՆ ԳԱՆԿԸ

*Իր գեղեցկութեան, ազնուականութեան և հարստութեան վրայ հպարտ եղող իշխան մը, օր մը, առանձին գաւառ մը որսի գնաց։ Հոն, լեռներուն մէջ, ճգնաւոր մը տեսաւ որ իր խցիկին առջեւ նստած՝ ուշի ուշով կը զննէր մեռելի մը գանկը։ Իշխանը՝ պատկառելի ծերին մօտենալով՝ ծաղրելու կերպով մը ըսաւ. «Բարեմի՛տ մարդ, ինչո՛ւ այդչափ ուշադրութեամբ կը զննես այդ գանկը, ի՞նչ գտնել կ'ուզես»։ Ճգնաւորը ծանրութեամբ անոր նայելով՝ պատասխանեց. «Կ'ուզէի գիտնալ թէ ասիկա իշխանի՞ մը գանկ է թէ մուրացկանի մը. բայց անհնար կ'ըլլայ ինձ հասկնալ։»*

### 14. ՀՐԱՀԱՆԳ

Ի՞նչ կ'ընեն հետեւեալ առարկաները (Ուղեցոյց, էջ 78)։

*Գրիչ, գմելին, մատիտ, դանակ, ասեղ, խթան, մուրճ, լողարան (ձուկի թեւ), սայլակ, բանալի, կանգուն, կշիռ, երկանաքար, սանդուխ, ունելի, փքոց, հողմահար, ջահրակ, իլ, նաղուկ, ձգախէժ, բահ, բրիչ, մանգաղ, մկրատ, պատառաքաղ, դգալ, չերեփ, դերձան, բուրդ, դոյլ, ցնցուղ։*

ՕՐԻՆԱԿ. — *Մուրճով երկաթ կը ծեծեն։*

---

## 19. ԸՆՏԱՆԻՔ

*Թէև պատմութիւնը չ'ըսեր մեզի թէ մարդկային ընկերութիւնները ինչպէս կազմաւորեր են կամ ինչպէս ժողովուրդները առաջ եկեր են, այլ կը խօսի արդէն կազմուած ժողովուրդներու վրայ, բայց՝ մարդուս բնութիւնը քննելով դիւրին է հետեւցնել մարդկային ընկերութեան կազմակերպութիւնը։*

*Արդ՝ մարդիկ ընկերական կը ծնին, այսինքն, վայրի կենդանիներու պէս չեն կրնար երկրի վրայ ջոկ ջոկ և առանձին ապրիլ։ Մեղուին, մրջիւնին պէս՝ մարդիկ ալ միաւորուելու,*

*աջակցելու պէտքը բնականէ՛ն կը զգայ։ Ուրեմն բնազդումը, համակրութիւնը, նիւթական ու բարոյական պիտոյքը կը դրդեն մարդն իր նմանին հետ ապրելու, որպէս զի այս հաղորդակցութեամբ զարգանայ, իբրեւ բանաւոր ու բարոյական էակ։*

*Մարդուն առաջին ընկերներն են իր ծնողքը, որով կը կազմուի Ընտանիքը։ Հին ատեն, հիմակ ալ արեւելքի մէջ շատ տեղեր, այլեւայլ համատոհմ ընտանիքներ միասին կը բնակէին։ Ծերունի հայրը իր տան բնական տէրն էր, իր զաւակներուն ու թոռներուն նահապետը, աւագ գլուխն էր։ Ան կը խրատէր, կը վարէր, կը դատէր ու կը պատժէր իր ընդոծինները, որոնք հլութեամբ կը հպատակէին, ու նահապետին տանտիրական իշխանութիւնը կը մեծարէին։*

### 15. ՀՐԱՀԱՆԳ

Հետեւեալ խօսքերը ժխտականի փոխէ (Ուղեցոյց, էջ 79):

*Ով կը տեսնէ զիս։ — Նշան կը լսէ քու ձայնդ։ — Որչափ կ'ուտես։ — Այսօր դուն ըթ կը տեսնեմ զ՚եղ։ — Խաղացէ՛ք չարունակ։ — Դաստատուն ձեզ կանչեց։ — Շուտ ըրէ։ — Ասեղով փայտ կը կտրեն։ — Ով է կերեր։ — Այդ բանը ե՛ս ըրի։ — Ծովը կը փրփրի։ — Մերթ կ'որոտայ, մերթ կ'ամպէ, մերթ կը մթննայ մռայլ, մերթ կը տեղայ անձրեւ։ — Բժիշկը հիմայ կուգայ։ — Տա՛ր մեզ փորձութեան։ — Անպատում վիշտ մը կը զգամ։ — Կե՛ր, լաէ՛, պատուէ՛, քալեցէ՛ք, առէ՛ք, ողբացէ՛ք, եղի՛ր, բե՛ր, տա՛ր, քաշէ՛, տեսած եմ, թո՛ղ, բրդէ՛, կը զարնէ, մեռած է։*

---

## 20. ԳԻՒՂԱՑԻԻՆ ԱՂՕԹՔԸ

Ես կը ցանեմ, ո՛վ իմ Աստուած,
Դուն անձրեւ տուր առատ առատ,
Զոր հատիկներ ծլին հողէն,
Պճնեն արտերս կանաչ կանաչ,
Եւ ուռճանան, հասկեր կապեն
Ասոնք ցորենը կարմրահաս :

Խնդրեմ, ո՛վ Տէր, տո՛ւր մեկին տեղ
Ցիսուն, վաթսուն մինչեւ հարիւր,
Որ տամ նախ ես՝ իմ տէրութեան
Տասանորդի տուրքը արդար,
Եւ ապա տամ պարտատիրոջ
Տոկոսիքները ծանր ու ծանր;
Ապա գեղի եկեղեցուն,
Աղքատներուն ալ բաժին տամ.
Եւ ի՛նչ մնայ՝ ա՛յն է միայն
Ընտանիքիս հաց ու նարակ:
Եւ շատ հիւրեր գան ու գընան
Ուտեն տանին ձրի մեր հաց.
Ա՛յս է օրէնք մեր աշխարհին
Մեր նահապետ ջոջ պապերէն,
Շինականին տունին է բաց,
Հացն ու սեղան են միշտ պատրաստ:

Խ. Հ.

---

## 21. ԳԱՆՁԱՆԱԿԸ

*Փոքրիկ Գէորգ բարի ու աշխատասէր տղայ մ՛էր. դպրոցին մէջ, դասերուն հոգ կը տանէր, եւ հայրը շատ գոհ էր իրմէ։ Ատոր համար, ամէն շաբաթ քառասուն փարա կուտար անոր, երբ շաբաթական վիճակացոյցը լաւ նիշեր պարունակէր դասերուն ու բարի վարքին համար։ Ուրիշ տղաք գուցէ այս քառասուն փարան բանի տեղ չդնելով՝ ուտելիքի եւ այլ անօգտի բաներու ծախսէին, բայց Գէորգ այդպէս չէր մտածեր. գիտէր որ իր ծնողքը հարուստ չէին, եւ թէ՝ տարիին մէջ շատ շաբաթներ կան. — շաբաթական քառասուն փարա խնայելով՝ տարի մը ետքը բաւական մեծ գումար մը պիտի ունենար։ Իր ծնողքին հաւանութեամբ, գանձանակ մը առաւ որուն մէջ կը ձգէր իր շաբաթականը։ Տարեգլխուն՝ բացաւ գանձանակը, եւ*

որովհետեւ ամէն շաբաթ անխափան դահեկան մը ձգած էր հոն, կը մտածէր որ մէջէն յիսուն երկու դահեկան պիտի ելլէ։ Բայց — զարմանալի՜ բան — գանձանակին մէջ հարիւր՝ ճիշդ հարիւր հատ մէճիտիէյի քառասուննոցներ գտաւ։ Մինչ Գէորգ աչքերուն չհաւատալով՝ կրկին կրկին կը համրէր, հայրը ըսաւ անոր. «Այդ քառասուն եւ ութ դահեկանը զոր աւելի կը գտնես, քու ստակիդ տոկոսն է։ Մայրդ, մեծ հայրդ ու ես ձգած ենք գանձանակիդ մէջ, տեսնելով որ լաւ հոգ կը տանիս շաբաթականներդ խնայելու։» Գէորգ շատ ուրախացաւ։ Այն հարիւր դահեկանով՝ գիրքեր, դասական պէտքեր, պատկերներ, կարկինի տուփ մը, ներկ, վրձին ու այլ պիտանի բաներ գնեց եւ տարին ի բուն զանոնք գործածելով՝ իր խնայասիրութենէն գոհ մնաց, եւ միշտ նոյն ընթացքը շարունակեց։

### 16. ՀՐԱՀԱՆԳ

Հետեւեալ ժխտական խօսքերը հաստատական ըրէ (Ուղեցոյց, էջ 79):

Քեզ նման քիչեր տեսած չեմ։ — Մտիկ մի՛ ընէք անոր խօսքին։ — Միթէ չպիտի՞ ուզէ։ — Չեմ կարծեր թէ կը մերժէ։ — Արդեօք չպիտի՞ լսեմ քու ձայնդ։ — Շատ հեռու մի՛ երթաք։ — Իմ քովս մի՛ գար։ — Թող չճաթի։ — Մի՛ ճաթիր։ — Երեսէ մի՛ ձգէք զինքը որ չմեռնի։ — Չես ընդունիր, այնպէս չէ՞։ — Վէպ չէ՞ք կարդար։ — Ինչո՞ւ չէք թարգմանած։ — Չպիտի՞ կարդաս Աւետարանը։ — Կը կարծես թէ բարիք չպիտի՞ ծնի այս աշխատութենէդ։ — Չեմ կրնար հասնիլ ետեւէդ։ — Մի՛ լսեր։ — Մի՛ տանիք, չեմ կրնար իրմէ զուրկ մնալ։ — Այս տղեկն ալ չէ՞ր հոգար։ — Կարկտան չէ՞ք ուզեր։

---

## 22. ՄՈՒԿԵՐՆ ՈՒ ՀԱՒԿԻԹՆԵՐԸ

Մուկերը շատ կը սիրեն հաւկիթները, եւ հաւնոցները կը մտնեն որ ուտեն։ Երբեմն ալ հաւկիթները կ'առնեն կը տանին առանց կոտրելու։

*Շատ անգամ մառանէն հաւկիթ կը գողցուէր եւ մարդուն միտքէն չ'անցնիր բնաւ թէ գողցողները մուկերն են։*

*Ագարակապան մը՝ տեսնելով որ իր հաւնոցէն հաւկիթներ կը գողցուին՝ այլեւայլ կասկածներու կ'երթայ եւ միտքը կը դնէ գողը բռնել։ Ուստի, օր մը, հաւնոցին մօտ կը պահուըտի որ գողը տեսնէ։ Քիչ մը ետքը կը դիտէ որ շատ մը մուկեր հաւնոցին մէջ կը մտնեն։*

*Այս մուկերէ մէկ քանին հաւկիթներուն մօտ կը պառկին և ամէն մէկն իր մարմինը հաւկիթի մը բոլորտիքը կը ծալէ, պոչը ականջներով կը բռնէ, այնպէս որ հաւկիթը վար չգլորի, և լաւ կը պահպանէ։ Այն ատեն, ուրիշ մուկեր անոր վիզէն կը բռնեն եւ հաւնոցէն դուրս կը քաշեն։*

### 17. ՀՐԱՀԱՆԳ

Սա բառերուն նշանակութիւնը սորվեցէք, նոյն նշանակութիւնը ունեցող ուրիշ բառեր գտէք (Ուղեցոյց, էջ 79—80) :

*Գինդ, որմ, հովանի, սարսուռ, ուղեւոր, մաս, չքեղ, աւազ, դատարկ, բոլորակ, դրամ, հանդիպիլ, չաղփաղփել, չարժիլ, երեւալ, ողբալ, ձայն տալ, հաշուել, չաղուել, ճոխ, թերի, յայտնել, խնդութիւն, վիշտ, զրուցել, փայփայել, խնդրել, քաղցր, մառեան, ուսուցիչ, խաւար, աղի, բազուկ, աղմուկ, վէմ, սկաւառակ, մանիճ, ջահ, կաշի, տատացուածք, չքաւորութիւն, զգօն, արի, պարարտ, խաղաղ, քնքուշ, ցամաք, որկրամոլ, բիրտ, նուաղիլ, խայնիլ, համառօտել, մերձենալ, ընթանալ, չողալ, վարել, սափրել, պարել, որբել, խոնարհիլ, բժշկել, դարմանել։*

---

## 23. ՍԱՓՐԻՉՆԵՐԸ

*Սափրիչ մը, որուն գործն էր մօրուք ածիլել եւ մազ կտրել, յաճախորդ չունելու համար, խանութին դրանը վրայ նկարել տուաւ մարդ մը որ ծովն իյնալով՝ խեղդուելու մօտ էր, եւ ուրիշ մը՝ գթալով՝ մազերէն կը բռնէ ազատելու հա-*

*մար։ Բայց մազերը կեղծ ըլլալով՝ ազատել ուզած մարդն ընկղմելով կը խեղդուէր։ Այս պատկերին վրայ մեծ տառերով գրուած էր սապէս.* Վա՜յ անոնց որ կեղծ մազ ունին։ *Ասով իմացնել կ'ուզէր թէ կեղծ մազերը վնասակար են։*

*Ուրիշ սափրիչ մը, որուն գործն էր կեղծ մազեր շինել, երբ տեսաւ որ իր յաճախորդները՝ նոյն օրինակէն համոզուելով՝ կեղծ մազ գործածելէ ետ կը կենային, իրեն եղած վնասին առաջքն առնելու համար, սա հնարքը խորհեցաւ։ Իր խանութին ճակատը նկարել տուաւ Աբիսողոմը, որ մազերէն կախուած էր ծառէ մը (*), եւ տակը գրեց այսպէս.* Երանի՜ թէ մազերը կեղծ ըլլային :

**18. ՀՐԱՀԱՆԳ**

Հետեւեալ բառերուն սահմանը տուր (Ուղեցոյց, էջ 80) :

*Լուսին, աղբիւր, ճրագ, փիղ, աղուէս, գրիչ, պայտ, անտառ, մահճակալ, վաճառական, հողագործ, Ադամ, կառք, ուղտ, կօշիկ, գերեզման, եկեղեցի։*

ՕՐԻՆԱԿ. — *Լուսին = Աստղ որ կը փայլի գիշերը :*



## 24. ՈՒՍԱՆՈՂԻՆ ԱՂՕԹՔԸ

ՇՆՈ՛ՐՀՔ ՏՈ՛ՒՐ, Ո՛Վ ՏԷՐ

Շնորհք տո՛ւր, ո՛վ Տէր, պզտիկ մանուկիս,
Աղապատանքով թրթռացո՛ւր հոգիս.
Մի՛ տար ճոխ հանդերձ, սի՛րտ յուսակըտուր
Ո՛վ Տէր, շընորհք տո՛ւր :

Շընո՛րհք տուր, մեղքի մերժեմ գաղափար,
Հեզութեան ըլլամ վըսեմ կաղապար,
Չը փորձէ՛ քնաւ զիս ցանկութեան ժանտ հուր,
Ո՛վ Տէր, շընորհք տո՛ւր :

(*) Սրբազան Պատմութեան այս դէպքը պատմեցէք ։

Շընորհք տո՛ւր, ուշիմ ընկերներուս քով
Հիացում ազդեմ խելքով ու միտքով.
Փայլիմ կարապի պէս ձիւնափետուր,
Ո՛վ տէր, շընորհք տո՛ւր :

Շընորհք տո՛ւր՝ ոխ, քէն ու ատելութիւն,
Չը պըղծեն երբեք սրտիկս եռանդուն,
Բարութեան հագնիմ զրահն ամրակուռ,
Ո՛վ Տէր, շընորհք տո՛ւր :

Շընորհք տո՛ւր՝ շողոմն ատեմ փոքրոգի,
Քաղցրութիւնն առնեմ անմեղ հրեշտակի.
Չաղտոտէ՛ ճակատս ամօթին սեւ մուր,
Ո՛վ տէր, շընորհք տո՛ւր :

Շընորհք տո՛ւր, յաղթո՛ղ վեհ իմաստութեան
Աղբի՛ւր մ՚ըլլայ վճիտ՝ միտքըս յաւիտեան.
Իմաստներ յորդէ, ջինջ անխեղաթիւր.
Ո՛վ տէր, շընորհք տո՛ւր :

Շընորհք տո՛ւր. սին տենչ, անձնական օգուտ՝
Երակներուս մէջ չ՚ընեն ել ու մուտ.
Անսանձ մոլութեան չ՚ըլլա՛մ անձնատուր,
Ո՛վ տէր, շընորհք տո՛ւր :

Շընորհք տո՛ւր, պաշտեմ կրօնս ու հաւատ,
Կեղծիքն ըզզետնեմ ու նախանձն ալ վատ,
Սուրբ Փրկչիս փարիմ սիրով հաստամուր,
Ո՛վ տէր, շընորհք տո՛ւր :

Շընորհք տո՛ւր, աճի սիրովդ իմ հասակ,
Վախովդ գիտութեան առնեմ հեշտ ճաշակ.
Քու սիրուդ՝ կեա՛նքն իսկ ընեմ առաքուր,
Ո՛վ տէր, շընորհք տո՛ւր :

(Բիւրակն, 1900, էջ 637) Մ. ԹՐԻՐԵԱՆ

## 25. ԱՊՐՈՒՍՏ

*Երբ մարդիկ սկսան աշխարհիս այլեւայլ կողմերը սփռիլ, անշուշտ երկիրը շատ տեղ ամայի, խոպան եւ անտառուտ էր։ Վայրի անասուններ կը շրջէին ամենուրեք, հեղեղներ ու ջըրվէժներ կ'ողողէին դաշտ ու ձոր։ Հիմակուան պէս չի կար արուեստ, գործիք ու ճարտարութիւն որ բնական անբաւ դըժուարութեանց ու վտանգներու առաջքն առնէին. ուստի շատ նեղութիւն, շատ տառապանք քաշեցին մինչեւ որ կեանքի անմիջական պիտոյքը դիւրաւ հոգան. այսինքն ուտեստ, զգեստ, բնակարան։ Ի սկզբան ամէնքը մի եւ նոյն կերպով չէին ապրիր, տարբեր տարբեր միջոցներով իրենց ապրուստը կը հանէին։ Ամէն մէկ ցեղ ու ժողովուրդ իր բնակած տեղին յարմար գործ ու պարապում կ'ընտրէր։ Ընդհանրապէս կը կարծուի թէ մարդիկ քանի մը վիճակէ անցած են։ Առենօք կային եւ մինչեւ որ օրերը դեռ կան այնպիսի ժողովուրդներ որ իրենց առջի պարզ կեանքը կը վարեն, այսինքն որսորդ կամ հովիւ են։ Կային նաեւ ժողովուրդներ՝ ինչպէս հիմա, որ երկրագործ ու վաճառական եղան՝ թէեւ այս վիճակներ զատ զատ ազգի ու ժամանակի յատուկ չեն, այլ մի եւ նոյն ազգին մէջ կրնան ծաղկիլ այս եւ ուրիշ տեսակ արուեստներ, եթէ այլեւայլ հանգամանքներ ներեն։*

### 19. ՀՐԱՀԱՆԳ

*Սա բառերուն նշանակութիւնը սորվեցէք, անոնց իմաստը ցուցող ուրիշ բառ մը գտէք* (Ուղեցոյց, էջ 81) :

*Իղձ, հատու, հատուցանել, թաթ, համբուրել, չիթ, խաշնարած, ուտ, ողբ, ջանք, նուէր, նամակ, ողջակէզ, խաւար, հեր, շողուն, առաքել, ասր, խախուտ, ճախին, երաժիշտ, տկար, չէկ, կայտառ, յիմար, շաղակրատ, թափառական, օտարական, երկչոտ, գոռոզ, չնչին, փթթիլ, պըժգալ, գլորիլ, փարիլ, ողորմիլ, հպարտանալ, բարդել, հողի տակ ծածկել, հաւաքել, պահել, աւերել, կանգ առնել, հիմնել, տարածել, իմանալ, աճապարել, անփոյթ, բարբառ, ջերմ, գորով, ձու, սան, ջինջ, պատմել, հնար, բան, տառ, մանուկ, երդիք, ստրուկ, յետին, տաղտուկ, վաստակ, տարագ։*

## 26. ՔԱՂԱՔԱԿՐԹՈՒԹԻՒՆ

*Ինչպէս առաջ, ջրհեղեղէն ետքն ալ, շատ ժողովուրդներ՝ կեանքի պիտանի գործիքներ շինելու համար՝ քար, ոսկոր, եղջիւր, փայտ գործածեցին։ Ատեն անցնելով միայն, փոքր առ փոքր մետաղ գործելու հնարը գտան։ Այս նախնական ժողովուրդներու պատմութիւնը՝ իրենց կրթութեան աստիճանին համեմատ՝ երեք որոշ ժամանակի կը բաժնուի։*

*Այն ժամանակը երբ մարդիկ միայն ոսկորէ կամ քարէ գործիքներ ունէին՝ Քարէ դար կը կոչուի. այն ժամանակը որ մարդիկ այլեւայլ մետաղներ բաղադրելով գործիքներ շինելու յաջողեցան, Արոյրէ դար կ'անուանի. վերջապէս այն ժամանակը որ պատմական ժամանակներու հետ կը խառնուի Երկաթէ դար կ'ըսուի։*

*Բայց ամէն ժողովուրդներ միօրինակ չծաղկեցան։ Արեւելքի բնակիչները՝ իրենց նախահայրերուն աւանդներն ու գիտութիւնները մշակելով եւ արգաւանդ դաշտեր ու հովիտներ բնակելով՝ աւելի դիւրաւ զարգացան (ինչպէս Բաբելոնի, Նինուէի, Հնդկաստանի եւ Եգիպտոսի ժողովուրդները). քան թէ անոնք որ հեռաւոր երկիրներ ցրուելով՝ ինչպէս Եւրոպա, Ամերիկա, եւայլն, շատ ատեն վայրենի վիճակի մէջ մնացին, մինչեւ որ Ասիայէն գաղթողներու շնորհիւ կարող եղան կրթուիլ ու առաջ երթալ։*

### 20. ՀՐԱՀԱՆԳ

Հետեւեալ բառերուն սահմանը տուր (Ուղեցոյց, էջ 81) :

*Աչք, ականջ, եղունգ, որմնադիր, բոյն, արմատ, գամ, դմելին, լաչ, խորան, խունկ, զինուոր, պարտէզ, ծխախոտ, ջուր, առիւծ, քիթ, սեղան, մահ, արեգակ, պառաւ, սեր, սէր, շոգենաւ, աղ, խէժ, սոսինձ, տապակ։*

---

## 27. ԲԱՐԵԿԱՄՈՒԹԻՒՆ

*Հին դարերու մէջ, երկու Սիկիլիացի, Դամոն եւ Պիւթիաս, ընծայած են օրինակ՝ ճշմարիտ եւ կատարեալ բարե-*

կամութեան։ Դիոնեսիոս՝ Սիրակուսայի բռնաւորը՝ պարզ ամբաստանութեամբ մահուան դատապարտած էր Պիւթիասը։ Սա խնդրեց որ թոյլ տրուի իրեն՝ երթալ կարգադրել ինչ ինչ գործեր՝, մերձակայ քաղաքին մէջ։ Խոստացաւ ներկայանալ որոշեալ օրը։ Դամոն երաշխաւորեց այս խոստումը, իր՝ անձը աւանդ տալով, եւ Պիւթիաս մեկնեցաւ։

Սակայն Պիւթիասի գործերը կ՚երկարաձգուէին։ Մահուան սահմանեալ օրը եկաւ հասաւ։ Ժողովուրդը կը խռնուի. ամէն մարդ կը պախարակէ Պիւթիասը, ամէն մարդ կ՚ողբայ անմեղ Դամոնը որ հանդարտիկ կը դիմէ մահուան. կարի վստահ էր թէ իր բարեկամը պիտի գար, կարի երջանիկ պիտի ըլլար, սակայն, եթէ չգար ան։ Ահաւոր վայրկեանը արդէն կը մօտենար, և ահա հաղարաւոր աղմկալից ձայներ ծանուցին Պիւթիասին գալուստը՝ Կը վազէ, կը թռի դատապարտութեան վայրը, կը տեսնէ լախտը կախուած իր բարեկամին գլխուն վրայ, կը գրկեն զիրար, ու՝ արտասուելով՝ մէկը միւսին տեղ մեռնիլ կ՚ուզէ։ Հանդիսականները կը փղձկին։ Իշխանը կը խոյանայ գահէն վար եւ կը խնդրէ անոնցմէ՝ զինքն ալ մասնակից ընել այնքան անձնուէր բարեկամութեան։

## 21. ԲԱՂԴԱՏՈՒԹԻՒՆ ԿԱՄ ՆՄԱՆՈՒԹԻՒՆ

Գիծերուն տեղ պատշաճ բառը դրէ (Ուղեցոյց, էջ 82)։

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Մեղրի | պէս | — | Ովկիանոսի | պէս | — | Սամփսոնի | պէս | — |
| Կաթի | » | — | Ջուրի | » | — | Աղաւնիի | » | — |
| Քարի | » | — | Գնտակի | » | — | Ծովու | » | — |
| Առիւծի | » | — | Սողոմոնի | » | — | Ձիւնի | » | — |
| Վարդի | » | — | Բուրդի | » | — | Ոսկիի | » | — |
| Արիւնի | » | — | Արեւու | » | — | Բամպակի | » | — |
| Շունի | » | — | Քացախի | » | — | Կապարի | » | — |
| Աղուէսի | » | — | Ասեղի | » | — | Փետուրի | » | — |
| Հրեշտակի | » | — | Սոխակի | » | — | Յոբի | » | — |
| Օձի | » | — | Հայլիի | » | — | Օդի | » | — |
| Ապակիի | » | — | Ճեղի | » | — | Իշու | » | — |

## 28. ԿԱՐՈՒԱԿՆ ՈՒ ՄԵԾԱՏՈՒՆԸ

Կարուակ մը կար ատենօք
Որ՝ թէպէտ խեղճ, չքաւոր՝
Կ'երգէր զուարթ ու անհոգ
Աշխատելով ամէն օր :

Դրացի մ'ունէր մեծատուն,
Որ շքեղ կեանք կը վարէր.
Բայց ո՛չ հանգիստ եւ ո՛չ քուն
Ունէր ցորեկ ու գիշեր :

Առտուան դէմ, երբ նիրհէր,
Կարուակն եկած էր արդէն,
Եւ երգելով միշտ երգեր՝
Կ'արթնցընէր զայն քունէն :

Հարուստն ըսաւ օր մ'իրեն.
« Կ'ուզեմ բարիք մ'ընել ես.
Հարիւր ոսկի թող բերեն,
Ա՛ռ, ամէնքն ալ կուտամ քեզ : »

Կարուակն առաւ երբ ոսկին,
Ա՛լ աշխարհք իրն էր կարծես.
Բայց այդ գանձով թանկագին
Հոգն ալ մըտաւ տունէն ներս :

Դադրեցաւ ձայնն իր երգին,
Քունն ալ փախաւ աչքերէն.
Տանջանքն եղաւ իր բաժին,
Խաղաղ կեանքին փոխարէն :

Օր մ'ալ գնաց հարուստին
Որ ա՛լ հանգիստ էր առտուն.
« Ա՛ռ ոսկիներդ, ըսաւ, սին,
Տո՛ւր քունս ու երգս ինծի դուն : »

---

## 29. ՇԱՊԻԿՆ Ի՞ՆՉՊԷՍ ԿԸ ՇԻՆՈՒԻ

*Տղա՛ք, թերեւս չէք գիտեր թէ շատ մը մարդիկ կ'աշխատին ձեզի համար։ Մտի՛կ ըրէք թէ ի՛նչպէս կը շինուի ձեր շապիկը, եւ այն ատեն կը հասկնաք։*

*Ձեր շապիկը բամպակով շինուած է։ Բամպակը կը բուսնի տունկի մը վրայ որ տաք երկիրներ կ'աճի։ Բազմաթիւ մարդիկ կը տնկեն բամպակենին եւ կը քաղեն բամպակը. յետոյ ուրիշներ կը տանին զայն գործարան ուր բամպակը մանելով՝ բարակ թելեր կը շինեն։ Ոստայնանկը կ'առնէ այդ թելերը եւ կը գործէ կտաւ։ Խանութպանները կը ծախեն այդ կտաւը, ձեր հայրը ստակ կուտայ, կը գնէ, տուն կը բերէ, եւ ձեր մայրը մկրատով կը կտրէ կտաւը ձեր հասակին յարմար, կը կարէ ասեղով ու դերձանով, եւ դուք կը հագնիք շապիկը, կը տաքնաք ու կ'ուրախանաք, առանց գիտնալու թէ ի՛նչ նեղութիւններով ձեռք բերուած է բամպակը, ի՛նչ քրտինքներով ձեր հայրը ստակ շահած ու կտաւ գնած է եւ ո՛րչափ մարդիկ աշխատած են ձեզի համար։*

*Տղա՛ք, խնայութեա՛մբ գործածեցէք ձեր հագուստները, մաքո՛ւր պահեցէք, քանի որ հիմա գիտէք թէ ի՛նչպէս շինուած են անոնք։*

Ծան. — *Պատմեցէք թէ ինչպէս կը շինուի գուլպան։*

### 32. ՀՐԱՀԱՆԳ

*Ի՞նչ է հետեւեալ բառերուն հականիշը* (Ուղեցոյց, էջ 83):

*Հպարտ, սուր, ստախօս, աղի, առաւօտ, լռել, անիծել, ծնիլ, լալ, վառել, պատժել, պահք, հեռանալ, ձգել, քակել, բացուիլ, թոռմիլ, սկիզբ, սէր, հրեշտակ, մերժել, ծուլութիւն, վայրենի, պարսաւել, առնել, ժլատ, խոնարհ, ժխտական, ծիծաղ, ակար, վեհերոտ, արժանի, համակարծիք, պարապ, կործանել, անկեղծ, երախտագէտ, փափկասիրտ, տարածել, երջանիկ, ցաւագին, վստահ։*

## 30. ԳԵՂԱՑԻ ԵՒ ՋՐԱԲՆԱԿ ՈԳԻ

(ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԷՔԵԱԹ)

*Գեղացիին կացինը պատահմամբ գետը ինկաւ։ Խեղճ մարդը ցաւէն նստաւ գետեզրը, սկսաւ լալ։*

*Անոր լացին ձայնը հասաւ ծեր Ջրաբնակ ոգիին։ Ցաւեցաւ գեղացիին վրայ, գետէն հանեց ոսկի կացին մը եւ հարցուց. «Ա՞ս է քու կացինդ»։*

*— Ո՛չ, ատ չէ, պատասխանեց գեղացին։»*

*Ոգին հանեց ուրիշ մը, արծաթէ կացին մը եւ ցոյց տալով գեղացիին՝ հարցուց. «Ա՞ս է »։*

*— Ո՛չ, ըսաւ նորէն գեղացին »։*

*Ան ատեն Ջրաբնակ դեւը ջուրէն հանեց մարդուն իսկական կացինը։ Գեղացին ուրախացաւ.*

*« Հա՛հ, ա՛տ է իմ կացինս » ըսաւ։*

*Ոգին, ան ատեն, երեք կացիններն ալ մարդուն նուիրեց՝ անոր ճշմարտախօսութեանը համար։*

*Տուն դառնալով՝ գեղացին ցուցուց կացինները իր դրացիներուն եւ պատմեց ինչ որ պատահած էր։*

*Ամբողջ գեղը իմացաւ այս բանը։ Գեղացի մը փափաքեցաւ ինք ալ ոսկի կացին ունենալ։ Գետափը գնաց, իր կացինը ջուրը ձգեց եւ նստաւ։ Նստաւ ու սուտ լալ սկսաւ։*

*Ջրաբնակը ոգին հանեց ոսկի կացին մը եւ հարցուց.*

*«Աս կացինը քո՞ւկդ է։»*

*Գեղացին ուրախացաւ եւ աղաղակեց. «Ի՛մս է, ի՛մս է, ծերո՛ւկ։»*

*... Ջրաբնա՛կ ոգին մտաւ ջուրը, կացինն ալ հետը տարաւ։ Գեղացին շատ երկար ժամանակ նստաւ գետեզրը, բայց բան մը չանցաւ ձեռքը։ Եւ դատարկ դատարկ, քոռն ի քոռը տուն դարձաւ։*

### 28. ՀՐԱՀԱՆԳ

Տեղագիր բառերուն եզակը դիր եւ միւսները յոգնակի ըրէ (Ուղեցոյց, էջ 83):

*Ախորժելի յիշատակ։ — Օգտակար միջատ։ — Նեղ կօշիկ։ — Հաւատարիմ ծառայ։ — Հասուն պտուղ։ — Երիտասարդ փաստաբան։ — Զուարճալի պատմութիւն։ — Պտղատու ծառ։ — Համեստ մարդ։ — Չար տղայ։ — Չոր լաթ։ — Գէր կին։ — Ծեր դասատու։ — Յամառ աղջիկ։ — Արի զօրական։ — Նուրբ ծղօտ։ — Առաքինի տղայ։ — Անուշ խնձոր։ — Անմեղ մարդ։ — Տգեղ դէմք։ — Հաստատուն հիմ։ — Մշակուած արտ։ — Լուսաւոր սենեակ։ — Նեղ անցք։ — Տկար միտք։ — Դիւրին դաս։ — Ծանր հիւանդութիւն։ — Օրէկ հաց։ — Ցած տուն։ — Խիտ ամպ։ — Բութ գմելին։ — Սրատես աչք։ — Աստղի վարք։ — Խնդացող երախայ։ — Փութաջան աշակերտ։*

---

## 31. ՇՈՒՆՆ ՈՒ ՕՁԸ

*Հնդիկ մը, որսալու համար խրճիթէն դուրս էր ելած, երբ վիթխարի պօա մը ներս սողոսկեցաւ և գնաց ուղղակի օրրանը, ուր մանկիկ մը մշիկ մշիկ կը քնանար։ Խոյացած ատեն օրօրոցը շրջեց։ Խոշոր պահապան շուն մը որ մօտերը կը պտըտէր, ձայնէն ներս վազեց, և կատաղի կռիւ մը ըրաւ ճիւաղին հետ, ուրկից յաղթող ելաւ։*

*Դեռ բերանը արիւնաթաթաւ՝ լսեց տիրոջը գալը։ Անոր դէմ վազեց և սովորականէն աւելի սիրոյ ցոյցեր ըրաւ։ Հնդիկը խելքը գլխէն թռուց՝ երբ անոր արիւնլուայ գլուխը տեսաւ, և որ աւելին է, տղուն օրրանը գլխիվար կործուած գտաւ։ Այս երկու իրողութիւնները արագապէս միտքին մէջ միացնելով՝ եզրակացուց թէ շունը սպաննած էր իր զաւակը։*

*Յեղակարծ կատաղութեան մէջ խելակորոյս, և, առանց լաւ մը խորհրդածելու, կը քաշէ հրացանը և կը պարպէ հէք շունին վրայ՝ որ հեծկլտալով՝ հազիւ ոյժ կ'ունենայ մինչև իր խցիկը քաշքշուելու։*

*Այս յախուռն արարքէն յետոյ, դէպի օրօրոցը ուղղուեցաւ և շտկելով զայն՝ տեսաւ որ զաւակը խաղաղիկ կը ննջէր։*

Իսկոյն իր անարդարութիւնը ճանչցաւ եւ աւելի եւս զղջաց ըրածին վրայ՝ երբ օրօրոցէն քանի մը քայլ անդին գտաւ դիակը օձին զոր իր շունը խեղդած էր։ Այս տեսարանէն գուշակեց թէ խեղճ շունը ո՛չ միայն տղուն չարիք չէր ըրած, այլ եւ անոր կեանքը փրկած էր՝ վտանգելով իրենը եւ կռուելով այն ճիւաղին դէմ որուն մարմինը իր ոտքին առջեւ էր։

Հնդիկը իր արցունքը չկրցաւ զսպել իր հաւատարիմ պահպանին մահուան վրայ։

## 31. ՀՐԱՀԱՆԳ

Սա բառերուն հականիշները գտէք (Ուղեցոյց, էջ 84) :

Տարակարծիք, խաղաղութիւն, անհամ, գովասանք, մահ-
կանացու, արժանի, անշուք, վատ, խոնարհութիւն, ողջա-
խոհութիւն, կասկածոտ, ընդունիլ, ցնծալ, բարեկարգ, վեհ,
առաջին, նսեմ, անբաժան, ամուրի, հանճարեղ, քակել, հը-
պարտ, վեհանձն, տգիտութիւն, գիշեր, մոռնալ, տալ, ա-
տելութիւն, բարեպաշտ, դողդոջ, չու, փորձառու, լայն,
համբերող, պարտք, ելք, պակսիլ, ծիծաղիլ, ողբերգութիւն,
լուրջ, զգայուն, բնական, հարցում, դնել, անիծել, տանիլ,
վրդովմունք, բիրտ, նահանջել, օգնել, յաջող, գտնել, վայե-
լել, աղաչել, անկում, իշխել, կտրել, անսաստել, մասնակի,
մարմնաւոր, ապրիլ, սովորական, թոյլ, համակրութիւն։

---

## 32. ԶԱՏԻԿ

Ծաղկած են դաշտեր ծիլ ծիլ խատուտիկ,
Եւ կոչնակ ժամուն կ'աւետէ Զատիկ.
Զատիկն է եկեր, աշխարհ կը ցնծայ,
Կարմիր հաւկիթներ բերեր է ընծայ:

Զուարթ ու պայծառ թէ ծագէ արեւ,
Թէ ամպոտ ըլլայ ու տեղայ անձրեւ,
Ինչ փոյթ, Զատիկն է միշտ ուրախ Զատիկ,
Ուրախ ցատկոտեն միշտ մեծ ու պզտիկ:

Ժողովրդային այս պարահանդէս
Կը տօնուի տարին մէկ անգամ այսպէս,
Զուարթ երգերով՝ խաղերով անմեղ
Եւ ո՛չ «մուտք» դընեն՝ ո՛չ դիմակ տըգեղ:

Փող, թմբուկ հնչեն ժիր՝ միօրինակ,
Եւ քնդայ երկիր պինդ ոտքերու տակ.
Ծածանի հովէն գոյնըզգոյն *եազման*,
Արեւէն ցոլայ *չէփկէնին սըրման*:

Տարուան մէջ թափած քիրտն իրենց ճակտուն՝
Կրկին՝ բայց ուրախ՝ այսօր կը հեղուն.
Եւ հետըզհետէ պարն ոգեւորի,
Ու անկեղծ պագ տայ ընկեր ընկերի:

Բայց թմբկին ձայնէն երբեմն ալ յուզուած՝
Օղին խառնեն կաթիլ մ'արտասուաց,
Եւ իրենց *խարիպ* գլուխ-գլխի մօտ
Կնոջ ու զաւկի կը քաշեն կարօտ:

Մ. ԱՃԷՄԵԱՆ

---

## 33. ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՍԻՐՈՅ ՕՐԻՆԱԿ

*Քրիստոսի 1585 թուականին, Հնդկաստան մեկնող նաւ մը ալեկոծութեան հանդիպելով՝ խրեցաւ ցամաքի մը վրայ։ Նաւաբեկեալները՝ խորտակուած նաւուն բեկորներէն նաւակ մը շինեցին, եւ անով սկսան շարունակել իրենց ուղեւորութիւնը։ Նաւուղիղը, տեսնելով որ նաւակը շատ բեռնաւորուած է, յայտնեց թէ պիտի ընկղմին, եթէ տասուերկու հոգի ծովը չձգուին։ Վիճակ ձգեցին եւ որոշուեցաւ որ տասուերկու անձեր ծովը ձգուին։ Ասոնց մէջ կար երիտասարդ մ'ալ որ նաւակին մէջ ունէր կրտսեր եղբայր մը։ Սա՝ նաւուղիղին*

տոքը կ՚իյնայ եւ Թախանձանօք կ՚աղաչէ որ զինք եղբօրը տեղ ծովը նետեն։ «Եղբայրս ինծմէ աւելի քաջ է, հայրս ու մայրս ա՛ն կը պահէ. երբ ինք կորսուի, ծնողքս ալ Թըշուառութեամբ պիտի մեռնին. կ՚աղաչեմ, փրկեցէ՛ք եղբօրս կեանքը որով եւ ծնողքս. զի՛ս նետեցէք, զի՛ս որ չեմ կըրնար անոնց օգնել։»

Նաւուղիղը հաւանեցաւ եւ կրտսերը ծով նետել տուաւ։

Երիտասարդը՝ իբր վեց ժամ լողալով՝ հետեւեցաւ նաւակին եւ վերջապէս անոր հասաւ։ Զինքն սպաննել կը սպառնան եթէ փորձէր նաւակ մտնել. ան կը մօտենայ։ Կ՚ուզեն իրեն զարնել Թուրով մը, Թուրը կը բռնէ եւ Թող չի տար մինչեւ որ կը յաջողի նաւ մտնել։ Իր յարատեւութիւնը ամէնուն սիրտը կը շարժէ եւ Թոյլ կուտան որ մնայ նաւուն մէջ։ Այսպէսով այդ եղբայրասէր տղան կը յաջողի փրկել իր կեանքը ինչպէս եւ եղբօրը։

## 25. ԲԱՂԴԱՏՈՒԹԻՒՆ ԿԱՄ ՆՄԱՆՈՒԹԻՒՆ

Գծերուն տեղ դրէք պատշաճ բառը (Ուղեցոյց, էջ 84)։

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Մեղուի | պէս | — | Ցովսէփի | պէս | — | Երագի | պէս | — |
| Կրեսոսի | » | — | Ճպուռի | » | — | Եզոպոսի | » | — |
| Բարակի | » | — | Նապաստակի | » | — | Կայէնի | » | — |
| Մարմարիոնի | » | — | Մազի | » | — | Վագրի | » | — |
| Մեռելի | » | — | Ցարդի | » | — | Վառօդի | » | — |
| Աւազի | » | — | Աբրահամի | » | — | Շանթի | » | — |
| Գառնուկի | » | — | Ներոնի | » | — | Կովի | » | — |
| Ալիքի | » | — | Ձուկի | » | — | Ստուերի | » | — |
| Կրիայի | » | — | Մնդիկի | » | — | Տերեւի | » | — |

# 34. ԿԵՆԴԱՆԻՆԵՐ

*( Աշակերտը, կարդալէ եւ բացատրելէ ետքը, թող գտնէ եւ ցանկ մը շինէ կենդանիներու անունները ):*

Կենդանիներուն մէջ կան այնպիսիներ, որոնք կ'ապրին մարդուն մօտ եւ անոր կը ծառայեն. ասոնք կը կոչուին Ընտանի կենդանիներ ինչպէս՝ ձի, էշ, ջորի, եզ, հաւ, ուղտ, ոչխար, եւայլն (1):

Վայրի կենդանիներ ալ կան որոնք մարդոցմէ հեռու կ'ապրին. ինչպէս՝ աղուէսը, ճագարը, կապիկը, խոզը (2):

Վայրի կենդանիներու մէջ կան որ ուրիշ կենդանիներու միսը կ'ուտեն. ասոնք Գազան կը կոչուին. ինչպէս՝ առիւծը, վագրը, գայլը, արջը, եւայլն (3):

Չորքոտանի կը կոչուին այն կենդանիները որ չորս ոտք ունին. ինչպէս՝ ուղտը, այծը, մուկը, եւայլն:

Երկոտանիները կ'ունենան երկու ոտք. ինչպէս՝ Թռչուն-ները, հաւերը, եւայլն:

Կան կենդանիներ որ ոտք չունին, չեն կրնար քալել, այլ կը սողան. ասոնք կը կոչուին Սողուն եւ իրենց մորթը թեփով կամ պատեանով ծածկուած է (4):

Թռչուններն ալ կը թռչին իրենց թեւերով. անոնց մարմինը փետուրով ծածկուած է. բոյն կը շինեն եւ անոր մէջ կ'ածեն իրենց հաւկիթները որոնցմէ կ'ելլեն ձագեր (5):

Ձուկերը կ'ապրին գետերու եւ ծովերու մէջ, անոնք ալ ունին թեւեր՝ լողալու համար, եւ անոնց մորթն ալ ծածկուած է թեփով (6):

Երկակենցաղ կը կոչուին տեսակ մը կենդանիներ որ թէ՛

---

(1) Աշակերտը թող տայ ուրիշ ընտանի կենդանիներու անուններ:
(2) » » » » վայրի » »
(3) » » » » գազաններու անուններ:
(4) » » » » սողուններու »
(5) » » » » թռչուններու »
(6) » » » » ձուկերու »

ցամաքի վրայ թէ՛ ջուրի մէջ կ՚ապրին, ինչպէս՝ գորտը (7)։

Կաթնասուներ կը կոչուին այն կենդանիները որ ծիծ ունին եւ իրենց ձագուկներուն կաթ կուտան (8)։

Կան կենդանիներ ալ որ խոտակեր կ՚ըսուին. ինչպէս՝ փիղը, ձին, ոչխարը, եւայլն (9)։

Որոճացող կենդանիներ ալ կան. ասոնք, իրենց կերածը մարսելէ առաջ, տեսակ մը տոպրակի մէջ կը պահեն, ապա նորէն բերաննին կը բերեն, ծամր ծամր կը ծամեն եւ նորէն կը կլլեն։ Կովը, ցուլը, երինջը, հորթը որոճացողներ են (10)։

Մսակեր են կենդանիներէն շատերը, ինչպէս... (11)։

Կրծող կենդանիներ ալ կան՝ որոնց առջի ակռաները երկայն են. ինչպէս՝ մուկը, նապաստակը, կուղբը, եւայլն։

Կենդանիներուն վրայ այս տեսակ գիտելիքներ շատ կան զորս պիտի սորվինք *Կենդանաբանութիւն* կոչուած գիտութեան մէջ։

## 26. ՃՐԱՃԱՆԳ

*Տեղագիր բառերուն ներհակը դրէ* (Ուղեցոյց, էջ 85)։

*Աղքատութիւնը մոլութիւն* չէ։ — *Հարստութիւնը խնայութեան* դուստրն է։ — *Ամառը*՝ *շուք տեղ* կը փնտռուի։ — Աստուած կը *շնորհէ* իր բարիքը *առաքինի* մարդուն։ — Մեր *սիրած* անձերը *թերութիւն* չ՚ունենար։ — *Չարերը* միշտ *ուշ* կը մեռնին։ — *Քիչ* մարդիկ *բարի* են։ — *Ներողամիտ* ըլլանք *մեռածներուն* նկատմամբ։ — *Իրիկունը*՝ արեւը *մարը* կը *մտնէ*։ — *Երջանկութիւնը* կեանքը *կ՚երկարէ*։ — *Մահը* մեր կեանքին *վախճանն* է։ — *Երիտասարդութիւնը* առաջ կը նայի։ — *Մանկութիւնը երջանիկ* է, վասն զի *քիչ* գիտէ։

---

(7) Աշակերտը Թող տայ ուրիշ երկակենցաղներու անուններ։
(8) » » » » կաթնաբերներու »
(9) » » » » խոտակերներու »
(10) » » » » որոճացողներու »
(11) » » » » մսակերներու »

## 35. ԳՈՂՑՈՒԱԾ ՁԻՆ

Գեղացիի մը ձիերուն լաւագոյնը գողցան իր ախոռէն։

Քանի մը օր ետքը, գեղէն 15 մղոն հեռու շուկայ մը գնաց ուրիշ ձի մը գնելու մտքով. բայց մեծ եղաւ իր զարմանքը, երբ ծախու հանուած ձիերուն մէջ իր ձին ճանչցաւ։

Իսկոյն բռնեց անոր սանձէն ու պոռաց. «Աս ձին ի՛մս է, երեք օր է որ գողցուցի։»

— Կը սխալի՛ք, Պա՛րոն, ըսաւ՝ քաղաքավար ձեւերով՝ այն մարդը որ ձին ծախել կ'ուզէր։ Տարի մը կայ որ այս ձին իմս է, ուրեմն ձերը չէ անշուշտ։ Սակայն կարելի է որ նմանութիւն մ'ունենայ ձերինին հետ, բայց այս նմանութիւնը ոչինչ կ'ապացուցանէ։»

Գեղացին շուտ մը երկու ձեռքը ձիուն աչքերուն վրայ դրաւ ու ըսաւ. «Է՛հ, եթէ այսչափ երկար ատենէ ի վեր ձին քուկդ էր, ըսէ՛ տեսնեմ, ո՞ր աչքը կոյր է։»

Միւսը, որ իրօք ձիուն գողն էր, բայց որ ուշադրութեամբ զննած չէր զայն, շուարեցաւ մնաց։ Սակայն, քանի որ բան մը ըսել պէտք էր, ըստ բախտին պատասխանեց.

— «Ձա՛խ աչքն է։

— Սխա՛լ է, ըսաւ գեղացին։

— Ձէ՛, չէ՛, ընդմիջեց գողը, սխալեցայ. ըսել կ'ուզէի որ աջ աչքն է որ չի տեսներ։»

Ան ատեն գեղջուկը բացաւ ձիուն աչքերն ու ըսաւ.

— Հիմա հաստատուեցաւ որ դուն ստախօս մը եւ գող մ'ես. ձին ո՛չ կոյր է ո՛չ միականի։ Հարցումիս նպատակն էր նենգութեանդ քօղը բանալ եւ երեւան հանել գողութիւնդ։»

Բոլոր ներկաները սկսան խնդալ ու ծափել՝ «Գողը բռնուեցա՛ւ» պոռալով։

Գողը ստիպուեցաւ նախ ձին իր օրինաւոր տիրոջը յանձնել, ապա բանտարկուիլ ու կրել իր արժանի պատիժը։

## 35. ՀՐԱՀԱՆԳ

*Տեղագիր բառերուն ներհակը դի՛ր* (Ուղեցոյց, էջ 85):

*Չար գործ մը կարծր բարձի կը նմանի։ — Մեղաւորին քունը վրդովեալ է։ — Հոգին կը հրամայէ։ — Գովեստը կը փայփայէ մեր հոգին։ — Գիտութիւնը միտքին լոյսն է։ — Չարին բարեկամութիւնը պատուհաս մ'է։ — Եթէ գիտես, խօսէ՛։ — Մարդս յաճախ կը զղջայ խօսելուն։ — Սէրն ու ներողութիւնը երկինքէն իջած են։ — Արդարին աղօթքն Աստուծոյ սիրելի է։ — Պարկեշտ մարդոց երջանկութիւնը տեւական է։ — Ծուլութիւնն ու շռայլութիւնը կործանումի կ'առաջնորդեն։*

---

## 36. ԸՆԿՈՒԶԻ ԾԱՌ

Ընկուզի ծառին համար կը պատմեն
Թէ առաջուց շատ բարձըր չէր գետնէն,
Անա՛նկ որ ամէն ուզողն ալ կրնար
Փրցընել պտուղն ու անցնիլ երթալ:
Աս բան դիժարը գալով մեր ծառին՝
Ըսկըսաւ գանգատ ընել Դիոսին.
Խնդրեց որ հասակը բարձրացընէ,
Դիոս ալ ուզեց որ կամքը ընէ:

Գեղացիք առտուն ելլեն տեսնեն որ
Կարճուկ ընկուզին՝ բարձր հասակաւոր՝
Անտառներու մէջ մեծցած ծառի պէս,
Ծայրերն է հասեր երկինքը, կարծես.
Ու հըպարտացած գլուխ շարժելով՝
Տերեւներն ալ է տըւեր դէպ ի հով:
Բայց ուրախութիւնն երկայն չը քշեց,
Գեղացին իր հին արհեստը յիշեց.

Ձեռք հասնելու ճարն հատած տեսնելով՝
Ըսկսաւ ձաղկել քարով ու փայտով,
Եւ այնչափ վեր վար զարկաւ ու կոտրեց
Որ պըտուղ, տերեւ, ճիւղ՝ գետին փռեց:
Խեղճ ընկուզենին խիստ ուշ իմացաւ
Որ շատ բարձրանալն իրեն գէշ եղաւ:

---

## 37. ԿՆՔԱՀԱՅՐ ԿԱՅՍՐԸ

*Յովսէփ Բ. Գերմանիոյ կայսրը, Գաղղիա առաջին ճամբորդութեան միջոցին, օթեւան մը հասնելով՝ կ'ուզէր ձի փոխել, բայց պատրաստ ձի չգտնուեցաւ, քանզի օթեւանին տէրը բոլոր ձիերը մօտակայ գիւղերը ղրկած էր. իր զաւկին կնունքին հրաւիրուած ազգականներ ու բարեկամներ բերելու. ուստի խնդրեց օտարականէն համբերել քիչ մը։ Կայսրը, խօսելով մարդուն հետ, բարի ու պարկեշտ գտաւ զնա, եւ առաջարկեց երախային կնքահայր ըլլալ։ Օթեւանին տէրը, որ այս օտարականը չէր ճանչնար, հաւանեցաւ անոր առաջարկին։ Հիւրերը եկան, բազմութիւնը գնաց եկեղեցի և հանդէսը սկսաւ։ Կնքաւոր երէցը հարցուց կնքահօր անունը. «Յովսէփ, պատասխանեց կայսրը. — Մականո՞ւնդ ինչ է, կրկնեց երէցը։ — Ինչ, ըսաւ կայսրը, ես կը կարծէի թէ միա՛յն անունս բաւական է։ — Ո՛չ, տէր, ըսաւ երէցը, կնքահայրերուն անունը կ'արձանագրենք հանդերձ մականուանով։ — Ուրեմն, ըսաւ օտարականը, գրէ՛. Յովսէփ Բ. կայսրը Գերմանիոյ։»*

*Երէցն ու բոլոր հանդիսականները ապշած մնացին, եւ օթեւանին տէրը՝ մանուկին հայրը՝ իշխանին ոտքը ինկաւ։ Իշխանը քաղցրութեամբ վերցուց զնա եւ խոստացաւ երբեք չմոռնալ իր սանը։*

### 37. ՀՐԱՀԱՆԳ

*Տեղագիր բառերուն ներհակը qsk'f եւ ηrk'f* (Ուղեցոյց, էջ 85—86):

*Կ'ատեմ այն աշակերտը որ միշտ պարապ, անհոգ ու չար է: — Այնպէս կը կարծէ թէ ժամերը խիստ դանդաղ կ'անցնին, վասն զի գէշ գործածուած ժամանակը երկայն կը թուի: — Դաս սորվիլը ձանձրոյթ կը պատճառէ անոր, աշխատութիւնը յոգնութիւն մ'է անոր համար, ամէն բան դժուար կ'երեւի: — Ուստի իր ընկերները կ'արհամարհեն զինքը, դասատուն կը պատժէ, մայրն ալ դժբաղդ է որդւոյն այս յոռի վարմունքէն եւ չարունակ կը յանդիմանէ զնա: — Ապագային, հպարտ ու տգէտ մէկը պիտի ըլլայ, վասն զի հպարտութեան սովորական ընկերն է տգիտութիւնը: — Կ'ողբամ այսպիսի տղու մը վիճակին վրայ: Եւ ո՞վ չպիտի ողբար, եթէ նկատէր թէ յոռի դաստիարակութիւն մը աղբիւր է մոլութեան եւ ծիլ ամէն չարիքներու:*

---

## 38. ԸՆԿԵՐԱԿԱՆ ՎԻՃԱԿ ՈՒ ՊԱՇՏՕՆ

*Այն մարդիկ որ կը բնակին գեղերու եւ քաղաքներու մէջ, կը կոչուին գեղացի ու քաղաքացի:*

*Անոնք որ ժողովուրդներ կը կառավարեն, կ'ըսուին վեհապետ, կայսր, թագաւոր, խորհրդական, իշխան, նախագահ, քաղաքապետ, ոստիկանապետ:*

*Անոնք որ զինուորական են, իրենց աստիճանին համեմատ կը կոչուին պարզ զինուոր, ենթասպայ, սպայ, տասնապետ, յիսնապետ, հարիւրապետ, դեր-հազարապետ, հազարապետ, գնդապետ, հրամանատար, սպարապետ:*

*Անոնք որ կը կառավարուին, կ'ըսուին քաղաքացի, շինական (գեղացի), ռամիկ, հպատակ, ժողովուրդ, ազգ:*

*Անոնք որ մասնաւոր անձերու քով կը ծառայեն, կ'ըսուին ծառայ, սպասաւոր, սպասուհի, աղախին, նաժիշտ,*

դայեակ, սնոտու, սենեկապան, խոհարար, պարտիզպան, գործաւոր, մշակ, աշկերտ, ուսանող, եւայլն։

Կառավարական գործերու մէջ ծառայողները կը կոչուին փոխարքայ, նախարար, պաշտօնեայ, տեսուչ, կուսակալ, կառավարիչ, տեղակալ, հաշուակալ, գանձապետ, դիւանադպիր, համարակալ, օգնական, գրագիր (քարտուղար), անդամ, ժողովական, դիւանագէտ։

Անոնք որ ծառաներ, գործաւորներ կամ աշակերտներ ունին, կ'ըսուին տէր, գործարանատէր, խանութպան, վարպետ, արհեստապետ, եւայլն։

---

## 39. ՃԱՐՊԻԿՈՒԹԻՒՆ ՈՒ ԱՆՎԱԽՈՒԹԻՒՆ (*)

Մակեդոնիոյ Փիլիպպոս թագաւորին փառաւոր ձի մը ընծայ եկեր էր։ Այդ ձին կ'ըսուէր ցլագլուխ, որովհետեւ գլուխը նման էր ցուլի գլխուն։ Շատ վարպետ ձիավարժներ չկրցան այդ ամեհի, խստերախ ձին սանձել. ուստի Փիլիպպոս կը կամէր զայն հեռացընել իբրեւ անօգտակար կենդանի։ «Մե՛ղք, ըսաւ դեռահասակ որդին՝ Աղեքսանդր, մե՛ղք որ իրենց անկարողութեամբ ու վախկոտութեամբ այս սքանչելի ձին ձեռքէ պիտի հանեն։» Փիլիպպոս՝ որդիին յանձնապաստանութիւնը շտկելու համար, հրամայեց որ ինք աշտանակէ վըրան։ Աղեքսանդր ուրախութեամբ վազեց գնաց կատաղի ձիուն քով, չոյեց փայփայեց զայն, հանդարտեցուց, ճարտարութեամբ վրան ցատքեց, փոքր մի ժամանակ քալեցուց, յետոյ մտրակեց, սանձարձակ վազցուց, յոգնեցուց։ Սանձը դարձուց, բերաւ հօրը առջեւ, հանդարտ հանդարտ ձիավարեց ու վար իջաւ։ Զարմացաւ Փիլիպպոս. «Տղա՛ս, գոչեց, քեզի արժանի թագաւորութիւն մը փնտռէ. Մակեդոնիա բաւական

---

(*) Ընթերցանութիւն ընելէ ետքը, շեղագիր բառերուն տեղ հոմանիշ մը դրէք։ (Տե՛ս, Սկզբունք Համաձայնութեան, Ա. տիպ, 1894, էջ 79)։

*չէ։» Եւ զրկեց համբուրել զինքը։ Յետոյ այս ամենի ձին ա՛յնչափ վարժուեցաւ, կ'ըսեն, Աղեքսանդրի՝ որ մինչեւ դիմացի ոտքերը կը ճկէր որպէս զի Աղեքսանդր վրան հեծնէ։*

---

## 40. ԸՆԿԵՐԱԿԱՆ ՎԻՃԱԿ ՈՒ ՊԱՇՏՕՆ

*Անոնք որ տղայ կը կրթեն կամ կը խնամեն, կ'ըսուին խնամակալ, խնամակալուհի, վարժիչ, վարժուհի, վարժապետ կամ դասախօս; ուսուցիչ կամ դաստիարակ, դաստիարակուհի, մանկավարժ, եւայլն։*

*Անոնք որ եկեղեցիի մէջ կը ծառայեն, կ'ըսուին հովիւ, վարդապետ, եպիսկոպոս, քարոզիչ, քահանայ, երէց, աւագերէց, աթոռակալ, սարկաւագ, դպիր, լուսարար, եկեղեցպան, ժամկոչ, տիրացու, փոքրաւոր։*

*Անոնք որ հիւանդութիւններու վրայ կը խօսին, եւ անոնց դարման կը գտնեն՝ կ'ըսուին բժշկապետ, բժիշկ, վիրաբոյժ, ատամնաբոյժ, դեղագործ, հիւանդապահ, մարձող։*

*Ոստայնանկը, խաղախորդը, ժամագործը, կառագործը, թամբագործը, թիթեղագործը, ճարտարագործը, բրուտը, ղպուտը, խոհարարը, շաքարագործը, եւայլն՝ արհեստաւորներ են։*

*— Կայսրը կը վարէ իր տէրութիւնը։*
*— Նախագահը կը վարէ իր նահանգը։*
*— Զօրավարը կը վարէ բանակ մը։*
*— Եպիսկոպոսը կը վարէ իր թեմը։*
*— Բժշկապետը կը վարէ հիւանդանոց մը։*
*— Տեսուչը կը վարէ . . . (*)։*

---

(*) Շարունակեցէք այս վարժութիւններն ու ըսէք թէ ինչ կ'ընեն վերը յիշուած բոլոր պաշտօնատարները։

ՎԵՐՋ ԵՐՐՈՐԴ ՎԱՐԺՈՒԹԵԱՆ

# ՆԻՒԹԵՐՈՒ ՑԱՆԿ

## Ա. — ԱՐՁԱԿՆԵՐ

### ԳԻՐՔ Ա.

## ԳԼՈՒԽ Բ.

## ԳԼՈՒԽ. Գ.

